## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս նշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении




## Բովանդակություն

## Содержание






# ԲՈԼՈՐԻՍ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ

Սկսվել է իններորդ հնգամյակի վճռական տարին: Մեր բազմազգ երկրի միլիոնավոր աշխատավորները հերոսական գործերով ավարտելով 1972 թվականը, նոր եռանդով ու ստեղծագործական փայլուն սխրանքներ գործելու վճռականությամբ ձեռնամուխ են եղել հնգամյակի երրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանների կատարմանը:

Ներկայումս սովետական ողջ երկրի աշխատավորները, ջերմորեն հավանություն տալով 1973 թվականի ժողովրդատնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի համատեղ որոշմանը, ծավալում են սոցիալիստական մրցությունը հետևյալ նշանաբանով՝ երկրին տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք, առավել նվազ ծախսումներով:

Համամիութենական այս հզոր շարժմանն այժմ մասնակցում է 76 միլիոն մարդ: Միայն մեր հանրապետությունում սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են ավելի քան 700 հազար բանվորներ և ծառայողներ, կոլտնտեսականներ, արտադրության մասնագետներ, մտավորականներ: Նրանցից 250 հազարը պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչման արժանանալու համար, իսկ տասը հազարն արդեն կրում են այդ բարձր կոչումը:

Մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն մեծ նշանակություն են տալիս աշխատավոր զանգվածների այդ նախաձեռնության զարգացմանը, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների, արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունների ղեկավարներին նպատակամղում են՝ կատարելագործելու մրցության կազմակերպումը, անհրաժեշտ պայմաններ ստեղծելու գյուղի և քաղաքի աշխատավորների ստանձնած բարձր պարտավորությունները կատարելու, հնգամյակի երրորդ, վճռական տարին հարվածային գործերի տարի դարձնելու համար:

Մեր երկրի բոլոր հանրապետություններում, մարզերում, երկրամասերում աշխատավորները, մտնելով սոցիալիստական գործարար մրցության մեջ, ստանձնում են բարձր պարտավորություններ՝ հնգամյակի երրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համար: Համանման պարտավորություններ են վերցրել նաև մեր հանրապետության աշխատավորները:

Հունվարի 26-ին Երևանում տեղի ունեցավ հանրապետության կուսակցա-

կան, սովետական, արհմիութենական և կոմերիտական ակտիվի ժողովը, որը քննարկեց ու հաստատեց արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի, գյուղատնտեսական ձեռնարկությունների, գիտության ու կուլտուրայի հաստատությունների, սպասարկման բնագավառի աշխատողների 1973 թ. սոցիալիստական պարտավորությունները: Քննարկվող հարցի շուրջ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը: Նա հանգամանորեն խոսեց հնգամյակի անցած ժամանակաշրջանում հանրապետության աշխատավորների հայրենանվեր գործերի, կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում ձեռք բերած նվաճումների մասին, բացահայտեց ժողովրդական տնտեսության բնագավառում տեղ գտած թերություններն ու բացերը, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը սևեռեց այն գլխավոր խնդիրների վրա, որոնք պետք է լուծվեն 1973 թվականի ընթացքում:

Անցած տարի մեր հանրապետությունում սոցիալիստական լայն մրցություն ծավալվեց ի պատիվ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի: Մրցության արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ աշխատավորական շատ կոլեկտիվներ ժամկետից շուտ կատարեցին հնգամյակի երկրորդ տարվա պլանները: Հայաստանի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մի շարք կոլեկտիվներ հաղթող ճանաչվեցին համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ և պարգևատրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվոնշաններով, ինչպես նաև հանրապետական հոբելյանական պատվոգրերով: 1972 թվականին արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը կատարվեց 100 տոկոսով: Նախորդ տարվա համեմատությամբ ավելի իրացվեց 153,4 միլիոն ռուբլու արտադրանք:

1972 թվականին կգալի գործ կատարվեց արդյունաբերական ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման, արտադրական նոր կարողությունների իրացման, արտադրության մեջ առաջավոր տեխնոլոգիայի, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրության կազմակերպումը և կառավարումը կատարելագործելու ուղղությամբ:

Հոբելյանական տարում շինմոնտաժային մի շարք կոլեկտիվներ կատարեցին ու գերակատարեցին ստանձնած պարտավորությունները: Լավ աշխատեցին Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի շինարարները: Կատարելով տարեկան առաջադրանքները, նրանք գործարկեցին էլեկտրակայանի էներգետիկ նոր բլոկներ: Ճանապարհաշինարարները լավ նվեր մատուցեցին. շարք մտավ Երևան—Սևան ավտոմայրուղին: Երևանում, Հրազդանում, Աբովյանում, Արտաշատում, Հոկտեմբերյանում, Մարտունիում և այլ վայրերում շահագործման հանձնվեցին թեթև և սննդի արդյունաբերության նոր հզորություններ:

Սակայն լավ գործերի, հիշարժան նվաճումների կողքին, ցավոք, դեռևս կան լուրջ թերություններ, սխալներ, որոնց հաղթահարումը կուսակցական կազմակերպությունների, մեր հանրապետության բոլոր աշխատավորների առաջնահերթ խնդիրն է, նրանց պատվի գործը:

Անհանդուրժելի է, որ անցած տարի առանձին մինիստրություններ, գերատեսչություններ, արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններ և տնտեսական ղեկավարներ անհրաժեշտ չափով չմոբիլիզացրին կոլեկտիվների ուժերը՝ պետական պլանների ու պարտավորու-



թյունների կատարումն ապահովելու համար: Իսկ կուսակցության շատ քաղկոմշրջկոմներ անբավարար վերահսկեցին ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների ու կոլեկտիվների աշխատանքը, պատշաճ պահանջկոտություն չցուցաբերեցին, որպեսզի պետական պլանների և պարտավորությունների կատարումը ամրապնդվի կազմակերպական-տեխնիկական անհրաժեշտ միջոցառումներով: Ուստի, պատահական չէ, որ վերոհիշյալ պատճառներով, ինչպես նաև գյուղատնտեսական անբարենպաստ տարվա և նյութա-տեխնիկական մատակարարման մեջ տեղ գտած թերությունների հետևանքով 1972 թվականին արդյունաբերության պետական պլանը թերակատարվել է մի շարք ցուցանիշներով: Անցյալ տարի 97 ձեռնարկություններ, կամ հանրապետության բոլոր ձեռնարկությունների 14 տոկոսը, չկատարեցին արտադրանքի իրացման պլանը: Արտադրության կատարելագործման ոլորտում իրականացվող անբավարար գործունեության հետևանքով 1972 թ. աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվել է 99,1 տոկոսով:

Առանձնապես լուրջ թերություններ կան կապիտալ շինարարության ասպարեզում: Սահմանված պլանները և ստանձնած պարտավորությունները հանրապետությունում թերակատարվեցին: Կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով հիմնական ֆոնդերի գործարկման առաջադրանքները կատարվեցին ընդամենը 66 տոկոսով: Շահագործման չհանձնվեցին լիպինի գործարանը, Իջևանի բետոնիտի կոմբինատը, Կիրովականի կահույքի ֆաբրիկան և այլն: Կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով շահագործման չհանձնվեցին 200 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 9.280 աշակերտական տեղով դպրոցներ և 4.180 տեղով մանկապարտեզներ ու մանկամսուրներ և այլ օբյեկտներ:

Համանման թերությունների, պլանների թերակատարման փաստերի վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանց հիմնական պատճառը արտադրական ձեռնարկությունների, շինմոնտաժային կազմակերպությունների ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքն է, արտադրությունը ռացիոնալ կազմակերպելու, նյութատեխնիկական ռեսուրսները և բանվորական ուժն արդյունավետ օգտագործելու անկարողությունը: Կուսակցական կազմակերպությունները, արդյունաբերության ու շինարարության ղեկավարները պետք է լրջորեն զբաղվեն նման թերությունների վերացման հարցերով, առավելագույն ուշադրություն հատկացնեն արդյունաբերության ու շինարարության տեխնիկատնտեսական ցուցանիշների կգալի բարձրացմանը և աշխատանքի արտադրողականության աճի ապահովմանը, որակի բարելավմանը, խնայողության ռեժիմի խստիվ կիրառմանը, արտադրության մեջ աշխատանքի լավագույն մեթոդների արմատավորմանը:

Արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարական կազմակերպությունների կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները բոլոր ջանքերը պետք է գործադրեն, որպեսզի արդյունավետ օգտագործվի սոցիալիստական մրցության ուժը, աշխատավորների շրջանում համակողմանի կարգանա ստեղծագործական նախաձեռնությունը, ըստ ամենայնի արմատավորվի կոմունիստական վերաբերմունքն աշխատանքի ոլորտում:

Անցյալ տարի, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, լավ աշխատեցին գյուղի աշխատավորները: Նրանց եռանդուն ջանքերի շնորհիվ հաջողությամբ կատարվեցին հացահատիկի, բանջարեղենի, բոստանային կուլ-

տուրաների, ծխախոտի, կաթի, մսի, ձվի և բրդի մթերումների պետական առա-
ջադրանքները: Սակայն, անհրաժեշտ է նշել, որ գյուղատնտեսության ասպա-
րեզում առկա հաջողությունների կողքին, կան վգալի թերություններ ու բացեր:
Հանրապետության Եղեգնաձորի, Ապարանի, Ազիզբեկովի, Ղուկասյանի, Ամա-
սիայի և Կրասնոսելսկի շրջանների սովխոզներում ու կոլտնտեսություններում
ցածր է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը: Որոշ շրջաններում
(Ապարան, Ղափան, Թումանյան, Գորիս և այլն) բանջարաբուծության հար-
ցերը, ըստ էության վրիպել են տեղի կուսակցական, սովետական և գյուղա-
տնտեսական օրգանների տեսադաշտից:

Զգալի թերություններ կան անասնաբուծության ասպարեզում: 1972 թվա-
կանին թերակատարվեց կովերի գլխաքանակի պլանը: Այս առումով հատկապես
անբավարար է վիճակը Վարդենիսի, Ղափանի, Կրասնոսելսկի շրջաններում:
Մի շարք շրջանների սովխոզներում և կոլտնտեսություններում ցածր է անա-
սունների մթերատվությունը, բարձր է ստերջության, անկումների տոկոսը և
մթերքների ինքնարժեքը:

Գյուղատնտեսության բնագավառում եղած թերությունները վերացնելու,
1973 թվականի պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու հա-
մար, մեծ ջանք պետք է գործադրեն գյուղի աշխատավորները, կուսակցական
և տնտեսական օրգանները: Բուսաբուծությունն ու անասնապահությունն ըստ
ամենայնի կարգացնելու համար անհրաժեշտ է արդյունավետ օգտագործել
գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները, բարձրացնել անասնապահու-
թյան և կերարտադրության մեքենայացման մակարդակը: Անհրաժեշտ է առա-
վելագույն չափով օգտագործել եղած տեխնիկան, հոգ տանել նրա պահպան-
ման նկատմամբ, պատշաճ ուշադրություն նվիրել մեխանիզատորական կադ-
րերի պատրաստմանը, նրանց որակավորմանը: 1973 թվականը հարվածային
աշխատանքի տարի է: Մեր հանրապետության գյուղատնտեսության բնագավա-
ռի բոլոր աշխատողների պատվի գործն է՝ հաջողությամբ կատարել ընթացիկ
տարվա պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները:

Նոր հնգամյակի առաջին երկու տարում որոշակի հաջողություններ են
ձեռք բերվել առևտրի կազմակերպման, նրա նյութատեխնիկական բազայի ամ-
րապնդման բնագավառում: Բայց, չնայած դրան, հանրապետության առևտրա-
կան կազմակերպությունները չկարողացան կատարել սոցիալիստական մրցու-
թյամբ ստանձնած պարտավորությունները, չապահովեցին ապրանքաշրջա-
նառության պլանների կատարումը: Հանրապետության առևտրի մինիստրու-
թյունը, Հայկոոպի վարչությունը և դրանց քաղաքային ու շրջանային կազմա-
կերպությունները պետք է մոբիլիզացնեն բոլոր ուժերը՝ այս տարվա պլանները
կատարելու և եղած թերությունները վերացնելու համար:

Ներկայումս Սովետական Հայաստանի աշխատավորները մեծ եռանդով
ու հաստատակամորեն իրականացնում են մեր հանրապետության ժողովրդա-
կան տնտեսության զարգացման 1973 թվականի պլանը, որի համաձայն էկո-
նոմիկայի բոլոր ճյուղերի, աշխատանքային կոլեկտիվների և յուրաքանչյուր
աշխատավորի առջև նոր, պատասխանատու խնդիրներ են ծառացել:

1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու
համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին
ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտ-
կոմի համատեղ որոշման համապատասխան, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը,



ՀՍՍՀ Մինիստրների սովետը, ՀԱՄԽ-ը և ՀԼԿԵՄ Կենտկոմը մշակել են 1973 թվականի արդյունքների համար աշխատանքային կոլեկտիվների, բրիգադների, առաջավորների խրախուսման միջոցառումներ, սահմանել հանրապետությունում սոցիալիստական մրցության ծավալման պայմանները:

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատավորական կոլեկտիվները, բանվորները, կոլտնտեսականները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները, գիտնականները սոցիալիստական լայն մրցությամբ ստանձնել են բարձր պարտավորություններ և եռանդագին ձեռնամուխ են եղել դրանց կենսագործմանը:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները սոցիալիստական մրցությամբ պարտավորվել են արտադրանքի իրացման ծավալի և կարևորագույն առարկաների մեծ մասի արտադրության 1973 թվականի պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 26-ին, իսկ արդյունաբերական արտադրության տարեկան պլանը կատարել 103 տոկոսով. դրան զուգընթաց, աշխատաժամանակը արդյունավետ օգտագործելու, արտադրական պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու, արտադրության և աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը գերակատարել 15 տոկոսով և արդյունաբերական արտադրության ծավալի աճի 90 տոկոսն ապահովել ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման:

Հանրապետության շինարարական կազմակերպությունների աշխատողները պարտավորվել են կապիտալ ներդրումների տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ մինչև դեկտեմբերի 27-ը:

Գյուղի աշխատավորները պարտավորվել են 1973 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացնել 16,6 տոկոսով, արտադրել 260 հազար տոննա հացահատիկ, 111,5 հազար տոննա կարտոֆիլ, 326 հազար տոննա բանջարեղեն և բոստանային կուլտուրա, 14,8 հազար տոննա ծխախոտ, 165 հազար տոննա կաթ, 144 միլիոն ձու, զգալիորեն ավելացնել անասունների ու թռչունների բոլոր տեսակների գլխաքանակը:

Բարձր պարտավորություններ են ստանձնել նաև տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս բոլոր ճյուղերի աշխատողները:

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած այս պարտավորությունների կատարումը հիրավի պահանջում է լարված, քրտնաջան գործունեություն, իսկայական եռանդ ու կազմակերպվածություն: Հանրապետության կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ գործիմացաբար մոբիլիզացնել մասսաների ուժերը, հմտորեն օգտագործել նրանց աշխատանքային ակտիվությունը և ստեղծագործական նախաձեռնությունը, շեշտակիորեն բարձրացնել արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտային կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության մակարդակը, արտադրության կազմակերպման ու վարման կուլտուրան:

Անհրաժեշտ է փոխել վերաբերմունքը սոցիալիստական մրցության նկատմամբ: Գաղտնիք չէ, որ դեռևս կան այնպիսի ղեկավարներ, ովքեր մրցության կազմակերպմանը մոտենում են բյուրոկրատական ձևով: Սոցիալիստական մրցությունը համաժողովրդական ստեղծագործություն է, ուստի այն պետք է

այնպես կազմակերպել, որ գործնականում նպաստի սոցիալիստական արտա-
դրության զարգացմանը, դառնա մեր առաջընթացի հզոր ազդակը:
Սոցիալիստական գործարար մրցության կազմակերպման ասպարեզում
վճռական նշանակություն ունի առաջավոր փորձի լայն տարածումը: Հնգամյա-
կի երրորդ տարվա վիթխարի խնդիրների լուծումը կուսակցական, հասարակա-
կան, արհմիութենական կազմակերպություններից, բոլոր տնտեսավարներից
պահանջում է առաջավորների փորձը դարձնել բոլորի սեփականությունը,
նրանց օրինակով սովորեցնել մյուսներին: Այս առթիվ Վ. Ի. Լենինը գրել է,
որ աշխատանքային լավագույն կոլեկտիվները պետք է լինեն դաստիարակ-
ներ, ուսուցիչներ, առաջ մղեն ետ մնացողներին: Պետք է միշտ հիշել, որ առա-
ջավոր փորձի տարածումը անցողիկ կամպանիա չէ, այլ ամենօրյա պլանավոր-
ված աշխատանք: Բավական չէ միայն պատվո տախտակի վրա փակցնել առաջա-
վորի լուսանկարը և պլանների կատարման ցուցանիշները, այլ, հարկավոր է
մասնագիտական պատշաճ մակարդակով ցույց տալ, թե տվյալ աշխատողն
ինչպե՞ս է հասել նման բարձր արդյունքների, ընդգծել ու պարզաբանել նրա
աշխատանքի ձևերն ու մեթոդները և պայքարել, որ դրանք դառնան ոչ միայն
տվյալ ձեռնարկության, այլ բոլոր աշխատավորների սեփականությունը:
Մրցության կազմակերպիչները պետք է սիստեմատիկաբար ստուգեն սո-
ցիալիստական պարտավորությունների կատարումը և հաճախ ամփոփեն դրանց
արդյունքները: Անհրաժեշտ է ապահովել այդ արդյունքների ամենալայն հրա-
պարակայնությունը, որպեսզի բոլորը ճանաչեն հաղթողներին և ետ մնացող-
ներին, որպեսզի բոլոր աշխատավորները կարողանան բարձր նվաճումները
համադրել սեփական աշխատանքի արդյունքների հետ:
Սոցիալիստական մրցության գլխավոր նպատակներից մեկը պայքարն է
աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության
բարձրացման, գիտության ու տեխնիկայի արդի նվաճումների համակողմանի
արմատավորման համար: Աշխատավորներին պետք է պարզաբանել, որ մրցու-
թյան ընթացքում անհրաժեշտ է պայքարել ոչ միայն քանակական ցուցանիշ-
ների, այլև արտադրանքի բարձր որակի, նյութական և աշխատանքային ռե-
սուրսների տնտեսման համար:
Սոցիալիստական մրցության մեջ մասսաների ուժերը մոբիլիզացնելու գոր-
ծում մեծ անելիքներ ունեն մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության, կինոյի
աշխատողները: Մեր թերթերն ու ամսագրերը պետք է գործարար օգնություն
ցույց տան մրցությանը, վեր հանեն լավն ու առաջավորը, խարազանեն թերին
ու ետ մնացողներին, ամենօրյա հսկողության տակ պահեն ժողովրդական տըն-
տեսության բոլոր բնագավառների գործունեությունը:
Հիրավի, վիթխարի գործեր են արվելու հնգամյակի երրորդ տարում: Բայց,
ինչպես ՍՍՀՄ 50-ամյակի հոբելյանական հանդիսավոր նիստում ասաց Լ. Ի.
Բրեժնևը, «ամենալավ պլանները չեն կատարվի, եթե նրանք, ովքեր աշխատում
են հաստոցների մոտ կամ դաշտերում, անասնապահական ֆերմայում, գի-
տա-հետազոտական ինստիտուտում կամ ծառայությունների ոլորտում, գոր-
ծի մեջ չներդնեն իրենց սրտի, հոգու մի մասնիկը»:
Հայաստանի աշխատավորները լի են վճռականությամբ՝ համաժողովրդա-
կան այս մեծ գործում ներդնելու իրենց բոլոր ուժերը, պատվով կատարելու
1973 թվականի ժողովրդա-տնտեսական պլանները, հաղթող դուրս գալու հա-
մամիութենական սոցիալիստական մրցության մեջ, դրանով իսկ բազմապատ-
կելով մեր մեծ Հայրենիքի հզորությունը:



Մ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր,
պաճեստի գնդապետ

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՎՃՌԱԿԱՆ ՓՈՒԼԸ

*Մեր ժողովուրդը, բովանդակ աշխարհի պրոգրեսիվ ուժերը լայնորեն նշում
են Ստալինգրադյան մեծ ճակատամարտի 30-ամյակը, որը պատմության մեջ
մտավ իբրև սովետական զենքի հաղթանակ, բազմազգ սոցիալիստական պե-
տության աննկուն ուժի խորհրդանիշ: Մեր զորքերի փայլուն հաղթանակը
Վոլգայի ափերին Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի ամե-
նափառապանծ էջերից է:*

*1941 թ. հունիսի 22-ին հիտլերյան Գերմանիան, խախտելով Սովետական
Միության հետ կնքած չհարձակվելու պայմանագիրը, ուխտադրժորեն հար-
ձակվեց մեր հայրենիքի վրա: Ֆաշիստական Գերմանիայի ղեկավարությունը
սովետների երկրի դեմ զավթողական պատերազմ էր նախապատրաստել, ել-
նելով «Բարբարոսայի» ավազակային պլանից, որի նպատակն էր՝ ստրկաց-
նել ՍՍՀՄ ժողովուրդներին, մեր երկիրը դարձնել Գերմանիայի գաղութը: Ֆա-
շիստական ստրատեգները սովետների երկրի դեմ մղվող պատերազմը համա-
րում էին վճռական փուլ գերմանական իմպերիալիզմի համաշխարհային տի-
րապետություն ստեղծելու ճանապարհին: Նրանք համոզված էին, որ մեր երկրի
դեմ տոտալ պատերազմ սկսելով, կարող են այն շահել կայծակնորեն՝ 4—6
շաբաթում:*

*Օբյեկտիվ և սուբյեկտիվ կարգի մի շարք պատճառներով պատերազմը
մեզ համար սկսվեց ծայրահեղ աննպաստ պայմաններում. հակառակորդը
սովետա-գերմանական ռազմաճակատի վճռական ուղղություններում գերակըշ-
ռում էր ուժերով ու միջոցներով: Թշնամու գերակշռող ուժերի սաստիկ ճնշման
տակ մեր զորքերը հարկադրված էին պաշտպանական մարտեր մղելով նա-
հանջել երկրի խորքը:*

*Սովետական Միության պատերազմը արդարացի, հեղափոխական պատե-
րազմ էր՝ հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախու-
թյան, մարդկությունը ստրկացման սպառնալիքից փրկելու: Սովետական ժո-
ղովրդի Հայրենական պատերազմի գլուխ կանգնեց կոմունիստական կուսակ-
ցությունը՝ սոցիալիստական հասարակության ղեկավար ուժը: Առաջնորդվելով
սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան ուսմուն-*

քով, մեր կուսակցությունը վիթխարի գործունեություն ծավալեց, դարձավ խո-
կական մարտնչող կուսակցություն։ Հայրենիքը փրկելու համար նա մշակեց
ժողովրդի ողջ ուժերի մոբիլիզացման պլան, որի նշանաբանն էր՝ «Ամեն ինչ
պատերազմի համար, ամեն ինչ հաղթանակի համար»։ Կուսակցությունն ան-
միջականորեն ղեկավարում էր ռազմաճակատի զինված պայքարը, երկիրը
միասնական մարտական ճամբարի վերածելու թիկունքի աշխատանքը, սովե-
տական պետության արտաքին քաղաքական գործունեությունը, ծավալում
մասսայական պարտիզանական պայքար՝ ընդդեմ օկուպանտների։ Մեր մարդ-
կանց հայրենասիրական դաստիարակության նպատակով՝ նա գաղափարական
լայն աշխատանք էր տանում ռազմաճակատում ու թիկունքում։

ՍՍՀՄ ժողովուրդների հերոսական ջանքերի շնորհիվ, նենգ և ուժեղ թշնա-
մին չկարողացավ իրականացնել իր ավազակային նպատակները, նրա պլան-
ները ձախողվեցին։ Պատերազմի՝ մեզ համար առավել ծանր ժամանակա-
շրջանում կարևոր նշանակություն ունեցավ սովետական բանակի առաջին
պատմական հաղթանակը Մոսկվայի տակ, 1941—1942 թթ. ձմռանը։ Դա թշնա-
մու առաջին խոշոր պարտությունն էր պատերազմում։ Մեր բանակի այդ հաղ-
թանակով ընդմիշտ թաղվեց «բլիցկրիգի» ավանտյուրիստական պլանը և պա-
կաղերծվեց ֆաշիստական «վերմախտի» անպարտելիության առասպելը։

1942 թվականի ամռանը, ֆաշիստական հրամանատարությունը, օգտվե-
լով նրանից, որ արևմտյան մեր դաշնակիցները՝ Անգլիան և ԱՄՆ, հակառակ
իրենց պարտավորությունների, Եվրոպայում երկրորդ ռազմաճակատ բաց չա-
րին, նորից ստեղծեց ուժերի գերակշռություն և, ապահով զգալով իրեն արև-
մտյան թիկունքում, նոր, խոշոր հարձակում սկսեց սովետա-գերմանական
ռազմաճակատի հարավում՝ ռազմա-ստրատեգիական վճռական արդյունքների
հասնելու և 1942 թ. պատերազմը շահելու նպատակով։ Սակայն, գերմանա-ֆա-
շիստական ռազմական մեքենան այս անգամ ևս իր նպատակին չհասավ։
Մեր երկրի ռազմա-տնտեսական անշեղորեն մեծացող հզորության, սովետա-
կան մարտիկների բարոյական բացառիկ հաստատակամության, բանակի ու
ժողովրդի անխախտ միասնության, ռազմաճակատում ու թիկունքում ցուցաբեր-
ված անօրինակ հերոսության շնորհիվ, կոմունիստական կուսակցության ղե-
կավարությամբ ետ մղվեց թշնամու նոր հարձակումը, միաժամանակ, պայ-
մաններ ստեղծվեցին մեր զորքերի ստրատեգիական հակահարձակման անց-
նելու համար։

1942 թ. հունիսի սկզբին գերմանական հրամանատարությունը սովետա-
գերմանական ռազմաճակատի հարավ-արևելյան մասում կենտրոնացրեց 90
դիվիզիա և մեծ հարձակում սկսեց Ստալինգրադի ու Կովկասի ուղղությամբ։
Թշնամու զորքերին հաջողվեց ճեղքել մեր պաշտպանությունը և հուլիսի կե-
սերին առաջանալ Դոնի մեծ գալարում ու նրա ստորին հոսանքում։ Այդ ժա-
մանակ էլ հենց, փաստորեն, սկսվեց Ստալինգրադյան ճակատամարտը, որը
շարունակվեց ավելի քան վեց ամիս։ Այդ ճակատամարտի հսկայական մաս-
շտաբների վկայությունն է այն փաստը, որ դրան երկու կողմերից մասնակցել
է ավելի քան երկու մլն մարդ, գործադրվել են 26 հազար թնդանոթ, երկու
հազար տանկ և մոտ երկու հազար ինքնաթիռ, ընդ որում, կողմերի ուժերի
հարաբերակցությունը գրեթե հավասար է եղել։ Ստալինգրադյան ճակատա-
մարտը մեծագույնն էր երկրորդ համաշխարհային պատերազմում։ Երկու



հարյուր օր ու գիշեր կրակը մոլեգնում էր Մերձվոլգյան և Դոնի տափաստաններում։

Ներխուժելով Ստալինգրադ, իսկ քաղաքի հյուսիսից՝ հասնելով Վոլգա, հակառակորդը գտնում էր, որ սովետական զորքերը պարտության եզրին են, և որ վաղուց սպասված իրենց հաղթանակը միայն օրերի հարց է։ Այդ մասին հայտարարեց Հիտլերը իր «Գայլի որջը» զորակայանի խորհրդակցությունում, սեպտեմբերի 12-ին։ Սակայն ֆաշիստական դիկտատորը իր հաշիվներում չարաչար սխալվեց։ Հենց այդ օրերին սովետական հրամանատարությունն սկսեց մշակել իր զորքերի հարձակման պլանը այդ իսկ շրջանում։ Իսկ քաղաքում հակառակորդի կատաղի գրոհներն անձնուրաց ետ էին մղում 62-րդ բանակի մարտիկները՝ գեներալ Վ. Ի. Չույկովի և 64-րդ բանակինը՝ գեներալ Մ. Ս. Շումիլովի հրամանատարությամբ։

Ստալինգրադի գրավմանն ուղղված թշնամու մոլեգին ջանքերը հողմացրիվ էին արվում քաղաքի պաշտպանների անսասան տոկունությամբ։ Սովետական մարդիկ կռվում էին յուրաքանչյուր թաղամասի, փողոցի, տան համար։ Նրանց նշանաբանն էր հռչակված սնայպեր Վասիլի Զայցևի խոսքերը. «Վոլգայից այն կողմ մեզ համար հող չկա»։ Հերոսական սխրանքների ոսկե գրքում գըրվեցին հարյուր հազարավոր սովետական մարտիկների անունները, ինչպես և այն գվարդիականների անունները, ովքեր կոմունիստ Յա. Ֆ. Պավլովի ղեկավարությամբ պաշտպանեցին քաղաքի կենտրոնում գտնվող տունը։

«Ոչ մի քայլ ետ»— ժողովրդի նակազն էր այս, որը պատվով կատարեցին Ստալինգրադի մարտիկները։ Կուսակցության Կենտկոմին ուղղված իրենց նամակում նրանք գրում էին. «Մեր մարտական դրոշների, սովետական ողջ երկրի առաջ մենք՝ Ստալինգրադի պաշտպաններս, երդվում ենք, որ չենք արատավորի ռուսական զենքի փառքը և կկռվենք մինչև վերջին հնարավորությունը։ Մենք կհաղթենք այս մեծ ճակատամարտում»։

Ռազմաճակատի մարտիկների հետ կողք-կողքի իրենց հարազատ քաղաքի պատիվն ու փառքն էին պաշտպանում նաև Ստալինգրադի հերոս բնակիչները։ Այդ օրերին կուսակցության Կենտկոմը Ստալինգրադի կուսակցության մարզկոմին ցուցում տվեց՝ ամեն ինչ անել Ստալինգրադի պաշտպանության համար։ Կուսակցության մարզկոմի պլենումում, քաղաքային կուսակցական ակտիվի և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում որոշումներ էին ընդունվում՝ մշակելու քաղաքի պաշտպանության կոնկրետ միջոցներ, որոնք իրականացվում էին ռազմական խորհուրդների և ռազմաճակատի զորքերի քաղմարմինների սերտ համագործակցությամբ։ Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ քաղաքի տասնյակ հազարավոր աշխատավորներ կռվում էին ժողովրդական աշխարհազորի ջոկատներում, մասնակցում պաշտպանական դիրքերի ու ճակատային օդանավակայանների ստեղծմանը։ Ստալինգրադի արդյունաբերական ձեռնարկությունները շատ հաճախ թշնամու հրետանու և ավիացիայի ռումբերի կրակի տակ շարունակում էին ռազմաճակատին տալ անհրաժեշտ արտադրանք։

Ողջ երկիրը հոգում էր ստալինգրադյան ռազմաճակատի կարիքները, քաջ գիտենալով, որ այնտեղ հայրենիքի ճակատագիրն է վճռվում։ Երկրի տարբեր շրջաններից անընդհատ Վոլգա էին գալիս կանոնավոր զորքեր ու ռազմական բեռներ։ Քաղաքի հյուսիս-արևմտյան մասում և Վոլգայի ձախ ափին զորքերի

մեծ զանգվածներ և նյութական միջոցներ էին կենտրոնացվում, մեր զորքերը
պատրաստվում էին հակահարձակման:

Ամեն ինչ վկայում էր, որ արդեն հասունանում են սովետական բանակի
ստրատեգիական հակահարձակման անցնելու պայմանները: Տնտեսության սո-
ցիալիստական սիստեմի առավելությունների վրա հիմնված սովետական ռազ-
մական էկոնոմիկայի հզորացմամբ վերացավ թշնամու նյութա-տեխնիկական
գերազանցությունը և ապահովվեց անհրաժեշտ բազա՝ տանկային, մեքենա-
յացված և ավիացիոն նոր խոշոր միավորումների ստեղծման համար:

Երկրի ներսում ստրատեգիական խոշոր ռեզերվների պատրաստման
շնորհիվ գործող բանակ էր ուղարկվում անձնակազմի՝ ռազմիկների և սպան-
րի վարժեցված կոնտինգենտ: Ռազմական մարտերում հրամանատարական-
ղեկավար կազմի ձեռք բերած մարտական փորձը հնարավորություն ընձեռեց
զարգացնելու և կատարելագործելու սովետական ռազմական արվեստը, սո-
վորելու հմտորեն կիրառել ճկուն տակտիկա, մանևրելու ուժերով ու միջոցնե-
րով, արդյունավետ օգտագործելու զրահատանկային և ավիացիոն խոշոր միա-
վորումները:

Պաշտպանական հաջող ճակատամարտերում անշեղորեն բարձրացավ նաև
մեր մարտիկների բարոյական-մարտական ոգին, մեծացավ նրանց հավատը
հաղթանակի նկատմամբ, կռվի դաշտում հերոսացան բազմաթիվ մարտիկներ:

Սովետական հրամանատարությունը, հաշվի առնելով այդ բոլոր գործոն-
ները, 1942 թ. աշնանը եկավ այն եզրակացության, որ մեր զինված ուժերի
ստրատեգիական հակահարձակման պահն է, և որ դրա առավել նպատակա-
հարմար տեղը Ստալինգրադի շրջանն է:

Հակահարձակմանը նախապատրաստվելու ղեկավարությունը հարավ-
արևմտյան և Դոնի ռազմաճակատներում հանձնվեց գեներալ Գ. Կ. Ժուկովին
(գլխավոր հրամանատարի տեղակալին), իսկ ստալինգրադյան ճակատում՝
գեներալ Ա. Մ. Վասիլևսկուն (գլխավոր շտաբի պետին): Նոյեմբերի առաջին
տասնօրյակի վերջին «Ուրան» գործողության պլանը վերջնականապես հաս-
տատվեց: Հակահարձակման ընթացքում գլխավոր զորակայանը ռազմաճա-
կատների գործողությունների կոորդինացիան հանձնարարեց Վասիլևսկուն:

1942 թ. նոյեմբերի 19-ը ընդմիշտ կմնա մարդկության հիշողության մեջ:
Այդ օրն սկսվեց մեր բանակի հաղթական հակահարձակումը ստալինգրադյան
ճակատամարտում: Առաջին հինգ օրերին հարձակվելով երեք ճակատով՝ մեր
ուժերը ճեղքեցին թշնամու պաշտպանությունը ողջ խորությամբ, իսկ նրա 22
դիվիզիաները և 160 առանձին զորամասեր կազմող ընտրովի զորքերի 330
հազարանոց խմբավորումն ընկավ շրջափակման վիթխարի օղակի մեջ: Հիտ-
լերյան հրամանատարությունը, ֆելդմարշալ Մանշտեյնի տանկային խմբի
ուժերով, փորձեց Կոտելնիկովսկու շրջանում հարվածել մեր զորքերին և վերաց-
նել Պաուլյուսի զորքերի շրջափակումը: Այդ փորձը ձախողվեց: Մեր զորքերի
վճռական գործողությունները կասեցրին ու ետ շպրտեցին թշնամու տանկային
շարասյունները: Շրջափակված զորքերի մատակարարումը «օդային կամուրջ-
ներով» ապահովելու՝ հակառակորդի փորձերը ևս ձախողվեցին: Մեր ավիա-
ցիան, օդում պահպանելով իր գերազանցությունը, անխնա ոչնչացնում էր թըշ-
նամու ինքնաթիռները (շրջափակման առաջին իսկ օրից մինչև շրջափակված
խմբավորումների վերացումը այդ տեղանքում ոչնչացվեց ավելի քան 700 ֆա-
շիստական ինքնաթիռ):



Ստալինգրադյան մեծ ճակատամարտի եզրափակիչ ակտը Դոնի ռազմա-
ճակատի հարձակողական գործողությունն էր 1943 թ. հունվարին, երբ ոչնչաց-
վեցին հակառակորդի շրջափակված ուժերը: Հարկ է նշել, որ սովետական հրա-
մանատարությունը, ելնելով իր մարդասիրական ըմբռնումներից, ավելորդ
արյունահեղությունից խուսափելու նպատակով, շրջափակված զորքերի հրա-
մանատարությանը երկու անգամ զենքը ցած դնելու ուլտիմատում ներկայաց-
րեց: Բայց հակառակորդը չընդունեց ուլտիմատումի պայմանները: Մնում էր
կիրառել հետևյալ սկզբունքը՝ եթե թշնամին չի հանձնվում, նրան ոչնչացնում
են: 1943 թ. փետրվարի 2-ին հնչեցին պատմության մեծագույն ճակատամար-
տի վերջին համազարկերը: Գերմանա-ֆաշիստական 6-րդ գովական բանակը,
որը հիտլերյան ագրեսիայի առաջին տարիներին հաղթական երթով անցել էր
Բելգիայով, Ֆրանսիայով, Հարավսլավիայով, այժմ անփառունակ ավարտում
էր իր գոյությունը ռուսական մեծ գետի՝ Վոլգայի ափերին, իսկ նրա հրամա-
նատարը, որ նախօրեին գեներալ-ֆելդմարշալի կոչում էր ստացել, գերի հանձ-
նըվեց իր զորքերի մնացուկների հետ:

Եզրափակիչ գործողության ընթացքում մեր զորքերը գերի վերցրին ավե-
լի քան 90 հազար զինվոր ու սպա և գրավեցին հսկայական քանակությամբ
մարտական տեխնիկա: 1942 թ. նոյեմբերի 19-ից մինչև 1943 թ. փետրվարի
2-ը հակառակորդի զորքերի կորուստները կազմեցին ավելի քան 800 հազար
մարդ: Մերձվոլգյան և Դոնի տափաստաններում հիմնովին ջախջախվեցին եր-
կու գերմանական, երկու ռումինական և մեկ իտալական բանակներ: Այսպես
վերջացավ ստալինգրադյան մեծ ճակատամարտը: Պատմությունը չէր տեսել
թշնամու զորքերի այդչափ խոշոր խմբավորումների շրջափակման ու ոչնչաց-
ման նման օրինակ: Ստալինգրադի տակ տեղի ունեցած պարտության առթիվ
երեք օր ազգային սուգ հայտարարվեց ողջ Գերմանիայում, ինչպես նաև նրա
արբանյակ երկրներում: Ստալինգրադը դարձավ հիտլերյան բանակի վախ-
ճանի սկիզբը:

Մեծագույն հաղթանակը Վոլգայում տեղական երևույթ չէր. այն դարձավ
մեր զորքերի ընդհանուր հարձակման շղթայի կենտրոնական օղակը 1942—
1943 թվականների ձմեռային կոմպանիայում, որը սովետական հրամանա-
տարությունն իրականացրեց լայն ճակատով՝ Լենինգրադից մինչև Կովկասի
նախալեռները: Այդ մեծ հարձակումը շարունակվեց մինչև 1943 թ. մարտի
վերջը և նշանավորվեց Հյուսիսային Կովկասի ու Կուբանի, Վերին Դոնի շրջան-
ների ազատագրմամբ, Լենինգրադի պաշարման ճեղքմամբ: 1942 թ. նոյեմ-
բերից մինչև 1943 թ. մարտը ջախջախվեց ավելի քան 100 ֆաշիստական դի-
վիզիա: Հակառակորդը կորցրեց 1700 հազար մարդ (սպանված ու գերի), 24
հազար հրանոթ, ավելի քան 3,5 հազար տանկ, 4,3 հազար ինքնաթիռ և այլն
(տե՛ս 50 лет Вооруженных сил СССР, М., 1968, стр. 360): Սովետա-
կան բանակը 600—700 կմ դեպի արևմուտք շարժեց ռազմաճակատի գիծը՝
հիտլերյան օկուպանտներից ազատագրելով 480 հազար քառ. կմ տարածու-
թյուն (տե՛ս Великая отечественная война Советского Союза, М.,
1965, стр. 226):

Սովետական զենքի այդ նշանավոր հաջողությունը, որ ՍՍՀՄ սահման-
ներից օկուպանտներին դուրս շպրտելու սկիզբը դրեց, օրինաչափ երևույթ էր:
Վոլգայի մեծ հաղթանակը ձեռք բերվեց մեր հասարակարգի առավելության,
սովետական հասարակության նյութական, ֆիզիկական և հոգևոր ուժերի

խիստ լարման, մեր մարտիկների անօրինակ հաստատակամության, նրանց
բարձր ռազմական արվեստի շնորհիվ:

Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովն իր Հիշողություններ ու
խոհեր հուշագրության մեջ շեշտում էր, որ ստալինգրադյան ճակատամարտում
տարած մեր հաղթանակն արդյունք էր օպերատիվ-տակտիկական անակնկալ-
ների հմուտ օգտագործման, հիմնական հարվածների ուղղության ճիշտ ընտ-
րության, թշնամու պաշտպանության թույլ կողմերի ստույգ որոշման, թշնամու
պաշտպանության անխափ ճեղքման համար անհրաժեշտ ուժերի ու հնարա-
վորությունների ճշգրիտ հաշվառման և հարձակողական գործողությունների
զարգացման: Այդ բաղում գործողությունների հաջող իրականացման վկայու-
թյունն էր սովետական ռազմական արվեստի գերազանցությունը, գերմանա-
ֆաշիստական բանակի ռազմական դոկտրինայի փլուզումը: Ստալինգրադյան
ճակատամարտի մեծ հաղթանակի կազմակերպողն ու ոգեշնչողը կոմունիստա-
կան կուսակցությունն էր— սովետական հասարակության ղեկավարող ուժը:
Կոմունիստները պատվով կատարեցին իրենց ավանգարդային դերը. Նրանք
միշտ այնտեղ էին, ուր վճռվում էր մարտի ելքը և արիության ու խիզախության
օրինակ էին ծառայում:

Ստալինգրադյան ճակատամարտի նշանավոր հաղթանակն ունեցավ հա-
մաշխարհային-պատմական, ռազմա-քաղաքական մեծ նշանակություն: Այն
ինչպես սովետա-գերմանական, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատե-
րազմի ընթացքի արմատական բեկման սկիզբը դարձավ՝ հօգուտ հակահիտլեր-
յան կոալիցիայի, առավել բարձրացրեց մեր մարտիկների և ողջ բազմազգ
սովետական ժողովրդի բարոյական ոգին:

Հակառակորդին ջախջախիչ հարված հասցնելը հիմնովին սասանեց ֆա-
շիստական Գերմանիային, խարխլեց հիտլերյան ռազմական մեքենան, խախ-
տեց ֆաշիստական զորքերի և Գերմանիայի բնակչության բարոյական ոգին:
Չի կարելի չհամաձայնել վերմախտի մի խումբ գեներալների կարծիքին.
«Պարտությունը Ստալինգրադի տակ սարսափեցրեց ինչպես գերմանական ժո-
ղովրդին, այնպես էլ բանակին: Գերմանիայի պատմության մեջ երբեք չի եղել
այդչափ զորքերի այդպիսի սարսափելի կործանում» (Роковые решения,
М., 1968, стр. 210):

Միաժամանակ ջախջախիչ հարված հասցվեց ֆաշիստական ռայխի ռազ-
մական հեղինակությանը և միջազգային ազդեցությանը: Վերացավ Հիտլերի
արբանյակների կույր հավատը Գերմանիայի ռազմական գերազանցության
հանդեպ: Սկսվեց ֆաշիստական ռազմական կոալիցիայի խոր ճգնաժամը:
Մեր հաղթանակը սթափեցրեց ինչպես Թուրքիային ու Ճապոնիային, որոնց
կառավարություններն ստիպված եղան հրաժարվել ՍՍՀՄ դեմ բացահայտ գոր-
ծողություններից, այնպես և չեզոք երկրներին, որոնցից շատերը, համոզվելով,
որ ֆաշիստական ագրեսիայի կրախն անխուսափելի է, որոշակիորեն հակվե-
ցին հակաֆաշիստական կոալիցիայի կողմը:

Ստալինգրադյան հաղթանակը բարերար ներգործություն ունեցավ հակա-
հիտլերյան կոալիցիայի ամրապնդման, Սովետական Միության ազդեցության
մեծացման համար: Թշնամու զորքերի հսկայական կորուստները հակառակոր-
դին զրկեցին պատերազմի մյուս ռազմաբեմերում իր զորքերը համալրելու
հնարավորությունից, ստիպեցին նրան գրեթե բոլոր ռեզերվները կենտրոնաց-
նել Արևելյան ռազմաճակատում: Դրա շնորհիվ մեր դաշնակիցները՝ ԱՄՆ և



Անգլիան, կարողացան ակտիվացնել իրենց գործողությունները Հյուսիսային
Աֆրիկայում և Միջերկրական ծովի ավազանում: ԱՄՆ-ի պրեզիդենտ
Ֆ. Ռուզվելտը իրավամբ գրում էր, որ Ստալինգրադի պաշտպանների փառա-
վոր հաղթանակը կասեցրեց ներխուժման ալիքը և դաշնակցային ազգերի պա-
տերազմի բեկումնային կետը դարձավ ագրեսիայի ուժերի դեմ:

Հսկայական էր Ստալինգրադի ճակատամարտի ազդեցությունն օկուպա-
ցիոն երկրներում Դիմադրության շարժման զարգացման վրա ո՛չ միայն
ռազմական, այլև բարոյա-քաղաքական առումով:

Բավական է ասել, որ ստալինգրադյան ճակատամարտի ընթացքում իր
զորքերի վիթխարի կորուստները լրացնելու նպատակով, գերմանական հրա-
մանատարությունը հարկադրված էր միայն Արևմտյան Եվրոպայի երկրներից
արևելյան ռազմաճակատ փոխադրել 33 դիվիզիա և 3 բրիգադ: Այդ, բնակա-
նաբար, թուլացնում էր հիտլերականների եվրոպական թիկունքը և նպաստում
ստրկացված երկրների ժողովուրդների՝ օկուպանտների դեմ մղած պայքարի
զարգացմանը:

Մեր բանակի ստալինգրադյան հաղթանակը երկրորդ համաշխարհային
պատերազմի կարևորագույն իրադարձություններից էր, որը վիթխարի նշա-
նակություն ունեցավ պատերազմի ողջ հետագա ընթացքի և վերջնական ելքի
համար: Պատերազմի ժամանակ այդ բանը լավ էին ըմբռնում ո՛չ միայն սո-
վետական մարդիկ, այլև ողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը, ինչպես
և Արևմուտքի ռազմա-քաղաքական ղեկավար շրջանները:

Սակայն հետպատերազմյան տարիներին պատմության բուրժուական կեղ-
ծարարները, խեղաթյուրելով փաստերն ու իրադարձությունները, փորձում են
նսեմացնել ստալինգրադյան ճակատամարտի նշանակությունը, ժխտել նրա
հսկայական ազդեցությունը պրոգրեսիվ մարդկության ճակատագրի վրա:

Է. Ցիմկեի, Տ. Դյուպույի (ԱՄՆ), Գ. Յակոբսոնի (ԳՖՀ), Լ. Հարտի (Անգ-
լիա) և այլոց աշխատություններում այդ ճակատամարտի պատմությունը կեղծ-
վում են հիմնականում երեք առումով: Նախ՝ նրանք փորձում են նույնացնել
Ստալինգրադի ճակատամարտը և արևմտյան տերությունների զորքերի գործո-
ղությունները պատերազմի երկրորդական ռազմաճակատներում (անգլիական
զորքերի մարտերը Էլ-Ալամեյնի տակ, ամերիկյան ծովային դեսանտի իջե-
ցումը Գուադալկանալում և այլն): Բայց ինչպե՞ս կարելի է հավասարության
նշան դնել այդ իրադարձությունների մասշտաբների ու արդյունքների միջև,
եթե նկատի ունենանք, որ թշնամու զորքերի ընդհանուր թիվը Վոլգայի ափե-
րին անցնում էր մեկ միլիոնից, այն դեպքում, երբ Էլ-Ալամեյնում անգլիացի-
ների դեմ կռվում էր իտալո-գերմանական զորքերի 80 հազար հոգուց բաղ-
կացած խմբավորումը, իսկ ամերիկյան դեսանտին Գուադալկանալում դիմա-
դրում էր ընդամենը երկուհազարանոց ճապոնական կայազորը: Դրան ավե-
լացնենք նաև, որ Ստալինգրադի տակ հակառակորդը կորցրեց 20 անգամ
ավելի մարդ (սպանված և գերի), քան Հյուսիսային Աֆրիկայում: Երկրորդ՝
տքնում են ժխտել սովետական ռազմական արվեստի գերազանցությունը գեր-
մանականից, զուր ապացուցելով, որ մեր բանակի հաղթանակն արդյունք է
միայն թվական գերակշռության, կամ Հիտլերի սխալների, նրա ռազմական
ապաշնորհության և ոչ մեր զորքերի վարպետության, հերոսության, թեև, ինչ-
պես արդեն ասվեց, Վոլգայի ճակատամարտն սկսվել էր կողմերի հավասարա-
կշռության պայմաններում: Երրորդ՝ առանց ապացույցների հայտարարում են,

թե իրր Ստալինգրադի տակ սովետական զորքերը չէին կարող հաղթել, եթե ամերիկյան սպառազինություն չմատակարարվեր ըստ Լենդ-Լիզի: Բայց, հայտնի է, որ 1942 թ. ամռանը, գերմանական թեժ հարձակման ժամանակ, դաշնակիցների մատակարարումները դադարեցվեցին՝ ՍՍՀՄ հյուսիսային նավահանգիստների վտանգավորության պատրվակով. Ինչ վերաբերում է մեր երկրին ԱՄՆ-ի ռազմական մատակարարումներին, ապա դրանք չէին անցնում պատերազմի ընթացքում մեր գործադրած նյութական արժեքների 4 տոկոսից:

Սովետական ժողովուրդը, կուսակցությունն ու կառավարությունը բարձր գնահատեցին մեր մարտիկների սխրանքները ստալինգրադյան ճակատամարտում: Մեծ թվով համամիավորումներ, միավորումներ ու զորամասեր արժանացան պատվավոր անունների, պարգևատրվեցին շքանշաններով, դարձան գվարդիականներ: Տասնյակ հազարավոր մարտիկներ արժանացան կառավարական պարգևների, ավելի քան 100 հոգի՝ Սովետական Միության Հերոսի բարձր կոչման, 700 հազար ռազմիկներ պարգևատրվեցին Ստալինգրադի պաշտպանության համար մեդալով:

Ստալինգրադյան ճակատամարտի, ինչպես և ողջ Հայրենական պատերազմի կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ հաղթանակը արդյունք է մեր բազմազգ սոցիալիստական պետության բոլոր եղբայրական հանրապետությունների համատեղ ջանքերի, որոնց ներկայացուցիչները ուս-ուսի կանգնեցին մահվան դեմ-հանդիման ռուսական մեծ գետի ափերին, անկոտրում մնացին ու հաղթեցին: Հայ ժողովուրդը հպարտանում է, որ Ստալինգրադի փառապանծ պաշտպանների շարքերում էին նաև նրա բազում որդիներ, որոնք ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, ուզբեկների, ղազախների, վրացիների, ադրբեջանցիների և այլ ազգերի զավակների հետ մեկտեղ, սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ ընտանիքում պատվով կատարեցին իրենց նվիրական պարտքը հայրենիքի հանդեպ:

«Եթե Ստալինգրադի խրամատներում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ուս-ուսի չկանգնեին Ռուսաստանի և Ուկրաինայի, Բելոռուսիայի և Մերձբալթիկայի, Կովկասի և Սիբիրի, Ղազախստանի և Միջին Ասիայի որդիները, չէր լինի Ստալինգրադի հաղթանակը»:

Փառապանծ սովետական բանակի մարտիկները, որոնց հայրերն ու պապերը 30 տարի առաջ, արհամարհելով մահը, Վոլգայի ափերին հաղթեցին նենգ և ուժեղ թշնամուն, այժմ աչալուրջ պահպանում են մեր մեծ հայրենիքը, սոցիալիզմի ու խաղաղության գործը: Հավե՜րժ փառք մեր սոցիալիստական հայրենիքի համար զոհված հերոսներին:



Վ. Բ. ՂԱԼՈՒՄՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՄԻՋՈՑՆԵՐԸ

Գյուղատնտեսության մեքենայացումը վճռական դեր է կատարում աշխատանքի արտադրողականության բարձրացման, բուսաբուծության ու անասնապահական մթերքների արտադրության ավելացման ու ինքնարժեքի իջեցման գործում: Դրա համար էլ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բացառիկ նշանակություն են տալիս գյուղատնտեսության՝ լայն մասշտաբներով մեքենայացմանը:

Դեռևս սովետական իշխանության առաջին տարում, 1918 թ. դեկտեմբերին Վ. Ի. Լենինը նշել է. «...տեխնիկայի հրաշալիքներն առաջին հերթին պիտի գործադրվեն բարեփոխելու ամենահամաժողովրդական, ամենից շատ մարդ զբաղեցնող, առավել հետամնաց արտադրությունը, հողագործական արտադրությունը» (Երկեր, հ. 28, էջ 439):

Երկրի ինդուստրացման լենինյան ծրագրի հաղթանակը լայն հնարավորություն ստեղծեց՝ արագ զարգացնելու գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների արտադրությունը, սոցիալիստական գյուղին մատակարարելու նորագույն և առաջնակարգ տեխնիկա:

Կոլտնտեսությունների, սովխոզների մեքենայացման բազան նկատելիորեն հզորացավ հատկապես վերջին տարիներս: Միայն 1971 թ. ՍՍՀՄ-ում արտադրվեց մոտ 472 հազար տրակտոր, ավելի քան 100 հազար հացահատիկահավաք կոմբայն, ավելի քան երկու մլրդ ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ: Այժմ կոմբայնների արտադրությամբ մեր երկիրն առաջին տեղն է գրավում աշխարհում:

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը զբաղեցնում է ընդամենը 1 մլն 300 հազար հեկտար օգտագործելի հող, որից միայն 468 հազարն է վարելահող: Այս վիճակը պահանջում է ինտենսիվ մշակել այն:

Հայաստանի գյուղատնտեսությունը բազմաճյուղ է: Հիմնական ճյուղերը խաղողագործությունն ու պտղաբուծությունն են, ինչպես նաև հացահատիկի ու շաքարի ճակնդեղի մշակությունը, բանջարաբուծությունը, ծխախոտագործությունը, անասնապահությունը և այլն:

Մեր հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենա-
տրակտորային պարկը յուրաքանչյուր տարի համալրվում է կատարելագործ-
ված, բարձրարտադրողական, ժամանակակից տեխնիկայով։ Եթե 1965 թ. մեր
տնտեսություններում կային 6700 տրակտոր, 1500 հացահատիկահավաք կոմ-
բայն, 6630 ապրանքատար ավտոմեքենա, ապա ներկայումս կան 9400 տրակ-
տոր, 1600 հացահատիկահավաք կոմբայն, 7700 բեռնատար ավտոմեքենա։
Տարեցտարի ամրապնդվում է գյուղատնտեսության նյութատեխնիկական
բազան։ Միայն 1971 թ. հանրապետության գյուղատնտեսությանը մատակա-
րարվեց 1430 տրակտոր, 1135 բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենա-
ներ, 100 հացահատիկահավաք կոմբայն, 1251 հնձիչ մեքենա և այլն։ Ներկա-
յումս մեր գյուղատնտեսական արտադրությունը լիովին ապահովված է գու-
թաններով, սերմնացաններով, հող փխրեցնող և գյուղատնտեսական այլ մե-
քենաներով ու գործիքներով։ Անընդհատ ավելանում է տրակտորային աշխա-
տանքների ծավալը. 1965 թ. այն կազմել է 2,3 մլն հեկտար պայմանական
վար, իսկ 1971 թ.՝ 3,5 մլն։
Զգալի չափով ավելացավ գյուղի յուրաքանչյուր աշխատավորին ընկնող
էներգազինվածությունը։ Եթե 1965 թ. այն կազմել է 5,5 ձիաուժ, ապա այժմ
հասել է 7,4 ձիաուժի։ 1965 թ. 100 հեկտարին ընկնող 275 ձիաուժի էներգետիկ
կարողությունը 1971 թ. 343 ձիաուժ էր։
Հայաստանը համատարած էլեկտրիֆիկացիայի հանրապետություն է։
Էլեկտրաէներգիան լայնորեն կիրառվում է ո՛չ միայն գյուղի աշխատավորների
կենցաղում, այլև արտադրության մեջ՝ անասնապահական ֆերմաներում, գյու-
ղատնտեսական կուլտուրաների ոռոգման, ոչխարի խուզի, հացահատիկի չո-
րացման ու զտման պրոցեսներում և այլն։
Հանրապետության գյուղատնտեսական հողատարածությունների մշակման
համար այդպիսի տեխնիկայի առկայությունը քիչ չէ, սակայն գյուղատնտե-
սական կուլտուրաների մշակման ու բերքահավաքի մեքենայացման պրոցես-
ները տարբեր մակարդակի վրա են գտնվում։
Հայաստանում գյուղատնտեսական հիմնական աշխատանքների մեքենա-
յացման աստիճանը բարձր է. այն վարի ասպարեզում կազմում է 99,6 տոկոս,
հացահատիկների ցանքերը և բերքահավաքինը՝ 98,4, խոտի կուտակմանը՝
47, կարտոֆիլի ցանքինը՝ 46 տոկոս և այլն։ Մեր շատ կոլտնտեսություններ
ու սովխոզներ, առավել արդյունավետ օգտագործելով գյուղատնտեսական
տեխնիկան, լավագույն ցուցանիշների են հասել բուսաբուծության և անաս-
նապահական մթերքների արտադրության ավելացման բնագավառում։
«Գյուղատնտեսության մեջ գիտատեխնիկական առաջադիմությունը,—
ասում է Լ. Ի. Բրեժնևը,— չի կարելի հանգեցնել սոսկ նոր մեքենաների, քի-
միական պարարտանյութերի և արտադրության մյուս միջոցների մատակարա-
րումների աճին։ Այդ պրոցեսի անկապտելի ակտիվ մասը՝ հողը և պարարտա-
նյութերը, յուրաքանչյուր մեքենան և արտադրության մեջ ներդրված յուրա-
քանչյուր ռուբլին արդյունավետ կերպով առավել փոխհատուցմամբ օգտագոր-
ծելու կարողությունն է» (Լենինյան կուրսով, հատ. 2, էջ 679)։
Բազմաթիվ սովխոզների ու կոլտնտեսությունների կուսկազմակերպու-
թյուններ ու տնտեսական ղեկավարներ մշտական հոգատարություն են ցուցա-
բերում գյուղատնտեսական մեքենաների նկատմամբ, առավել արդյունավետ
են օգտագործում դրանք։ Այս առումով, օրինակ կարող է ծառայել Նոյեմբեր-



յանի շրջանի Հաղթանակ սովխոզը։ Այստեղ ունեն կահավորված արհեստա-
նոց, մեքենաների նորոգումները կատարվում են խնամքով, դրանք պահվում
են և օգտագործվում արդյունավետ։ 1971 թ. մեքենաները լավ խնամելու, լրիվ
կարողությամբ օգտագործելու համար տնտեսությունը հանրապետական մըր-
ցանակ շահեց։
Կամոյի անվան շրջանի Նորադուզի կոլտնտեսության տրակտորիստ Վա-
չագան Բադոյանը ջանք չի խնայում, որպեսզի իրեն հանձնված T—74 տրակ-
տորն անխափան աշխատի։ Դրա շնորհիվ նա նորմայով նախատեսված առա-
վելագույն չափի՝ պայմանական հինգ հեկտարի փոխարեն վարում է մոտ 7
հեկտար, 10,5-ի փոխարեն ծախսում 9,8 կգ վառելիք։ Արարատի շրջանի Այ-
գեվան գյուղի կոլտնտեսության տրակտորիստ Գրիգոր Նազարյանը МТЗ—50
տրակտորով պլանով նախատեսվածից երկու հեկտար ավելի է վարում և մի
հեկտարից խնայում մեկ կգ վառելանյութ։
Թալինի շրջանի Օրջոնիկիձեի անվան սովխոզի տրակտորիստներ Աբու-
զեա Գալստյանը և Արտաշես Գաբրիելյանը տրակտորի ПРВИ—2,5 գութանի
վրա այնպիսի սարքավորում են հարմարեցրել, որի շնորհիվ խաղողի այգի-
ների միջշարքային տարածությունները փխրեցնելուն զուգընթաց հավաքվում
է արքատը, իսկ վազերը սրսկող մեքենայի վրա այնպիսի հարմարանք, որ
միաժամանակ կարելի է երկկողմանի սրսկում կատարել։ Հոկտեմբերյանի
շրջանի Արաքս սովխոզում մեխանիզատոր Սարգիս Ստեփանյանը ПРВИ—2,5
տրակտորի գութանը հարմարեցրել է այնպես, որ հնարավոր է մշակել ծանր
հող ունեցող և քարքարոտ այգիներ։
Այսպիսի շատ մեխանիզատորներ կան։ Նրանց նորարարությունների ու
ռացիոնալիզատորական առաջարկությունների, մեքենաները բարձր արտադրո-
ղականությամբ օգտագործելու, որակյալ աշխատանք կատարելու շնորհիվ մեծ
չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։
ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թ. հուլիսյան պլենումում ընկ. Բրեժնևն անդրա-
դառնալով գյուղատնտեսական մեքենաների խնամքին և արդյունավետ օգտա-
գործմանը, նշեց, որ «Մի շարք տնտեսություններում տեխնիկան դեռևս վատ
է օգտագործվում։ Խախտվում են մեքենաների շահագործման կանոնները, որը
հանգեցնում է դրանց վաղաժամ դուրս-գրմանը, չի աճում օրական արտադրո-
ղականությունը, շատ տրակտորներ աշխատում են միայն մեկ հերթ»։
Ընկեր Բրեժնևի այս դիտողությունները լիովին վերաբերում են մեր հան-
րապետության մի շարք կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Այսպես,
Հրազդանի շրջանի Հրազդան սովխոզում 15 ձիաուժանոց տրակտորի տարեկան
միջին արտադրանքը (փափուկ վարի վերածած) 1971 թ. կազմել է 111 հեկ-
տար, իսկ օրվանը՝ 0,56 հեկտար, Մարտունու շրջանի Մարտունու սովխոզում
համապատասխանաբար՝ 92 և 0,9, իսկ Եղեգնաձորի շրջանի Մալիշկայի կոլ-
տնտեսությունում՝ 64 և 0,4։ Այս տնտեսություններում մեքենաների նորոգումն
անբավարար կատարելու հետևանքով տեղի են ունեցել պարապուրդներ, բարձր
էին մեկ հեկտար փափուկ վարի հաշվով տեխնիկական խնամքի ու նորոգման
ծախսերը։
Հայտնի է, որ հանրապետության վարելահողերի զգալի մասը գտնվում է
լեռնալանջերում։ Այդ հողատարածություններում գյուղատնտեսական կուլտու-
րաների մշակման համար անհրաժեշտ է հատուկ լեռնային տեխնիկա. արդյու-
նաբերության թողարկած ներկայիս ոչ բոլոր մեքենաներն են կիրառելի մեր

պայմաններում։ Ուստի, առանձին կուլտուրաների մշակման ու բերքահավաքի
ոչ բավականաչափ մեքենայացումը բացատրվում է լեռնային հողագործության
համար համապատասխան տեխնիկայի բացակայությամբ։

Հայաստանում այս հարցը լուծվում է նոր մեքենաների, առանձին հան-
գույցների ու բանող մասերի ստեղծմամբ, սերիայով թողարկվող գյուղատնտե-
սական մեքենաների ու գործիքների կառուցվածքի որոշ փոփոխություններով՝
դրանք հարմարեցնելով հողակլիմայական կոնկրետ պայմաններում տարվող
աշխատանքներին։

Գիտահետազոտական կազմակերպությունները, գյուղատնտեսության նո-
րարարներն արդեն ստեղծել են գյուղատնտեսական մի շարք մեքենաներ ու
գործիքներ, առանձին հանգույցներ, բանող մասեր ու հարմարանքներ, որոնք
հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում արտադրվում են
առանձին պարտիաներով ու հաջողությամբ օգտագործվում գյուղատնտեսու-
թյան բնագավառում։ Այսպես, գյուղատնտեսության մեքենայացման և էլեկ-
տրիֆիկացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտն ինքնուրույն և
առանձին կոնստրուկտորական բյուրոների հետ համագործակցած մշակել են
ծանր, քարքարոտ հողերի համար РН—40 փխրեցուցիչը, խաղողի այգու ունի-
վերսալ ВУТ—2,5 մեքենան, ծխախոտի տերևների չորացման մեքենայացված
ТСУ—1 սարքավորումը, ծխախոտի սածիլատնկող СКНБ—4Л մեքենան,
լանջերի վրա հակաէռոզային վարի ПГС—3—35 շրջադարձիկ գութանը, աղա-
կալած հողերի յուրացման ВУ—0,7 գլանասարքը, անտառային տնկիների
շերտերի և հակաէռոզային ջրանցքների ТКГ—1—35 առվափորիչը և
այլն։ Այժմ ինստիտուտը պատրաստել է խաղողի վազերի թաղման և բացման
համար մեքենաների փորձնական նմուշներ, քարերի մաքրման և կոտրատման
կոմբայններ, որոնք փորձարկվում են տնտեսություններում։

1971 թ. աշնանը և 1972 թ. գարնանը Արարատյան դաշտավայրի տնտե-
սություններում մեքենաներով թաղվել և բացվել են մոտ 400 հեկտար խաղողի
այգիներ։ Այսպիսով, մոտակա 2—3 տարում ագրոտեխնիկական միջոցառում-
ների կիրառման հետ մեկտեղ զգալի չափով կմեքենայացվեն վազերի թաղման
և բացման աշխատատար պրոցեսները։

Գյուղատնտեսական կուլտուրաների մեքենայական մշակման և բերքա-
հավաքի գործում, հատկապես լեռնային հողագործության պայմաններում,
բացառիկ կարևոր նշանակություն ունի մեքենաների առավել ռացիոնալ սիս-
տեմի ընտրությունը՝ հանրապետության կոնկրետ հողա-կլիմայական գոտի-
ների համար։ Այդ կապակցությամբ տարբեր գոտիներում կազմված են մոդե-
լային տնտեսություններ՝ գյուղատնտեսական արտադրության առավել զար-
գացած ճյուղերով։ Այսպես, 1971 թ. հանրապետության Կալինինոյի, Կարմի-
րի, Կամոյի անվան շրջանների տնտեսություններում 250 հեկտար մակերեսի
վրա փորձարկվել է մեքենաների սիստեմ՝ կարտոֆիլի մշակման և հավաքման
կոմպլեքսային մեքենայացման նպատակով։ 1972 թ. վերը նշված շրջանների
տնտեսություններում 1000 հեկտար մակերեսի վրա մեքենաների փորձնական
ստուգում անցկացվեց։ Ստացված արդյունքների հիման վրա մշակվում են
պրակտիկ հանձնարարականներ, մեքենաների առավել արդյունավետ կոմպ-
լեքս է ընտրվում կարտոֆիլի մշակման հիմնական գոտիների տնտեսություն-
ների համար։ Նման պրակտիկան հնարավորություն կընձեռի ներմուծել հողա-
կլիմայական գոտիներին հարմար գործնականապես հիմնավորված մեքենանե-



րի կոմպլեքս, իսկ մոդելային տնտեսությունները կդառնան առաջավոր փորձի տարածման դպրոց։

Հայաստանը սակավահող հանրապետություն է, որտեղ հերկելի հողի ամեն մի հեկտարը հաշվի է առնված. ուստի, գյուղատնտեսության հետագա զարգացումը սերտորեն կապված է ոռոգման սիստեմների ընդարձակման, ջրարբիացման նոր եղանակների կիրառման հետ։ Այս գործում վճռական է էլեկտրիֆիկացիայի և մեքենայացման դերը։ Բավական է ասել, որ միայն 1966—1970 թթ. շահագործման են հանձնվել Ապարանի և Մանթաշի ջրամբարները, Մխչյանի, Արևշատի, Գետափ-Աղավնաձորի, Նոյեմբերյանի ջրհան կայանները և հիդրոտեխնիկական այլ կառույցներ։ Դա հնարավորություն ընձեռեց անցած հնգամյակում ոռոգելի հողերի մակերեսն ավելացնել 34 հազար հեկտարով, ջրարբիացնել 133 հազար հեկտար ամառային արոտավայրեր։ Իսկ իններորդ հնգամյակում նախատեսված է ոռոգել ևս 50 հազար հեկտար նոր յուրացված հողեր ու ջրարբիացնել 130 հազար հեկտար արոտավայր։

Երաշտահար հողերի ոռոգմամբ ավելի զարգացավ խաղողագործությունը։ Այգիների մակերեսն ընդարձակվեց ավելի քան 10 անգամ։ Եթե առաջ խաղողագործությամբ զբաղվում էին միայն Արարատյան դաշտավայրի տնտեսությունները, ապա այժմ զբաղվում են նաև Թալինի, Շամշադինի, Իջևանի, Արովյանի և ուրիշ շրջաններ։

Սովետական իշխանության տարիներին Հայկական ՍՍՀ-ում յուրացվել և օգտագործվում են քարքարոտ հողերի մեծ մակերեսներ։ Դա հնարավոր դարձավ միայն արդիական հզոր տեխնիկայի առկայությամբ։ Հանրապետությունում ստեղծված մեքենայացված ջոկատների և մեքենա-մելիորատիվ կայանների շնորհիվ մաքրվեցին քարքարոտ հողերը։ Դրանց յուրացումն ամենաաշխատատար և ամենադժվար պրոցեսներից մեկն է։ Բավական է ասել, որ այդ հողերի ամեն մի հեկտարից դուրս է հանվում 1000 տոննայից ավելի քար։ Այդ ծանր աշխատանքը հնարավոր դարձավ միայն եղած տեխնիկայի կենտրոնացման պայմաններում։ Մինչև այժմ յուրացված են 175 հազար հեկտար քարքարոտ հողեր, որոնցից մեծ մակերես է հատկացված խաղողի այգիներին և բազմամյա ծառատունկերին։ Յուրացված հողերում ստեղծվել են 13 նոր սովխոզներ՝ բարեկարգ տնամերձ հողատարածություններով ու բնակավաններով։

Քարքարոտ հողերի յուրացման տեմպերն արագանում, մեքենա-մելիորատիվ աշխատանքների ծավալը ավելանում է։ Ընթացիկ հնգամյակում կյուրացվեն և կբարելավվեն 50 հազար հեկտար այդպիսի հողեր։ Կարևոր միջոցառում է նաև լանջերի յուրացումը՝ դարավանդների պատրաստման միջոցով, որտեղ տնկվում են խաղողի այգիներ, պտղատու ծառեր։ Դարատափեր են պատրաստում հատկապես Իջևանի շրջանի տնտեսությունները։

Իններորդ հնգամյակում հանրապետության լեռնային շրջաններում կյուրացվի 4 հազար հեկտար դարատափ, որը հնարավորություն կընձեռի ստանալու լրացուցիչ հազարավոր տոննա խաղող ու պտուղներ։

Անասնաբուծությունը հանրապետության գյուղատնտեսական արտադրության առաջնակարգ ճյուղերից մեկն է։ Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո միայն հնարավոր եղավ գործնական քայլեր կատարել անասնաբուծության բնագավառում՝ առաջատար պրոցեսների մեքենայացման համար։ Անհրաժեշտ է նշել, որ այդ ճյուղն արագ զարգացավ վերջին տարիներին։ 1950 թ. հետո միայն անասնաբուծական ֆերմաներում տեղակայվե-

ցին ավտոմատ ջրոցներ, շենքերի մաքրման և կերի մշակման ու պատրաստման մեքենաներ, բաժանման փոխադրիչներ, կթի ագրեգատներ: Ներկայումս հանրապետությունն ունի ավելի քան 200 կոմպլեքսային մեքենայացված կաթնապրանքային ֆերմաներ: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան առաջիկայում մեծ ուշադրություն կնվիրվի անասնաբուծական ֆերմաների կոմպլեքսային մեքենայացմանը: Ֆերմաները ջրով ապահովելու նպատակով հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելի քան 1000 կմ խողովակաշար կանցկացվի, ավտոմատ ջրոցներ կտեղակայվեն հազարավոր անասնատեղերի համար:

Զգալի միջոցներ են հատկացվում անասնաբուծական և թռչնաբուծական խոշոր կոմպլեքսների շինարարությանը: Մեծ ծրագիր է նախատեսվում մեքենայացնելու անասնաբուծության աշխատատար պրոցեսները այն հաշվով, որ 1975 թ. կոլտնտեսություններում ու սովխոզներում մեքենայական կիթը հասնի անասունների գլխաքանակի մինչև 27,6 տոկոսի, կերի մեքենայական բաշխումը ավելանա 32,2 տոկոսով, շենքերի գոմաղբազերծումը՝ 77,4, ջրի մատակարարումը՝ մինչև 68,3 տոկոսով:

ՍՄԿԿ XXIV համագումարը մեր առջև դրված կարևորագույն խնդիրներից մեկը համարեց՝ «Բարձրացնել գյուղատնտեսությանը մատակարարվող մեքենաների ու սարքավորումների տեխնիկական մակարդակը, որակը, հուսալիությունն ու դիմացկունությունը: Բարելավել գյուղատնտեսական տեխնիկայի բոլոր տեսակների օգտագործումն ու պահպանումը կոլտնտեսություններում ու սովխոզներում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 352):

Մենք թևակոխել ենք իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարին:
Մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված մեր հանրապետության գյու-
ղատնտեսության բնագավառի աշխատողների առջև: Դրանց ճիշտ լուծումը
պահանջում է, որպեսզի գյուղական կուսկազմակերպությունները և կոմու-
նիստները գլխավորեն կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների ծա-
վալած սոցիալիստական մրցությունը՝ 1973 թ. դարձնելու աշխատանքային
սխրանքների, գյուղատնտեսական մթերքների առատության տարի:





Ս. Տ. ԱՍԼԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ բարձրագույն և միջնակարգ
մասնագիտական կրթության մինիստր

# ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐ, ԿԱՐԵՎՈՐ ԱՆԵԼԻՔՆԵՐ

Մեր երկրում տարվող գաղափարական աշխատանքի կարևորագույն ոլորտներից մեկը բարձրագույն դպրոցն է, ուր կրթվում, մասնագիտանում, դաստիարակվում, գաղափարապես կոփվում են մարդիկ, որոնց առաջիկայում հասարակությունը վստահելու է երկրի տնտեսության, կուլտուրայի և գիտության զարգացման ոլորտները, պետական ու քաղաքական գործերի ղեկավարությունը: Մեր մասնագիտական դպրոցներում դասավանդում է գիտական ու մանկավարժական մի ստվար կոլեկտիվ՝ կուսակցության հավատարիմ ջոկատներից մեկը, որը ծավալուն աշխատանք է տանում մարքս-լենինյան տեսության պատշաճ ավանդման, կուսակցության քաղաքականության արդի խնդիրների լուծման ասպարեզներում:

Վերջին հինգ-վեց տարիների ընթացքում և, մասնավորապես, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների առնչությամբ, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը բարձրագույն կրթության հարցերի վերաբերյալ ընդունել են մի շարք սկզբունքային որոշումներ, որոնք հագեցած են ժողովրդական տնտեսությունը բարձրորակ մասնագիտական կադրերով ապահովելու, ուսանողության ու դասախոսների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու և նրանց կոմունիստական կուռ աշխարհայացքով զինելու ոգով:

Արդի աշխարհում արտադրաուժերի մեջ կատարվող որակական փոփոխությունները սոցիոլոգները կոչում են գիտա-տեխնիկական հեղափոխություն, որը պայմանավորված է ֆիզիկական ու մտավոր աշխատանքի ավտոմատացմամբ, էներգիայի ու նյութերի նոր տեսակների ստեղծմամբ, հաղորդակցության ուղիների կատարելագործմամբ, բնական հումքի արդյունաբերական նոր պաշարների հայտնաբերմամբ, ժառանգականության օրենքների գիտական հիմնավորմամբ, բիոլոգիական ու գեոլոգիական անալոգիաների արդյունաբերական կիրառմամբ, հիմնարար գիտությունների նորագույն նվաճումների և կառավարման ու պլանավորման կիբեռնետիկական մեթոդների արմատավորմամբ:

Կուսակցության Կենտկոմի և Մինիստրների սովետի որոշումներով պահանջվում է՝ վերակառուցել կրթության ողջ սիստեմը, դրա բովանդակությունն

ու կառուցվածքը համապատասխանեցնել գիտա-տեխնիկական հեղափոխության ժամանակակից պահանջներին։

Արտադրաուժերի մեջ կատարված որակական ու քանակական վիթխարի տեղաշարժերը, մարդուն շրջապատող ինդուստրիալ աշխարհի հարստացումը կյանքի են կոչել մարդկության տնտեսական, սոցիալական, կուլտուրական ու հոգևոր զարգացման նոր երևույթներ և դրանց հետ առնչվող սոցիոլոգիական բազմաթիվ նոր, օպորտունիստական հոսանքներ, որոնք խանգարում են երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը։ Ուստի, ելնելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումներից, անհրաժեշտ է հետևողականորեն զարգացնել մարքս-լենինյան ուսմունքի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմը, բացահայտել կապիտալիստական աշխարհում մշակված, այսպես կոչված՝ ինդուստրիալ հասարակության, տարբեր հասարակարգերի կոնվերգենցիայի, ապագաղափարայնացման և նման այլ կոնցեպցիաների, նեոֆրոյդիստական հոսանքների ու տեխնոկրատական գաղափարների ռեակցիոն էությունը, զինել ուսանողությանը մարքս-լենինյան տեսությամբ։

— Սովետական մասնագետն այսօր այնպիսի մարդ է,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ուսանողների համամիութենական հավաքում (1971 թ.),— որը լավ տիրապետում է մարքս-լենինյան ուսմունքին, պարզորոշ տեսնում կուսակցության և երկրի քաղաքական նպատակները, ունի գիտական և գործնական խոր պատրաստություն, կատարելապես տիրապետում է իր մասնագիտությանը։ Մի այլ առիթով ընկ. Բրեժնևն ասել է՝ մեր բուհերում պետք է պատրաստվեն այնպիսի կադրեր, որոնք կարողանան լուծել ո՛չ միայն մասնագիտական և կազմակերպական, այլև քաղաքական բարդ խնդիրներ։

Վերջին ժամանակներս գաղափարական-դաստիարակչական զգալի աշխատանք է կատարվել հանրապետության բարձրագույն դպրոցներում։ ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը կից գործում են հասարակական գիտությունների 5 սեկցիաներ, որոնք պարբերաբար քննարկում են հասարակական գիտությունների ավանդման և դրանց հետ առնչվող գաղափարական պրոպագանդայի հարցերը, մշակում գործնական առաջարկություններ։

Վերջին հինգ տարիներում որակավորման բարձրացման ֆակուլտետներն են ավարտել հասարակական գիտությունների 100 դասախոսներ, ասպիրանտուրա է ընդունվել 70 հոգի։ Բուհերում կազմակերպվել են մշտական սեմինարներ, ուսանողության կոմունիստական դաստիարակության խորհուրդ, բուհական գիտա-մեթոդական խորհուրդներ, միութենական առաջնակարգ բուհերից և ակադեմիական ինստիտուտներից հրավիրված անվանի գիտնականների և պետական գործիչների դասախոսություններ, դրանց զուգահեռ ցուցադրվել են հանրագիտական և գաղափարա-դաստիարակչական բնույթի մոտ 60 կինոֆիլմ, անցկացվել հեռուստատեսային դասախոսություններ ու զրույցներ։ Ուշագրավ էին Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակին, Անդրկովկասյան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների ստեղծման 50-ամյակին, Գորկու, Նեկրասովի, Դոստոևսկու, Չարենցի հոբելյաններին և Սովետական Միության կազմավորման 50-ամյակին նվիրված միջոցառումները։

Երևանի պետական համալսարանի հասարակագիտական ամբիոնների դասախոսները, Վ. Ի. Լենինի հոբելյանի առիթով, հանրապետության տարբեր



շրջաններում կարդացել են մոտ 200, Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտինը՝ 198, գեղարվեստա-թատերականինը՝ 120, բժշկական ինստիտուտի դասախոսները և ուսանողները՝ մոտ 500 դասախոսություն և զեկուցում։ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի և Ադրբեջանի ու Վրաստանի տեխնիկական բուհերի դասախոսներն ու ասպիրանտները 1972 թ. երևանյան միացյալ գիտական նստաշրջանում կարդացել են ավելի քան 320 զեկուցում. 14 ազգություններ ներկայացնող ուսանողները 108 զեկուցում են կարդացել ուսանողական գիտական ընկերությունների նստաշրջաններում։

Բուհերում զգալի ուշադրություն է նվիրվում հասարակական գիտություններին վերաբերող գիտահետազոտական աշխատանքներին, համակողմանի ուսումնասիրվում են ՍՄԿԿ և ՀԿԿ գործունեությունը, սոցիալիստական շինարարության պատմությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունները, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի, գիտատեխնիկական հեղափոխության, մարքսիստական փիլիսոփայության ու քաղաքատնտեսության, գիտական աթեիզմի տարբեր հարցեր, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի հարցեր, որոնց արդյունքները հրապարակված են գիտական ժողովածուներում, պարբերականներում՝ իբրև մենագրություններ և ուսումնական ձեռնարկներ։ Անշուշտ, կարևոր են ուսանողների կոմունիստական դաստիարակության հնգամյա պլանները և արտասահմանցի ուսանողների շրջանում տարվող աշխատանքների հնգամյա պլանները, որոնք մշակվել են բուհերում, մեր օգնությամբ։ Այս պլանների և վերոհիշյալ մյուս միջոցառումների հիմնական նպատակն է՝ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի, մեր կուսակցության ու կառավարության քաղաքականության ու գործունեության խոշորագույն խնդիրների լուսաբանումը։

Վերջերս բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության միութենական մինիստրության մասնագիտացված հանձնաժողովներից մեկը հանգամանորեն ուսումնասիրեց մեր հանրապետությունների բուհերի հասարակագիտական ամբիոնների գործունեությունը և գաղափարական աշխատանքի դրվածքը։ Քննարկելով այդ նյութերը՝ միութենական մինիստրության կոլեգիան արձանագրեց, որ մեր բուհերում բարելավվել են գաղափարական-դաստիարակչական, գիտահետազոտական և ուսումնա-մեթոդական, ուսանողության կոմունիստական դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքները, մեծացել է ուսանողության հետաքրքրասիրությունը մարքսիզմի կլասիկների աշխատությունների, ՍՄԿԿ և միջազգային կոմունիստական շարժմանը վերաբերող փաստաթղթերի նկատմամբ։ Բուհական ուսանողության առաջադիմությունը հասարակագիտական առարկաների առումով 1970—71 ուսումնական տարվա 80 տոկոսից 1971—1972 ուսումնական տարում հասել է 89, իսկ տեխնիկումներինը, համապատասխանաբար՝ 88-ից 92 տոկոսի։

Մեր հանրապետության բուհերում ծավալված գաղափարական աշխատանքը, սակայն, զերծ չէ թերություններից։ Մի շարք հասարակագիտական ամբիոններ ապահովված չեն անհրաժեշտ թվով բարձրորակ դասախոսական կադրերով (Լենինականի և Կիրովականի բուհերն ու բուհական ֆիլիալները, Երևանի ֆիզկուլտուրայի ինստիտուտը), ինչպես հարկն է չի կազմակերպվում նրանց որակավորման բարձրացման գործը, չեն հրավիրվել հասարակական գիտություններին նվիրված թեմատիկ կոնֆերանսներ (քաղաքային կամ հանրապետական մասշտաբով), բուհերի գիտահետազոտական պլաններում պատ-

շահ տեղ չեն գրավում ուսանողության կոմունիստական դաստիարակության, նրանց հետ տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի հարցերը, բուհերը և տեխնիկումները բավարար չափով ապահովված չեն մայրենի լեզվով դասագրքերով, ուսանողների կողմից երբեմն թույլ են տրվում հակահասարակական արարքներ, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումներ: Մեր հանրապետության բուհերում դեռևս պատշաճ մակարդակ չունի մեր բուհական երիտասարդության ու մտավորականության ինտերնացիոնալ դաստիարակության գործը: Թերություններ կան նաև աթեիստական, աշխատանքային դաստիարակության, բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի և այլ ասպարեզներում:

Վերջին երկու տարիներում մեր մինիստրության կոլեգիան իր նիստերում քննարկել է գաղափարական աշխատանքին վերաբերող շատ հարցեր, ընդունել համապատասխան որոշումներ: Հրավիրվել է նաև հանրապետական ակտիվ, ուր հանգամանալի քննարկվել են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից բխող խնդիրները՝ կապված հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցների գործունեության հետ: Ընդունված որոշումներում, մտքերի փոխանակության մասնակցողների ելույթներում կար մի ընդհանուր միտում — այնպես անել, որ ուսանողներին ավանդվող լենինյան սոցիոլոգիական գիտելիքները դառնան համոզմունք, նրանք համակվեն անշահախնդիր հայրենասիրության, բարձր քաղաքացիականության, կոմունիզմի գաղափարներին հավատարմության ոգով, կարողանան սոցիալական երևույթները գնահատել դասակարգային դիրքերից:

Երբեք չպետք է մոռանալ, որ ուսանող երիտասարդությունը, իրեն հատուկ ռոմանտիկական ավյունով և հետաքրքրասիրությամբ կամենում է ստանալ նորագույն պատմության դասերից ու սոցիոլոգիական հետազոտություններից բխող կնճռոտ հարցերի պատասխանները, նրա վրա համեմատաբար հեշտությամբ են ազդում մեր կյանքի տարբեր բնագավառներում դեռևս նկատվող մասնակի, ժամանակավոր, բացասական երևույթներից արվող հետևությունները, մակերեսային ընդհանրացումներն ու եզրակացությունները:

Բուհերում տարվող գաղափարական աշխատանքի հետագա բարելավման նպատակով, մեր կարծիքով, անհրաժեշտ է բարձրացնել հասարակական գիտությունների ամենատարբեր թեմաներին նվիրված զեկուցումների, դասախոսությունների ու զրույցների տեսական մակարդակը, հարստացնել դրանց գիտական բովանդակությունը, արդիականացնել դասագրքերը, որպեսզի դրանք արտացոլեն համաշխարհային էկոնոմիկայում և միջազգային հարաբերություններում կատարված նորագույն տեղաշարժերը, ժամանակակից գիտատեխնիկական նվաճումները և սոցիոլոգիական հետազոտությունների մարքսլենինյան մեկնաբանությունը, ժամանակակից սոցիալական զարգացման ու քաղաքական պայքարի դիալեկտիկան:

Զեկուցումներում ու դասախոսություններում պետք է լայնորեն օգտագործվեն կիբեռնետիկան, օպտիմիզացիայի տեսությունը, էվրիստիկական ծրագրավորումը, սեմիոտիկան, բիոնիկան, դիալեկտիկական տրամաբանության կոնցեպտուալ ու կատեգորիալ ապարատները և այլն: Այս ոգով պետք է վերակառուցվեն նաև դասագրքերն ու ձեռնարկները:

Օրինակ՝ ՍՄԿԿ պատմությունը ոմանք հաճախ շարադրում են իբրև իրա-



դարձությունների և պայքարի պարզ խրոնոլոգիա: Մինչդեռ այն մի ամբողջական ուսմունք է կուսակցության (որպես քաղաքական կազմակերպության) մասին, ուստի և կուսակցության պատմության դասավանդումը պետք է տոգորվի այդ ուսմունքի ոգով, նվիրվի կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկային, կուսակցական ղեկավարության, կառավարական ու պետական ապարատի հետ նրա ունեցած փոխհարաբերություններին: Բուհերն ավարտող մասնագետների համար դասավանդման նման ընթացքը և բովանդակությունը կարևոր նշանակություն կունենան նրանց առաջիկա պրակտիկ գործունեության ոլորտում:

Հասարակական գիտություններին նվիրված դասախոսությունների և հետազոտական աշխատանքների գիտական ու տեսական բովանդակության արդիականացման մեր պահանջն առնչվում է բուրժուական գաղափարախոսության դեմ ծավալուն պայքարի ապահովման հետ: ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի հրահանգներից մեկում ասվում է, որ նրանց գործակալները սոցիալիստական երկրներում պարտավոր են «ակտիվորեն մշակել գրողներին, քննադատներին, ուսանողներին և բոլոր նրանց, ովքեր մասնակցում են հասարակական կարծիքի ձևավորմանը». դրանցից մեկում նշվում է, որ իրենց ավելի շատ հարկավոր է արտահանել (նկատի է առնվում դիվերսիոն գաղափարների արտահանումը սոցիալիստական երկրներ) քան ներմուծել, իսկ մի այլ հրահանգում՝ «Կոմունիզմի դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է ոչ թե ճշմարտություն, այլ դիվերսիոն գործողություններ»:

Կապիտալիստական աշխարհում տեղի ունեցող հասարակական բարդ երևույթները ծնել են հակամարքսիստական սոցիոլոգիական մի շարք ուսմունքներ, որոնց տարատեսակն են աջ և ձախ ռևիզիոնիզմը, պլյուրալիզմը, «դռնբաց մարքսիզմի» դոկտրինան և այլն:

Բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարելու համար այժմ անհրաժեշտ է զինվել ավելի խոր ու բազմակողմանի տեսական գիտելիքներով, քան անցյալում, քանի որ նշված սոցիոլոգիական ուսմունքները հիմնավորվում են մաթեմատիկական մեքենաների օգնությամբ տենդենցիոզ կերպով մշակված սոցիոլոգիական հարուստ հետազոտությունների նյութերով: Իմպերիալիստական ինդուստրիալ հասարակարգի ջատագովները բազմիցս փորձել են արատավորել Մարքսի տնտեսական ուսմունքի հիմնական դրույթները և մեզ մոտ վերջին տարիների ընթացքում կիրառվող տնտեսական ռեֆորմը:

Իբրև կապիտալիստական հասարակարգի առաջընթացի ապացույց բուրժուական պրոպագանդան հաճախակի վկայակոչում է ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի որոշ ցուցանիշներն աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջընթացի ասպարեզում: Մարքս-լենինյան տեսությունը չի բացառում արդյունաբերական առաջընթացի նման թռիչքները կապիտալիստական հասարակարգում, սակայն, ի տարբերություն բուրժուական տեսությունների, այն բացահայտում է նաև այդ հասարակարգի ճգնաժամային հանգույցները և սոցիալական վերափոխման անխուսափելիությունը:

Ժամանակակից կապիտալիստական հասարակարգում տեղի ունեցող խիստ հակասական սոցիալական երևույթները համապատասխանաբար փոխել են կուլտուրայի ու արվեստի որոշ գոյաձևերը, դրանց ընկալման ու գնահատման հին չափանիշները: Նույնը կարելի է ասել կրոնական գաղափարախո-

ռության, կրոնական, այսպես կոչված՝ մոդեռնիստական աղանդների (կրոնական սոցիալիզմ, անհատի ինքնաոչնչացման հիպիական դոգմաներ և այլն) դրսևորումների մասին։ Դրանց ազդեցության դեմ ևս պետք է պայքարել բանիմացությամբ, կրոնի նորագույն հարցերին վերաբերող նյութերի բազմակողմանի, խոր իրազեկությամբ։

Միջազգային հարաբերությունների ընդլայնման շնորհիվ մեր ուսանողներն ու դասախոսները լինում են կապիտալիստական զարգացած երկրներում, նրանց ուսումնական ու գիտական հաստատություններում, արդյունաբերական ձեռնարկություններում, ֆերմաներում, գյուղում, բանավիճում այդ երկրների քաղաքացիների հետ։ Ըստ բարձրագույն կրթության միութենական մինիստրության միջազգային կապերի բաժնի տվյալների՝ մեր ուսանողները հաճախ չեն կարողանում պատշաճ մակարդակով բանավիճել, ցույց տալ մեր սոցիալիստական հասարակարգի արժանիքներն ու նվաճումները, իրազեկ չեն նորագույն սոցիոլոգիական ուսմունքներին, փիլիսոփայական, պսիխոֆիզիոլոգիական ու էսթետիկական հոսանքներին, թույլ զարգացած երկրների ներքին պրոբլեմներին։

Ափսոսանքով պետք է նշել, որ դասախոսների զգալի մասը նույնպես վատ գիտե մեր երկիրը, նրա բնաշխարհը, ռեսուրսները, էկոնոմիկան, նորակառույցները և, բնականաբար, չի կարող ուսանողին հաղորդել դրանց վերաբերող անհրաժեշտ ինֆորմացիա (մեր ոչ-բոլոր դասախոսներն են տեսել Զանգեզուրի հանքերն ու լեռնային կոմբինատները, Արփա—Սևան թունելի կառույցը, Ապարանի ու Արփի լճի ջրամբարները, Աղստաֆա—Իջևան երկաթուղին, Լենինի անվան էլեկտրագործարանը, Արագածի և Սարիգյուղի կոմբինատները, ֆիզիկայի ինստիտուտի էլեկտրոնային-օղակաձև արագացուցիչը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների գործարանն ու ինստիտուտը)։ Ուսանողներին հաղորդվող գիտելիքների մեջ աննշան է ինֆորմացիան կապիտալիստական երկրներում լայնորեն տարածված տնտեսական, փիլիսոփայական, հոգեբանական ու էսթետիկական նորագույն ուսմունքների ու հոսանքների վերաբերյալ։ Անբավարար են, հատկապես, մեր ուսանողների ու մտավորականների մի մասի գիտելիքները արտասահմանում տարածված ֆրոյդիստական և էկզիստենցիալիստական գաղափարների մասին, որոնք հաճախ թյուրիմացաբար կամ միտումնավոր կերպով նույնացվում են մարքսիստական գաղափարների հետ։

Բուհերի, ամբիոնների ղեկավարները պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն այս բացերը լրացնելու նպատակով։ Անհրաժեշտ է մերկացնել արտասահմանյան ուսանողության որոշ շրջաններում տարածված մաոիստական ու տրոցկիստական շարժման հակամարքսիստական էությունը։ Ինձ վիճակվել է տեսնել մաոիստ և տրոցկիստ ուսանողների ցույցերը Ֆրանսիայում, որոնք տեղի էին ունենում պերմանենտ հեղափոխության և խունվեյբինների տխրահռչակ կուլտուրական հեղափոխության լոզունգների տակ. մասնակիցները կոտրում, ավերում էին գիտական լաբորատորիաների սարքերն ու թանգարանները։

Նպատակային ու կոնկրետ պետք է լինի նաև դաշնակցական գաղափարախոսության դեմ մղվող պայքարը։ Արտասահմանյան ուղևորությունների ժամանակ մեզնից շատերն առիթ են ունենում զեկուցումներ կարդալու տեղի բնակչության և, մասնավորապես, հայկական համայնքների համար, ներկա-



յացնելով Սովետական Հայաստանի այսօրը, ապագան, զարգացման հեռանկարները։ Դաշնակցական կուսակցությունը ձգտում է, որպեսզի ողջ սփյուռքահայությունը կտրվի Սովետական Միությունից, Սովետական Հայաստանից։ Նա զրպարտում է հայ հեղափոխական մտավորականությանը, հերյուրանքներ տարածում ՍՄԿԿ ազգային քաղաքականության վերաբերյալ։ Այս կարգի երևույթների դեմ պայքարելու գործում մեծ անելիքներ ունեն բուհական կազմակերպություններն ու դասախոսները։ Գաղափարական ճակատի աշխատողների պարտքն է՝ մերկացնել մեր հայրենիքի բոլոր և ամեն տեսակի զրպարտիչներին։

Գաղափարական աշխատանքի հետագա բարելավման համար կարևոր նշանակություն ունեն ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունը, ազգային սահմանափակության իրողությունների հաղթահարումը. խնդիրներ, որոնք պետք է զուգակցվեն սովետական ժողովրդի միասնական բարոյական կերպարի կատարելագործման պրոբլեմին։ Այս առումով անհրաժեշտ է հայերեն մի շարք լուրջ ձեռնարկներ հրատարակել, որոնք ընդհանրացնեն սովետական ժողովուրդների ու ազգերի մշակութային տրադիցիաները, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ասպարեզում կուտակված մեր հարուստ փորձն ու ավանդույթները, սոցիալիստական ազգերի լենինյան եղբայրության ավելի քան կեսդարյա ուսանելի փորձի հասումները։

Այս իմաստով արդյունավետ, խրախուսելի աշխատանք են ծավալում մեր ուսումնական հաստատությունների միջազգային կապերի և ռազմա-հայրենասիրական ակումբները։ Հասարակագիտական ամբիոնների գործարար օգնությունն ավելի գիտական ու նպատակասլաց կդարձնի ուսանողական այդ կազմակերպությունների գործունեությունը։

Մեր ժամանակներում գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի ասպարեզում ևս պահանջվում է սիստեմային մոտեցում (այս հասկացությունն այժմ ստացել է գիտա-արտադրական տերմինի իմաստ)։ Ուսանող երիտասարդության շրջանում նման մոտեցումը ենթադրում է գաղափարական, աշխատանքային, մտավոր, էսթետիկական, բարոյական ու ֆիզիկական դաստիարակության միասնություն։ Մեր բուհերում և տեխնիկումներում մշակված դաստիարակչական աշխատանքների հնգամյա պլանները հիմնականում բխում են այդ պահանջներից։

Դաստիարակելով երիտասարդությանն ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության լենինյան սկզբունքների ոգով, հարկ է հատուկ ուշադրություն նվիրել ռուս մեծ ժողովրդի, վրաց և ադրբեջանցի հարևան ժողովուրդների հետ մեր ունեցած ավանդական կապերի հետագա զարգացմանը, ընդլայնմանն ու ամրապնդմանը։ ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամությունը և ռուս ժողովրդի համակողմանի օգնությունը վճռական նշանակություն են ունեցել և այսօր էլ ունեն մեր ազգային վերածննդի, զարգացման բարձր մակարդակի հասած էկոնոմիկայի ու կուլտուրայի ստեղծման, պետական ապահովվածության համար։

Բարձր մակարդակով տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքն, անտարակույս, նպաստում է երկրում ծավալվող ստեղծարար ջանքերին։ Միաժամանակ, եթե հաջող են լուծվում տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները, բարվոք կլինեն նաև գաղափարական աշխատանքի

հարցերը։ Գաղափարական աշխատանքին մեծ չափով վնասում են սոցիալիստական օրինականության, հասարակական կարգի և լենինյան նորմերի խախտումները։ Դասախոսական կոլեկտիվների և ուսանողների համար ծանր է ականատես լինել պաշտոնատար անձանց՝ դիրքի, պաշտոնի չարաշահման դեպքերին, նրանց կողմից պորտաբույծներին հովանավորելու փաստերին, վարչական ու պատժիչ օրգանների թողտվություններին, թերացումներին։ Գաղափարական աշխատանքի ընթացքում չպետք է շրջանցել նման երևույթները։ Դրանց պատշաճ քննադատությունն ու պարզաբանումը, բացահայտումն իբրև մեր հասարակարգին խորթ, եզակի իրադարձություններ, մեծ չափով կնպաստեն երիտասարդության բարոյական դաստիարակությանը։

Մեր բարձրագույն դպրոցների, գիտա-հետազոտական հաստատությունների ողջ գործունեության նպատակն է՝ սատարել սոցիալիստական նոր հանրության լավագույն երազանքների ու իդեալների կենսագործմանը և պատվով կատարել այդ պատասխանատու դերը։ Չմոռանանք, որ հակասություններով լի մեր դարաշրջանում կապիտալիստական ու սոցիալիստական սիստեմների միջև տեղի ունեցող տնտեսական մրցման, գաղափարական սուր պայքարի պայմաններում նոր, առավել բարդ խնդիրներ են առաջադրվում բարձրագույն դպրոցներին։

ԳՖՀ-ում հրապարակվող «Վերկունդե» ամսագրում կարդում ենք. «Ժամանակակից պատերազմը ոչ միայն երեք ոլորտում՝ օդում, ցամաքում ու ծովում է մղվում։ Այն ընդգրկում է նաև չորրորդը՝ մարդկանց հոգևոր աշխարհը։ Այս ոլորտում երրորդ համաշխարհային պատերազմն արդեն սկսվել է»։ Այս մարզում պետք է տասնապատկել մեր ջանքերը։

Հայաստանի բուհական աշխատողները մեծ նշանակություն են տալիս ուսանողության շրջանում տարվող գաղափարական աշխատանքին։ Այն արդյունավետ կլինի և հաջողությամբ կպսակվի, եթե բուհերի գիտա-մանկավարժական կոլեկտիվները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները նոր թափ հաղորդեն գաղափարական աշխատանքին և անշեղորեն կենսագործեն այդ առթիվ ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները։



Թ. Մ. ԻՍԱՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Սովետական ժողովուրդը կառուցում է կոմունիստական հասարակարգ, որի բարոյականության հիմքում ընկած են մարդասիրության ու արդարության սկզբունքները։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի, նոր, կոմունիստական հասարակական հարաբերությունների ստեղծումն անհնար է առանց ողջ աշխատավորության բարոյական բարձր գիտակցականության։ ՍՄԿԿ ծրագրում ձևակերպված են կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի հիմնական սկզբունքները, որոնցով պետք է ղեկավարվեն սովետական բոլոր մարդիկ՝ նոր հասարակարգի համար մղվող պայքարում։ Հին աշխարհի խեղաթյուրված բարքերին կոմունիստները հակադրում են ամենաարդար ու ազնիվ բարոյականությունը՝ կոմունիզմ կառուցողի բարոյական իդեալը։

Կոմունիստական բարոյականության ոգով սովետական մարդկանց դաստիարակությունը ենթադրում է պայքար նրանց գիտակցության մեջ անցյալի վերապրուկների դեմ։ «Սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում։— Պայքարն այն բանի դեմ, ինչը մենք անվանում ենք անցյալի մնացուկներ մարդկանց գիտակցության և արարքների մեջ, այնպիսի գործ է, որը պահանջում է կուսակցության, մեր հասարակության բոլոր առաջավոր գիտակից ուժերի ուշադրությունը»։

Պատմական պայմանները թույլ չեն տալիս, որ սոցիալիզմը միանգամից լուծի բարոյական դաստիարակության բոլոր հարցերը։ Մեր հասարակության մեջ դեռևս գոյություն ունեն հին բարոյականության ու հոգեբանության մնացուկներ՝ քամահրանք հանրային շահերի նկատմամբ, հասարակական կյանքի նորմերի խախտում, մարդկանց հանդեպ անմարդասիրական վերաբերմունք։ Այդ հայացքներն ու սովորույթները ունեն իրենց կոնկրետ կրողները, դրանք բյուրոկրատներն են, կարիերիստները, էգոիստները։ Անզիջում պայքարելով դրանց դեմ, արմատախիլ անելով մարդկանց արարքներում տեղ գտած մանրբուրժուական, կրոնական, նացիոնալիստական և այլ կարգի վերապրուկները, մենք հաստատում ենք կոմունիստական բարոյականությունը։

Այս առնչությամբ կարևոր է կրոնական բարոյական իդեալների ռեակցիոն
էության մերկացումը: Այն ժամանակ, երբ կոմունիստական բարոյականու-
թյունն աշխատավորությանը նպատակամղում է երկրի վրա կառուցելու երջա-
նիկ կյանք, կրոնը հոգևպես զինաթափում է հավատացյալներին, նրանց ներ-
շնչելով երկրային կյանքի անիմաստ լինելու գաղափարը: Դրանով իսկ վեր-
ջինս կաշկանդում է մարդկանց նախաձեռնությունը, թուլացնում նրանց կամքը
առաջավոր գաղափարները կենսագործելիս:

Բնորոշ է, որ ինչպես արտասահմանում, այնպես էլ մեր երկրում կրո-
նական քարոզները թափանցել են բարոյականության հարցերի բնագավառը:
Տիեզերքի կառուցվածքի, երկրային կյանքի, մարդու ծագման և այլ հարցերի
կրոնական բացատրությունները այլևս անկարելի է դարձնել կրոնական քա-
րոզների գլխավոր թեման, քանի որ դրանք առավել ակնառու են հակասում
գիտության նորագույն տվյալներին: Մինչդեռ բարոյականության հարցերը
մատչելի են մարդկանց, ուժեղ ներգործություն ունեն նրանցից յուրաքանչյու-
րի մտքի ու զգացմունքների վրա:

Ժամանակակից կրոնական քարոզիչներն ամենուր մեծ ուշադրություն են
նվիրում կոմունիստական բարոյականության քննադատությանը: Նրանք ճըգ-
նում են կոմունիստական բարոյականությունը վարկաբեկել հավատացյալների
աչքում կամ այն համարեցնել կրոնին: Երկու դեպքում էլ հետապնդվում է
նույն նպատակը՝ ամեն կերպ. պահպանել կրոնի դիրքերը, կրոնական բարո-
յականության ազդեցությունը մարդկանց մտքերի վրա:

Կրոնական գաղափարախոսները պնդում են թե, իբր, կոմունիստական
բարոյականությունը չի ընդունում բարոյականության համամարդկային նոր-
մերը, իսկ նրանք, ովքեր կրոնը կոմունիզմի հետ համարեցնելու ուղիներ են
որոնում, փորձում են ապացուցել, որ կոմունիզմ կառուցողի բարոյական կո-
դեքսում տեղ գտած արդարության համամարդկային սկզբունքները փոխ են
առնված քրիստոնեությունից: Երկու պնդումն էլ կեղծ են:

Սակայն բարոյականության կղերական քննադատներին չի հետաքրքրում
ճշմարտությունը. նրանց նպատակն է՝ ծուռ հայելու մեջ ներկայացնել կոմու-
նիստական բարոյականությունը, քանի որ աթեիստական բարոյականությունը
կործանիչ հարված է հասցնում կրոնին: Երբ աթեիստներից, բարձր բարոյա-
կանություն ունեցող մարդկանցից բաղկացած հասարակությունը գոյատևում
է և ծաղկում, ապա բարոյականությունը կրոնի կարիքը չունի: Այստեղից էլ
կոմունիստական բարոյականության նկատմամբ եկեղեցականների թշնամա-
կան վերաբերմունքը:

Կրոնի սպասավորները հար և անվերջ պնդում են, թե կոմունիստական
բարոյականությունը, իբր, անտեսում է բարոյականության համամարդկային
որոշ նորմեր և այդ պատճառով էլ կոմունիստների հետ անհնար է համագոր-
ծակցել թե՛ անհատական, թե՛ միջազգային մասշտաբով:

Նման դատողություններում կեղծիքը վարպետորեն միախառնված է ճըշ-
մարտությանը: Ինչ վերաբերում է կոմունիստներին, ապա նրանք արդարև
գտնում են, որ բարոյականության «համապարփակ» և «բացարձակ» համա-
կարգ մինչև այժմ դեռևս չի ստեղծվել: Խոսքը հենց համակարգի, և ոչ թե
բարոյականության համամարդկային առանձին տարրերի մասին է: Այդպիսին
չի եղել նաև քրիստոնեական բարոյականության համակարգը: Կրոնական աշ-
խարհայացքի հիմքի վրա նման համակարգ ստեղծելն անհնար է:



Կապիտալիստական երկրներում այն չի կարող ստեղծվել, քանի որ մասնավոր սեփականության ու շահագործման պայմաններում կրոնական գաղափարախոսությունը միշտ մնում է որպես տիրող դասակարգերի գաղափարախոսություն: Սոցիալիստական երկրներում կրոնական բարոյականության համամարդկային համակարգ չկա այն պատճառով, որ այդ երկրների բնակչության ճնշող մեծամասնությունն աթեիստ է, իսկ կոմունիստական բարոյականությունը՝ աթեիստական: Ուստի, կոմունիստական բարոյականությունն աստիճանաբար դառնում է համամարդկային, իսկ հաղթանակած կոմունիզմի պայմաններում կդառնա համաշխարհային: Նոր բարոյականությունը զարգանում ու կատարելագործվում է դեռևս կոմունիզմի կառուցման պրոցեսում: Այդ բանը նախ արտահայտվում է նրանում, որ պրոլետարական բարոյականությունը դարձել է ողջ հասարակության բարոյականությունը, իսկ բանվոր դասակարգի կոմունիստական իդեալները՝ ողջ ժողովրդի իդեալները: Սովետական մարդկանց բարձր բարոյականությունն իր վառ արտահայտությունն է գտել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում: Մշակվել են սովետական մարդու հատկանիշները՝ կոմունիզմի գործին նվիրվածությունը, սոցիալիստական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, աշխատանքային ու հասարակական բարձր ակտիվությունը, բոլոր երկրների աշխատավորության հետ դասակարգային համերաշխությունը: Աճել են իսկական ինտերնացիոնալիստների սերունդներ՝ կոմունիզմի անձնազոհ մարտիկներ:

Կոմունիստական բարոյականության կղերական քննադատները հավատացյալներին ներշնչում են այն միտքը, որ, իբր, անաստված մատերիալիզմը անխուսափելիորեն հանգեցնում է տեխնիցիզմի՝ տեխնիկայի յուրօրինակ պաշտամունքի, իսկ մարդը մղվում է ետին պլան:

Ի՞նչ կարելի է ասել նման դատողությունների առթիվ: Գիտության ու տեխնիկայի զարգացումն ինքնին չի կարող բարքերի անկման պատճառ դառնալ: Այն մարդկանց կարող է և՛ օգտակար լինել, և՛ վնասակար: Դա կախված է նրանից, թե ով է տեխնիկան տնօրինում, ինչ նպատակներով և ում շահերի համար է այն օգտագործվում:

Արտադրության զարգացումը ևս ինքնին չի կարող բարքերի անկման պատճառ դառնալ: Ամեն ինչ կախված է նրանից, թե ինչպիսին է արտադրությունը, ում շահերին է ծառայեցվում: Կասկածից վեր է, որ կապիտալիստական արտադրությունը չի կարող նպաստել մարդկանց բարոյական վերելքին: Նախ այն պատճառով, որ այդ արտադրությունը խարսխվում է մարդու շահագործման վրա, իսկ դա ինքնին անբարոյական է և անվստահություն ու հակամարտություն է հարուցում բանվորների ու գործարանատերերի միջև: Բացի այդ, կապիտալիստական ձեռնարկությունն իր բնույթով չի կարող լինել մարդկանց բարոյական դաստիարակության միջավայր:

Բոլորովին այլ է սոցիալիստական արտադրությունը: Այնտեղ հանրային արտադրության մեջ բանող մարդիկ զբաղված են ո՛չ միայն արտադրական գործունեությամբ, այլև դաստիարակչական շատ խնդիրների լուծմամբ: Սոցիալիստական ձեռնարկությունը կյանքի դպրոց է, այն գլխավոր վայրերից մեկը, ուր կոմունիստական բարոյականության ոգով իրագործվում է անհատի դաստիարակությունը:

Կրոնի գաղափարախոսները տարածում են այն հերյուրանքը, թե կոմունիստական բարոյականությունը մարդուն զոհաբերում է հանուն կոլեկտիվի,

որի հետևանքով էլ, իբր, անհատի բարոյական պատասխանատվությունն իր
արարքների համար վերանում է։
Եթե անդրադառնանք անհատին զոհաբերելու խնդրին, ապա դա անսքող
կատարվում է հենց կապիտալիստական հասարակարգում։ Այստեղ աշխատա-
վոր մարդու շահերի անտեսումը բարձրացված է բուրժուական բարոյականու-
թյան նորմի մակարդակին։ Այնուհետև, ինչ վերաբերում է «անհատի ազա-
տությանը», ապա այն բուրժուական աշխարհում հանգում է կապիտալի կող-
մից աշխատանքի շահագործման ազատությանը։ Դա ոչ թե աշխատավորական
լայն զանգվածների, այլ շահագործող փոքրամասնության ազատությունն է։
Ի հակադրություն շահագործողական աշխարհի, սոցիալիստական հասա-
րակարգում անհատի և հասարակության շահերը համընկնում են։ Այստեղ բո-
լոր մարդկանց համատեղ, հանրային աշխատանքը կատարվում է ողջ հասա-
րակության շահերի համար։ Ուստի, անհատի աշխատանքն իրեն է վերադառ-
նում մյուս մարդկանց աշխատանքի արդյունքի ձևով։ Հետևաբար, այստեղ չի
կարող լինել անհատի աշխատանքի չփոխհատուցված, անվերադարձ «օտա-
րում», ինչպես դա տեղի է ունենում շահագործողական հասարակարգում։
Կոմունիստական բարոյականության քննադատները սիրում են բարբաջել
այն մասին, որ կոմունիզմը, իբր, համահարթում է անհատներին, կաշկանդում
նրանց անհատական ունակություններն ու հետաքրքրությունները։
Իրականում, հավատարիմ իրենց իդեալներին, կոմունիստները մաքառում
են առանձին մարդկանց էգոիստական նկրտումների, ուրիշների հաշվին բա-
րեկեցիկ կյանք ստեղծողների դեմ։ Սոցիալիստական երկրներում անողոք
պայքար է մղվում պորտաբուծության և շահամոլական ձգտումների դեմ, որն
ամենևին չի նշանակում, թե բռնություն է գործադրվում անհատի նկատմամբ։
Բացահայտ հակակոմունիստների կողքին կան նաև եկեղեցական այնպի-
սի գործիչներ, որոնք մատնանշում են բուրժուական հասարակության նկատ-
մամբ սոցիալիստական հասարակության առավելությունները։ Եկեղեցու նման
գաղափարախոսների հիմնական նպատակն է ապացուցել, որ կոմունիզմը ոչ
այլ ինչ է, քան վերադարձ դեպի «ճշմարիտ քրիստոնեությունը» և դրա իդեալ-
ների պրակտիկ իրագործումը։ Նրանք կամենում են ստեղծել այնպիսի պատ-
րանք, որ, իբր, կոմունիստական ու կրոնական բարոյականությունները հա-
մատեղելի են, և ջանում են փարատել հավատացյալներից շատերի կասկածը
շրջապատող իրականության հետ մշտապես հակասության մեջ գտնվող կրոնի
նկատմամբ։ Ահա թե ինչու շատ կարևոր է՝ գիտության արդի նվաճումների,
մարքս-լենինյան տեսության հիման վրա ի չիք դարձնել կրոնի քարոզիչների
ստեղծած այդ առասպելը։ Աթեիստական պրոպագանդայի նպատակն է՝ հա-
վատացյալներին գիտականորեն ապացուցել, որ այսօր արդեն դժվար է ապրել
կրոնական էթիկայի նորմերով և հրաժարվել կոմունիզմի կառուցման ակտիվ
մասնակցությունից, հրապուրիչ ու իմաստավորված կյանքից։
Կրոնը վնասում է սովետական մարդու բարոյական կատարելագործմանը։
Կոմունիզմ կառուցողը չի կարող կրոնի բարոյական խրատները համատեղել
կոմունիզմի բարոյական սկզբունքներին։ Դրանում համոզվելու համար բավա-
կան է համադրել կոմունիստական բարոյականության թեկուզև մի քանի
սկզբունքներ կրոնական, բարոյական պատվիրանների հետ։
Սոսկ այն պատճառով, որ կրոնը հակասում է մատերիալիստական աշ-
խարհայացքին, այն չի կարող կոմունիզմ կառուցողի գիտակցության ու վար-



քագծի հիմքը դառնալ։ Կոմունիստների աթեիստական բարոյականությունը
հիմնվում է դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի վրա, իսկ կրո-
նականը՝ իդեալիզմի այնպիսի պարզունակ ձևի, ինչպիսին կրոնն է։ Ուստի,
անհնար է, որ միմյանց հակոտնյա գաղափարախոսությունները իրենց բա-
րոյաէթիկական ուսմունքներում համընկնեն։ Չնայած կոմունիստական բարո-
յականության հետ համաձայնելու դեկլարացիաներին, կրոնական քարոզիչ-
ները միաժամանակ ձգտում են կրոնական դոգմաների հիմքը՝ ամենակարող
աստծու և անդրշիրիմյան աշխարհի գոյության հավատը, ինչ գնով էլ լինի,
պահպանել, քանի որ առանց դրանց կրոնն ու կրոնական բարոյականությունը
կհիմնազրկվեն, չեն կարող գոյություն ունենալ։ Բայց, քանի որ կոմունիստ-
ների աթեիստական բարոյականությունը մերժում է կրոնի այդ հիմնական դոգ-
մաները, ուստի հասկանալի է, որ այն կրոնական բարոյականության հետ ընդ-
հանուր ոչինչ չունի։
Կոմունիստական բարոյականությունն ամբողջապես երկրային է, գիտա-
կան. նրանում միստիկական ոչինչ չկա։ Դրան հակառակ, կրոնական բարոյա-
կանության նորմերը բխում են կրոնական դոգմաներից, որոնք եկեղեցական-
ների կարծիքով ունեն ոչ թե երկրային, այլ աստվածային ծագում։
Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը հիմնված է հասարակության
զարգացման գիտականորեն ճանաչված օբյեկտիվ օրինաչափությունների վրա,
իսկ կրոնական բարոյականությունն ամբողջապես հենվում է նախախնամու-
թյան հավատի ու աստծո ողորմածությանն ապավինելու վրա։
Այսպիսին է կրոնական ու կոմունիստական բարոյականության ընդհա-
նուր աշխարհայացքային հակադրությունը, որից անհրաժեշտաբար բխում է
նաև մասնավոր հարցերի լուծման արմատական հակադրությունը։
Անդրադառնանք, օրինակ, մարդու նկատմամբ ունենալիք վերաբերմուն-
քին։ Սոցիալիստական հասարակարգի շնորհիվ ստեղծվել է նոր մարդ՝ կոմու-
նիզմի ակտիվ կառուցողը։ Մեզանում ամեն ինչ արվում է հանուն մարդու,
նրա երջանկության։ Հումանիստական նման վերաբերմունքն ընդհանուր ոչինչ
չունի մարդու նկատմամբ այն արհամարհական վերաբերմունքի հետ, որը
բնորոշ է կրոնին։ Ինքնաոչնչացման մասին կրոնա-բարոյական քարոզը դա-
րերով կաշկանդել է բանականության լուսառատ պոռթկումները, մարդկանց
ստեղծագործ եռանդը։ Հասկանալի է, որ այդ քարոզն անհամատեղելի է կո-
մունիզմի կառուցման խնդիրներին, որոնք պահանջում են մասսաների ստեղ-
ծագործական եռանդի համակողմանի զարգացում։ Կոմունիստական հասարա-
կության մարդը՝ ներդաշնակ զարգացած անհատ է՝ ազատորեն դրսևորված
ունակություններով և ձգտումներով։
Կրոնական և կոմունիստական բարոյականության արմատական հակա-
դրությունն ի հայտ է գալիս նաև այնպիսի հարցի լուծման բնագավառում, որ-
պիսին մարդու կյանքի իմաստի ու նշանակության հարցն է։ Եկեղեցականները
քարոզում են՝ քանի որ մարդու աշխարհիկ կյանքը վաղանցուկ է, ապա այն
իմաստազուրկ է։ Կյանքի բուն իմաստը մեզ սպասող անդրշիրիմյան կյանքին
արժանանալն է։ Այսպիսով, կրոնն այդ հարցը լուծում է բնազանցորեն,
մարդկանց աշխարհիկ կյանքի փորձից անկախ։ Կյանքի իմաստի հարցի բնա-
զանցական լուծումն ուղղակի բխում է կրոնի արմատական դոգմայից՝ անմահ
հոգու գոյության հավատից։
Հարցի նման լուծումը նսեմացնում է կյանքի ու կուլտուրայի ռեալ ար-

ժեքները, ինչպես և կյանքի արժեքը, մարդկանց ձգտումներն ու եռանդը մղում
է անուրջների աշխարհը, նրանց շեղում երկրային բարձրիմաստ գործերից ու
իրական վայելքներից։ Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, երբ
յուրաքանչյուր աշխատավոր առավելագույն չափով իր ուժերն ու ունակու-
թյուններն է ներդնում հանուն ընդհանուր գործի, կրոնական «փրկության»
որոնումները հավատացյալների ուժերը վատնում են անօգուտ ու ապարդյուն
աղոթքներում ու ապաշխարություններում։

Երբ մենք խոսում ենք նոր մարդու դաստիարակության մասին, ապա,
առաջին հերթին, նկատի ունենք այն մարդուն, որն իր կյանքի իմաստը տես-
նում է կոմունիզմի համար մղվող պայքարում, ստեղծագործ աշխատանքում,
բարձր գաղափարայնության ու կոմունիզմին նվիրված լինելու մեջ։ Իսկ այդ
ամենից ստացած բարոյական բավարարվածությունը մեր ժամանակակցի՝
կոմունիզմ կառուցողի երջանկությունն է, որն իր մեջ զուգակցում է հոգևոր
հարստությունը, բարոյական մաքրությունն ու ֆիզիկական կատարելությունը։

Իսկ ինչպիսի՞ն են բարոյական առաջընթացի հեռանկարները զարգացած
սոցիալիզմի պայմաններում և ինչպե՞ս են այդ առաջընթացին խանգարում
կրոնական նախապաշարումները։

Բարոյական առաջընթացը սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվ պրո-
ցես է, որն արտահայտվում է արտադրամիջոցների, մշակույթի արժեքների
նկատմամբ մարդկանց նոր վերաբերմունքի միջոցով, պետական ու հասարա-
կական գործերին միլիոնավոր մարդկանց անմիջական մասնակցությամբ։
Սակայն դա չի նշանակում, որ նոր բարոյականության ձևավորումն ընթանում
է տարերայնորեն։ Ընդհակառակը, կոմունիստական բարոյականության ձևա-
վորման ոլորտում անընդհատ աճում է սուբյեկտիվ գործոնի դերը։ «Սովետա-
կան մարդկանց բարոյա-քաղաքական հատկությունները,— ՍՄԿԿ XXIV հա-
մագումարում ընդգծել է Լ. Ի. Բրեժնևը,— ձևավորվում են սոցիալիստական
մեր ամբողջ ապրելակերպով, հասարակության գործերի ամբողջ ընթացքով,
բայց, ամենից առաջ, կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների
նպատակասլաց, համառ գաղափարա-դաստիարակչական աշխա-
տանքով»։

Կուսակցությունը համակողմանի ջանքեր է գործադրում, որպեսզի դաս-
տիարակչական, գաղափարական գործունեությունը համապատասխանի ժա-
մանակի ոգուն, հաշվի առնվեն հասարակական կյանքի տեղաշարժերը, գի-
տության, կուլտուրայի նվաճումները։

Մարդկության բարոյական պրոգրեսի ուղին չի անցնում կրոնական
զգացմունքների զարգացման միջով, ինչպես հավատացյալներին համոզում են
կրոնական քարոզիչները։ Այդ ուղին կոմունիզմի կառուցումն է, որի ժամանակ
մարդու բարոյականությունը զերծ է երկյուղից, շահամոլությունից, իշխելու
տենչից, ուրիշների հաշվին իր «ինքնահաստատման» ամեն դրսևորումից։ Կո-
մունիստական հասարակության անդամի բարոյական պատշաճ ապրելակերպը
այնպես բնական կլինի, ինչպես, ասենք, մաքուր օդ շնչելու պահանջը։ Իսկ
կրոնական վերապրուկները խանգարում են կոմունիստական բարոյականու-
թյան պահանջների ոգով մարդկանց դաստիարակմանը։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները նշել են, որ անցյալի պատմությու-
նը եղել է մարդկության նախապատմությունը, իսկ նրա իսկական պատմու-
թյունն սկսվում է կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանից։ Այս դրույթը
հաստատվում է նաև բարոյականության պատմությամբ։

---

Ս. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԹԵԼԱԴՐԱՆՔՈՎ*

Սոցիալիստական արտադրական կոլեկտիվը միայն տնտեսական միավոր չը, ինչպես հաճախ որակվում է մեր գրականության մեջ, նրա դերը միայն նյութական արժեքների արտադրությամբ չի սահմանափակվում։ Այն հասարակական սիստեմի կարևորագույն և կազմակերպված սոցիալական բջիջներից մեկն է։ Աշխատանքային կոլեկտիվում, ինչպես մի կաթիլ ջրում, արտացոլվում է հասարակության սոցիալական կառուցվածքը՝ ընդգրկելով բոլոր հիմնական սոցիալական խմբերի ներկայացուցիչներին, հասարակական տարբեր ծագում ունեցող, էթնիկական խմբերի պատկանող, առանձին պրոֆեսիաների, հանրակրթական և ընդհանուր զարգացման ոչ միանման մակարդակի տեր մարդկանց։ Դա այն միջավայրն է, որի ոլորտում ընթանում է մարդու զարգացման պրոցեսը, հաստատվում, կազմավորվում և դրսևորվում է նրա սոցիալական էությունը։ «Միայն կոլեկտիվում է անհատը ստանում միջոցներ,— նշել են Մարքսը և Էնգելսը,— որոնք նրան հնարավորություն են ընձեռում բազմակողմանիորեն զարգացնելու իր ձիրքերը...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3 стр. 75)։ Ահա թե ինչու արտադրական կոլեկտիվը մեր օրերում դարձել է բազմակողմանի սոցիոլոգիական հետազոտությունների առարկա, տարբեր մասնագիտության գիտնականների կոոպերացված ուսումնասիրության օբյեկտ։

Այսուհանդերձ, հասարակական գրականության մեջ այն տակավին արտացոլվում է իր բազմակողմանի կենսագործունեության լոկ առանձին կողմերով։ Հասարակական գիտություններից յուրաքանչյուրը, հասկանալի պատճառով, կոլեկտիվը դիտում է իրեն հետաքրքրող տեսանկյունից. քաղաքատնտեսությունը՝ որպես արտադրական բջջի, սոցիալական հոգեբանությունը՝ անհատների միջև գոյություն ունեցող հոգեբանական-էմոցիոնալ հարաբերությունների տեսակետից, իրավագիտությունը՝ վարչա-իրավական հարաբերությունների ու կապերի առումով և այլն։ Պակաս կարևոր չէ նաև կոլեկտիվի կենսագործունեության մյուս կողմերի (օրինակ, քաղաքական, իմացաբանական և այլն) գիտական վերլուծությունը, որոնց, ցավոք, դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։ Այնինչ առանց կոլեկտիվի կենսագործունեության տարբեր ոլորտների համգամանալից ուսումնասիրության, հնարավոր չէ նրա ամբողջական հետազոտումը։ Սակայն որքան էլ կարևոր լինեն արտադրական

*) Տպագրվում է հարցադրման կարգով— Խմբ.։

կոլեկտիվի կենսագործունեության առանձին կողմերը և դրանց ուսումնասի-րումը, այնուամենայնիվ, զգացվում է նրա հետազոտման ամբողջական մե-թոդիկա մշակելու անհրաժեշտությունը։

Եթե կոլեկտիվի ուսումնասիրման նման հարցադրումը ճիշտ է, ապա տրամաբանորեն ծագում է մի այլ հարց. հասարակական գիտություններից ո՞րը պետք է զբաղվի այդ խնդրով՝ կոլեկտիվի, որպես սոցիալական ամբող-ջական երևույթի, ուսումնասիրությամբ։ Այլ կերպ ասած, խոսքը վերաբերում է արտադրական կոլեկտիվի ուսումնասիրման գործում հասարակական գիտու-թյուններից յուրաքանչյուրի առանձնահատուկ ֆունկցիաների, տեսանկյունն-րի և, վերջապես, ուսումնասիրության առարկայի սահմանմանը։

Չնայած սույն հարցի հանգամանալի, հրապարակային քննարկմանը, մինչև այսօր դեռևս միասնական ըմբռնում չկա։ Մարքսիստական սոցիոլո-գիան արտադրական կոլեկտիվն ուսումնասիրում է որպես ամբողջական սո-ցիալական օրգանիզմ։ Ուստի, մենք համամիտ ենք նրանց, ովքեր իրենց հե-տազոտման առարկան համարում են աշխատանքային կոլեկտիվի սոցիալա-կան էության համակողմանի բացահայտումը։

Մի կողմ թողնելով տվյալ խնդրի շուրջ եղած տարակարծությունները, նշենք, որ սոցիալական երևույթները չի կարելի որոնել հասարակական կյանքի տնտեսական, քաղաքական, բարոյական, կուլտուրական, իմացական և մյուս ոլորտներից (ինչպես և աշխատանքային կոլեկտիվի կյանքից) դուրս, առավել ևս անթույլատրելի է հակադրել վերջիններիս։ Սոցիալականի առանձ-նահատկությունը (ամենալայն իմաստով) արտահայտվում է դասակարգերի, ազգերի, բոլոր մյուս հանրությունների ու կոլեկտիվների փոխհարաբերու-թյունների, իսկ, վերջին հաշվով, անհատների փոխհարաբերությունների մեջ, որոնք դրսևորվում են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Խոսքը հենց որոշակի օբյեկտների առնչությամբ մարդկանց փոխհարաբերությունների մասին է՝ ի տարբերություն այդ օբյեկտների նկատմամբ նրանց վերաբեր-մունքի։

Տվյալ դեպքում մեզ անմիջականորեն հետաքրքրում է միայն արդյունա-բերական ձեռնարկության աշխատանքային կոլեկտիվը, որը բարդ սոցիալա-կան օրգանիզմ է։ Ուստի, այն «սոցիոլոգորեն» հետազոտել առավել ևս հնա-րավոր չէ առանց նրա բոլոր էական, ավելի բնորոշ տարրերի ու կառուց-վածքային փոխհարաբերությունների բացահայտման ու վերլուծման։

Կոլեկտիվի սոցիոլոգիական հետազոտումը, ինչպես և ամեն մի նման հետազոտություն, մեր կարծիքով, պետք է բաղկացած լինի հետևյալ մոտավոր փուլերից. ա) նախ անհրաժեշտ է կազմել հետազոտության ծրագիր կամ նա-խագիծ, բ) այնուհետև կատարել հետազոտման, դիտարկման օբյեկտների և միավորների կանխորոշում և ընտրություն, գ) նյութերի հավաքման միջոցնե-րի՝ հետազոտության մեթոդիկայի մշակում, դ) նյութերի հավաքում, սիստե-մավորում, ե) կուտակած նյութի վերլուծություն, ընդհանրացում և այլն։ Վե-րոհիշյալ փուլերից յուրաքանչյուրը, իր հերթին բաղկացած է գործողություն-ների բավականին բարդ համալիրից և կարող է իրականացվել տարբեր մի-ջոցներով ու եղանակներով։ Կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի ուսում-նասիրման առաջին փուլը պետք է լինի, մեր կարծիքով, աշխատավորների սոցիալ-դեմոգրաֆիական բնութագրումը, այսինքն՝ նրանց դասակարգումը ըստ հասակի, սեռի, սոցիալական ծագման, կուսակցական և ընտանեկան



դրության, ազգության, ընդհանուր ու մասնագիտական կրթության, պաշտո-նական և հասարակական դիրքի, աշխատանքային ստաժի և, թերևս, այլ հատկանիշների (ելնելով իհարկե, արտադրության առանձնահատկություննե-րից)։ Նման շերտավորումն անհրաժեշտ է կոլեկտիվի անդամների վերոհիշյալ հատկանիշների և նրանց սոցիալական մյուս բնութագրումների հարաբերակ-ցությունը որոշելու համար, որոնք կբացահայտվեն կոլեկտիվի կառուցվածքի հետագա վերլուծության ընթացքում։ Ի վերջո, դա հնարավորություն կընձեռի վեր հանելու սոցիալական բոլոր կողմերը՝ աշխատողների և ողջ կոլեկտիվի փոխադարձ կապի մեջ։

Այնուհետև, մեր կարծիքով, կարևոր է, նույնիսկ առաջնահերթ, որոշել կոլեկտիվի կենսագործունեության հասարակական այն ոլորտները, որոնցում կազմավորվում և ընթանում է նրա սոցիալական կյանքը։ Այդ ոլորտներից գլխավորներն են. ա) տնտեսականը (հասարակական արտադրություն, նյու-թական արժեքների բաշխում և սպառում), բ) քաղաքականը (աշխատավոր-ների քաղաքական գիտակցության և ակտիվության առաջացումը, ինչպես կո-լեկտիվի շրջանակներում, այնպես էլ հասարակության մասշտաբով), գ) կուլ-տուրականը (աշխատավորների ողջ կոլեկտիվի արտադրական, ֆիզիկական և հոգևոր կուլտուրայի կատարելագործումը), դ) բարոյականը (կոլեկտիվի և նրա անդամների բարոյական ինքնագիտակցության ու վարմունքի կատարելագոր-ծումը, բարոյականության նորմերի կազմավորումը), ե) իրավականը (աշխա-տավորների և ողջ կոլեկտիվի իրավագիտակցության և իրավական վարքի զարգացումը, իրավական նորմերի կատարումը), զ) ճանաչողականը (կոլեկտի-վի և նրա անդամների ինտելեկտուալ արժեքների կատարելագործումը, ձեռք բերված գիտելիքների կենսագործումը), է) հոգեբանական-էմոցիոնալը (կո-լեկտիվի անդամների հասարակական տրամադրությունների և սոցիալ-հոգե-բանական մյուս հատկությունների ձևավորումն ու դրսևորվելը) և այլն։

Ինչպես տեսնում ենք, արտադրական կոլեկտիվի կենսագործունեությունը չի կարելի հանգեցնել միայն զուտ արտադրական (չնայած վերջինս, թերևս, երևան է գալիս որպես հիմնական) կամ մի այլ գործունեության, քանի որ այն բազմասպեկտ է։ Կոլեկտիվի սոցիալական կյանքը կազմավորվում է և ընթա-նում ոչ թե նրա վերոհիշյալ հասարակական ոլորտներից դուրս, այլ դրանց շրջանակներում։ Սակայն սոցիալականը ամբողջովին չի համընկնում հասա-րակական ոլորտների հետ։ Դրանց նույնությունը չէ, այլ սինթեզը— կոլեկտիվ գործունեության տարբեր ձևերի իրականացման պրոցեսում մարդկանց փոխ-հարաբերությունների սիստեմը։ Տնտեսական, քաղաքական, կուլտուրական, բարոյական, իրավական, ճանաչողական, հոգեբանական-էմոցիոնալ պրոցես-ները սոցիալական հարաբերությունների տարբեր օբյեկտներ են։ Ընդ որում, այդ հարաբերությունները, ինչպես նաև դրանց կրողները, դրսևորում են որո-շակի յուրահատկություններ. ըստ օբյեկտի բնույթի դրանք կարելի է դասա-կարգել հետևյալ կերպ. սոցիալ-տնտեսական, սոցիալ-քաղաքական, սոցիալ-կուլտուրական, սոցիալ-բարոյական, սոցիալ-իրավական, սոցիալ-ճանաչողա-կան և սոցիալ-հոգեբանական։

Վ. Ի. Լենինը մեր հասարակարգի, նրա տնտեսական հզորության ստեղ-ծումը միայն տնտեսական ղեկավարների և ադմինիստրատիվ մտավորակա-նության՝ արտադրության կազմակերպիչների և հրամանատարների գործը չէր համարում։ «Մասսաների կենդանի ստեղծագործություն,— ասում էր նա,—

ահա՛ նոր հասարակության հիմնական գործոնը... կենդանի, ստեղծարար սո-
ցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է» (Երկեր,
հ. 26, էջ 346): Լենինյան այս ցուցումներին համապատասխան, կուսակցու-
թյունը ձգտում է այն բանին, որ առավել բազմապատկվի աշխատավորների
մասնակցությունն արդյունաբերական ձեռնարկությունների, սովխոզների ու
կոլտնտեսությունների կառավարման, արդյունաբերության արդյունավետու-
թյան և աշխատանքի արտադրողականության բարձրացման, կարողություննե-
րի լրիվ օգտագործման, աշխատանքային կարգապահության համար մղվող
պայքարին:

Սոցիալիստական արտադրական կոլեկտիվն իրականացնում է միմյանց
հետ սերտորեն առնչված երկու ֆունկցիա՝ տնտեսական և սոցիալական:

Կոլեկտիվի տնտեսական ֆունկցիան արտահայտվում է, առաջին հերթին,
նրա արտադրական գործունեության ոլորտում: Յուրաքանչյուր կոլեկտիվ, լու-
ծելով հասարակության կողմից իր առջև դրված խնդիրները, աշխատանքի
հասարակական բաժանման մեջ ունի իր տեղը: Արտադրական կոլեկտիվի սո-
ցիալական ֆունկցիան աշխատողների հասարակական օգտակար ունակու-
թյունների բազմակողմանի զարգացումը և նրան կոմունիստական ոգով դաս-
տիարակելն է: Այստեղ է, որ իրոք ձևավորվում է աշխատանքի նկատմամբ
ստեղծագործական, կոմունիստական վերաբերմունքը, մշակվում մարդկանց
վարքագծի նորմեր, փոխադարձ օգնության զգացում և այլն: Կոլեկտիվների
սոցիալական զարգացման հեռանկարային պլանների կարևորագույն օղակն է
բանվորների մասսայական, ինչպես և քաղաքական ու տեխնիկա-տնտեսական
ուսուցումը:

Կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի ուսումնասիրման հաջորդ փուլը
պետք է լինի սուբյեկտների ճանաչումն ու բնութագրումը: Այս դեպքում ան-
հրաժեշտ է լավ գիտենալ աշխատավորի անձը, կոլեկտիվի ենթախումբը
(բրիգադա, արտադրամաս, նախագծային բյուրո և այլն), իշխանության (վար-
չական և հասարակական) օրգանները, ի վերջո՝ ամբողջական կոլեկտիվը: Այս
սուբյեկտներից սոցիալական փոխհարաբերությունների մեջ են մտնում, ինչ-
պես յուրաքանչյուրն իր շրջանակում, այնպես էլ նույն սուբյեկտի բաղկացու-
ցիչ մասերը միմյանց հետ: Ի վերջո՝ աշխատանքային կոլեկտիվի ներսում
ստեղծվում է փոխադարձ կապերի բավականին բարդ սիստեմ՝ անհատ-ան-
հատ, ենթախումբ-ենթախումբ, օրգան-օրգան, անհատ- ենթախումբ, ան-
հատ-օրգան, անհատ-կոլեկտիվ, ենթախումբ-օրգան, ենթախումբ-կոլեկ-
տիվ, օրգան-կոլեկտիվ և այլն:

Բայց սոցիալական հարաբերությունների վերոհիշյալ տեսակներն առար-
կայազուրկ չեն: Դրանք նախ՝ առաջանում են ոչ թե առհասարակ, այլ գոր-
ծունեության կոնկրետ ձևերի հիման վրա (տնտեսական, քաղաքական, բարո-
յական և այլն): Իրենց հերթին սոցիալական սուբյեկտները ներգոր-
ծում են միմյանց վրա ոչ թե միաժամանակ իրենց բոլոր, այլ սոսկ
որոշակի կողմերով: Հետևապես, նրանք բազմակողմանի են իրենց գործողու-
թյան մեջ, նրանցից յուրաքանչյուրը կենսագործունեության ամեն մի ոլոր-
տում հանդես է գալիս համապատասխան որակական կացությամբ, որպես
տնտեսական, քաղաքական, բարոյական և այլ հարաբերությունների ակտիվ
կրողի: Այստեղից էլ, անհատները, նրանց ասոցիացիաները, իշխանության
սոցիալական օրգանները և, վերջապես, աշխատանքային բոլոր միավորում-



ներն իրենց սոցիալական էությունը դրսևորում են հասարակական կյանքի բո-
լոր բնագավառներում:

Արտադրական կոլեկտիվում սոցիալական սուբյեկտների այլ տեսակ են
աշխատողների որակապես տարբեր սոցիալական խավերն ու աշխատողների
պրոֆեսիոնալ ոռակավորված խմբերը: Դրանց գոյությունը պայմանավորված
է աշխատանքի հասարակական բաժանման տարբեր մակարդակներով և աշ-
խատանքի ֆունկցիոնալ-տեխնիկական բաժանմամբ:

Չնայած աշխատանքի հասարակական բաժանման պրոբլեմն իր սկզբուն-
քային մշակումն ու լուծումն է ստացել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշ-
խատություններում, այնուամենայնիվ, դրա որոշ դրսևորումներ, չհայտնաբեր-
ված կողմեր դեռևս բանավեճի առարկա են մասնագիտական գրականության
մեջ: Այդ առնչությամբ ծագում է հասարակական աշխատանքի կառուցվածքի
հարցը, որով զգալի չափով պայմանավորված է կոլեկտիվի սոցիալական
կառուցվածքը: Արդյունաբերական ձեռնարկություններում, մեր կարծիքով,
ճիշտ կլինի, ելնելով դասակարգման առաջարկված հիմքից, մարդկանց գոր-
ծունեությունը դասակարգել հետևյալ ձևով. ա) ըստ բնական առանձնահատ-
կությունների՝ ֆիզիկական և մտավոր. բ) ըստ իրականացվող ֆունկցիաների՝
արտադրական և սպասարկող, կառավարչական և գործադիր: Իր հերթին, ար-
տադրական աշխատանքը բաժանվում է գիտատեխնիկականի (գյուտարարա-
կան, նորարարական գործունեություն) և անմիջապես արտադրականի, իսկ
սպասարկման բնագավառի աշխատանքը՝ կառավարչական և, այսպես կոչված՝
«տեխնիկական» (հաշվային-հաշվողական աշխատանքներ, գործավարություն
և այլն): Ընդ որում, դրանցից յուրաքանչյուրում կան (չնայած ոչ միատեսակ
չափով) և՛ ֆիզիկական, և՛ մտավոր աշխատանքի տարրեր:

Ինչպես տեսնում ենք, կոլեկտիվի գործունեության ձևերի նման (թերևս
ոչ լրիվ) դասակարգումը մի անգամ ևս վկայում է նրա բավականին բարդ կա-
ռուցվածքի մասին: Ըստ որում, պետք է նկատի ունենալ, որ հասարակական
աշխատանքի բոլոր վերոհիշյալ տարատեսակները միմյանցից տարբերվում են
տնտեսական, կուլտուրական և այլ հատկանիշներով, տեխնիկական հագեցվա-
ծության ոչ միատեսակ աստիճանով և այլն, իսկ, վերջին հաշվով՝ տարբեր են
լինում աշխատանքի արտադրողականությունը, վարձատրության չափերը, հե-
տևաբար նաև աշխատողների եկամուտները:

Իրականում ինչպիսի՞ն է աշխատանքային կոլեկտիվի սոցիալական կա-
ռուցվածքը: Ընդհանուր առմամբ պետք է եզրակացնել, որ հասարակական
գործունեության յուրաքանչյուր բնագավառ ունի որոշակի սոցիալական խումբ՝
ֆիզիկական և մտավոր, արտադրական ու սպասարկման ոլորտի աշխատողներ
և այլն: Սակայն այս թեզը չափազանց ընդհանուր է և կոնկրետացման ու ճըշ-
գրտման կարիք ունի: Իրականում գրեթե չկան այնպիսի աշխատողներ, որոնք
միայն մի տեսակի գործունեությամբ զբաղվեն. զարգացած սոցիալիզմի պայ-
մաններում աշխատողները, որպես կանոն, համատեղում են մի շարք բնա-
գավառներ: Ուստի, խնդիրն այն է, որ պարզվեն նման համատեղման հա-
մամասնությունները և որոշվի, թե այս կամ այն կատեգորիայի աշխատողի
մոտ աշխատանքի որ ձևն է համեմատաբար գերակշռում:

Այսպիսով, եթե տարբեր սուբյեկտներ (անհատ, ենթախումբ, հասուկ
օրգան, կոլեկտիվ) միատարր չեն սոցիալական հարաբերությունների բնույ-
թով, ապա բնութագրվում են սոցիալական բազմակողմանիությամբ: Աշխա-

անքի տարբեր տեսակներ կատարողները մարդկանց որակապես որոշակի սոցիալական խավ են՝ որոշակի միակողմանիությամբ, որը պայմանավորված է գործունեության որոշակի ձևի հետ մշտական կապվածությամբ։ Առաջին դեպքում մենք ունենք, պատկերավոր ասած, կոլեկտիվի «ուղղահայաց» սոցիալական կառուցվածք, իսկ երկրորդում՝ «հորիզոնական»։ Դրանցից առաջինը հատուկ կլինի նաև կոմունիզմին, իսկ երկրորդը պատմականորեն անցողիկ է, այն, առանձին վերցրած, արտացոլում է հասարակության դասակարգային կառուցվածքը։

Արտադրական կոլեկտիվի սոցիոլոգիական հետազոտման գործում կարևոր օղակ է նրա պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի ուսումնասիրումը, որի հիմքում, ինչպես նշեցինք, ընկած է աշխատանքի ֆունկցիոնալ-տեխնիկական բաժանումը։ Վերջինս, իր հերթին, բացատրվում է հենց աշխատանքի ձևերի միջև եղած տարբերություններով. նախ՝ դրա ֆունկցիոնալ առանձնահատկություններով, նայած աշխատողն ինչպիսի գործունեությամբ է զբաղված, երկրորդ՝ դրա տեխնիկական բնութագրերով, նայած աշխատանքային գործունեության ընթացքում տեխնիկական ինչպիսի միջոցներ են օգտագործվում։

Այստեղից խնդիր է առաջանում՝ բացահայտել կոլեկտիվում աշխատողների առկա խմբերը և ուսումնասիրել ներկոլեկտիվային միգրացիոն հոսանքները, այնուհետև՝ ելնելով դրանից, մշակել նորմատիվների գիտականորեն հիմնավորված սիստեմ, որն անհրաժեշտ է արտադրական կոլեկտիվի սոցիալական զարգացման պլան կազմելու համար։

Կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի հետազոտման հաջորդ փուլը սոցիալական իրական պահանջմունքների՝ որպես նրա էական բաղադրամասերից մեկի, բացահայտումն ու բնութագրումն է։ Սոցիալական պահանջմունքները նախ՝ պայմանավորված են դրանց կրողների դասակարգային, սոցիալական-խմբային պատկանելությամբ և հասարակական վիճակով։ Մյուս կողմից, դրանք ազդում են անհատի և կոլեկտիվի սոցիալական կապերի սահմանների ու բնույթի վրա, արտացոլում սոցիալական նպատակների և անելիքների գիտակցման նրանց աստիճանը, զարգացման ու ակտիվության չափը։

Ինչպես հայտնի է, սովետական կոլեկտիվն ազնվացնում է մարդուն, նպաստում նրա ունակությունների ծաղկմանը։ Առանց կոլեկտիվի չկա ու չի կարող լինել լիարժեք անհատ։ Կարլ Մարքսը մարդուն համարում է հասարակական բոլոր հարաբերությունների խտիլը։ Միաժամանակ նա նկատել է, որ աշխատանքային պրոցեսն ի մի է ամրակում բազմահազար մարդկանց վիճակները, տրամադրությունները, ցանկությունները, կարողություններն ու ձախողման հոգեվիճակները։ Վերջիններս, իրենց հերթին, որոշ նրբերանգներով կոլեկտիվներից ներթափանցում են ընտանիքները։

Գաղտնիք չէ, որ ավելի հեշտ է լուծել դժվարագույն տեխնիկական որևէ խնդիր, քան վերակառուցել մարդկային հոգեբանությունը։ Հիրավի, բավական բարդ խնդիր է մարդու բնավորության միջից արմատախիլ անել անցյալից ժառանգած մնացուկները՝ էգոիզմը, ընչաքաղցությունը, սոցիալական պարազիտիզմը, քծնանքն ու սոցիալական վախը, նրան դաստիարակել դեմոկրատիզմի ու կոլեկտիվիզմի ոգով։ Բնական է, նման խնդիրների իրականացումն առավել կդյուրանա, եթե հասարակական կեցության բնագավառում տեղի ունեցող որակական փոփոխությունները խելացի օգտագործվեն նրա հոգեկանի, բարոյականի փոխակերպման միտումով։ Այդ կապակցությամբ բացառիկ մեծ



նշանակություն են ստանում արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման նկրտումները, դրանց հետ կապված, մարդկանց անձնական հարաբերությունների ուսումնասիրությունը, արտադրության պայմաններում նրանց վարքի, նորմերի հետազոտումը։

Եթե հիմնարկ-ձեռնարկություններում հասել են այն բանին, որ կոլեկտիվի ամեն մի անդամ անտարբեր չէ թերությունների, այն ամենի հանդեպ, ինչը հակասում է հանրային շահերին, եթե իրոք գիտակցական կարգապահություն, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունք, փոխադարձ հարգանք գոյություն ունի կոլեկտիվում, ապա արտադրության կառավարումը կընթանա հարթ, առանց սուր միջադեպերի։ Չէ՞ որ ամենուրեք իրեն տիրոջ նման դրսևորելու և կոլեկտիվի հետ մերվելու զգացումը և դրա հետ անխզելիորեն կապված ընդհանուր գործի համար պատասխանատվության գիտակցումը Վ. Ի. Լենինը համարում էր սովետական երկրի ապագա քաղաքացու հոգևոր կերպարի կարևորագույն հատկանիշը։

Կարևոր է նշել, որ սոցիալական շփման՝ միմյանց հետ փոխհարաբերության մեջ մտնելու պահանջմունքը պարզապես մարդկանց սոսկական ցանկությունը չէ, այլ նրանց կամքից անկախ, օբյեկտիվ անհրաժեշտություն։ Այստեղ որևէ առեղծված չկա, քանի որ մարդիկ, բնականաբար, չեն կարող գոյություն ունենալ հասարակական փոխադարձ կապերից դուրս։ Խնդիրն այն է, որ բացահայտվեն շփման կոնկրետ օբյեկտները և ուսումնասիրվեն սոցիալական հաղորդակցման պահանջների բազմաթիվ կոնկրետ ձևերը, դրանց ծավալը, ուղղությունը և դրսևորման ինտենսիվությունը կյանքի բոլոր ոլորտներում, որով որոշվում է աշխատանքային կոլեկտիվի և նրա անդամների սոցիալական զարգացածության մակարդակը։ Սոցիալիստական հաղորդակցման պահանջմունքը ինքնանպատակ չէ։ Այն դրսևորվում է սոցիալական գործունեության կոնկրետ ձևերի մեջ։ Իր հերթին, սոցիալական պահանջմունքները կարելի է դասակարգել. ա) ըստ բնույթի՝ նյութական և հոգևոր, բ) ըստ սուբյեկտների (կրողների)՝ անհատական և կոլեկտիվ, գ) ըստ ֆունկցիաների (անհատի և կոլեկտիվի հարաբերության որ կողմերի կատարելագործման նպատակին են դրանք ուղղված)՝ պրոֆեսիոնալ, քաղաքական, բարոյական, էսթետիկական, ֆիզիկական, ինտելեկտուալ, հոգեբանական-էմոցիոնալ զարգացման, դ) ըստ նպատակի՝ հանրօգուտ աշխատանքի և հանգստի, ե) հասարակական աստիճանի համեմատ՝ ընդհանուր կամ մասնավոր նշանակություն ունեցող, զ) սուբյեկտի սոցիալական վիճակին համապատասխանելու տեսանկյունից՝ ռեալ և ոչ ռեալ, երևակայական պահանջմունքների (բավարարվել չեն կարող) և այլն։

Կոլեկտիվի և առանձին աշխատողների սոցիալական պահանջմունքների հետազոտման ու պլանավորման անհետաձգելի ու հրատապ պրոբլեմը, մեր կարծիքով, ունի երկու կողմ. նախ՝ դրանց ձևավորումն ու զարգացումը, երկրորդ՝ դրանց իրացումը, բավարարումը։ Ըստ որում, պետք է ելնել պահանջմունքների ինչպես ձևավորման, այնպես էլ բավարարման մեխանիզմի բարդությունից՝ դինամիկայից։ Անհրաժեշտ է պարզել դրանց առնվազն երեք մակարդակ. իդեալական (ցանկալի), ֆիզիկական (գոյություն ունեցող) և օպտիմալ (առավելագույն)։ Հետևաբար, անհրաժեշտ է, ուսումնասիրել այդ մակարդակների հարաբերակցությունը և որոշել դրանց գործակիցները։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլան կազմելու գործում առաջնա-

կարգ նշանակություն ունի նրա այնպիսի դեմոգրաֆիական բնութագրումը, ինչպիսին է տարիքային և սեռային կազմը: Չպատկերացնելով այդ կողմը, դժվար է պլանավորման և կառավարման գործը գլուխ բերել: Աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ բաշխելիս, կուլտուր-կենցաղային և այլ օբյեկտներ տեղադրելիս, առևտրի և կուլտուր-կենցաղային գործը կազմակերպելիս չի կարելի յոլա գնալ առանց բնակչության տարիքի և սեռի մասին սպառիչ տեղեկություններ ունենալու: Այս ամենի մասին տեղեկությունները պետք է խմբավորվեն՝ ըստ կրթության, սոցիալական դրության, գոյության աղբյուրների, զբաղմունքի ու մասնագիտության, ընտանեկան դրության, ազգության և այլն: Հետաքրքրական մտորումներ կհարուցի կոլեկտիվի ներսում զբաղմունքների դասակարգումը:

Դժվար չէ պատկերացնել, թե որպիսի՜ հետաքրքրությամբ կընթերցվեն մամուլում լուսաբանված սոցիալական հոգեբանության մասնագետների մտորումները՝ նվիրված հանրապետության այս կամ այն արտադրական ձեռնարկության հոգեբանական կլիմայի հետազոտմանը: Այն կնպաստեր նաև տրնտեսական ղեկավարների, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական ակտիվիստների «հոգեբանական դրագիտության» ուսուցման գործին: Ո՞ւմ չէին հետաքրքրի կոլեկտիվի ղեկավարման բարդ ու պատասխանատու գործի, մարդկանց աշխատանքային գործունեության վրա նրանց տրամադրության ազդեցության աստիճանի, հոգեբանական գործոնի դերի, ղեկավարների ու ենթակաների փոխհարաբերությանը վերաբերող նյութերի ընդհանրացումը, վերլուծությունը: Հետաքրքիր չէ՞ իմանալ ընդհանուր աշխատանքի հաջողության գործում անձնական շահագրգռվածության ուժի դերը կամ այն, թե բանվորն ինչու է թողնում իր կոլեկտիվը, արդյոք նպատակային ու արդյունավե՞տ է ղեկավարի ամեն մի որոշումը և այլն: Ուստի, մամուլը պետք է օգնի հաշվի առնելու և վերլուծելու կոլեկտիվի ստեղծագործական ակտիվության վրա ազդող և՛ բարոյական, և՛ սոցիալական գործոնները:

Հանրահայտ է, թե լավ հանգիստը, դրական էմոցիաները, որպիսի դրական խթան են հանդիսանում աշխատապրոցեսում: Ապա, ուրեմն, աշխատավորի կյանքի և կենցաղի գիտական, մտածված կազմակերպումն աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն պայմաններից մեկն է: Ահա թե ինչու պատահական չէ այն ուշադրությունը, որ երկրի մի շարք խոշոր ձեռնարկություններում ցուցաբերվում է մարդկանց առողջական վիճակի հետազոտմանը, առողջության ժողովրդա-տնտեսական ռեզերվների հայտնաբերմանն ու մարդու գործունեության արդյունավետության բարձրացմանը:

Աշխատանքի արտադրողականության աճն անխուսափելիորեն կապված է այնպիսի հասկացությունների հետ, ինչպիսին են՝ արտադրության էսթետիկան, կոլեկտիվի ներսում փոխադարձ հարգանքն ու քաղաքավարությունը, կուլտուրական վարվեցողությունը: Կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության բարձրացումը և, ընդհանրապես, նրա սոցիալական հեռանկարը մեծ չափով կախված է նրա անդամների տարիքային ռացիոնալ կառուցվածքից, առանձնապես արտադրողական տարիքի ակտիվ շրջանի տևողությունից: Կոլեկտիվի անդամի տարիքն ունի տնտեսական կողմ, հետևապես, տարիքային առանձնահատկությունները չի կարելի անտեսել կոլեկտիվների սոցիալական պլանները կազմելիս:



Այսպիսով, արտադրական կոլեկտիվի էական սոցիալական տարրերն են աշխատողների սոցիալ-դեմոգրաֆիական խմբերը, սոցիալական կյանքի ոլորտները, սոցիալական գործունեության ձևերը, սոցիալական պահանջմունքներն ու ֆունկցիաները: Այս տարրերի փոխազդեցությունը ստեղծում է կոլեկտիվի սոցիալական բարդ կառուցվածք՝ կոլեկտիվ, որը նման փոխազդեցության (հարաբերությունների սիստեմի) հետևանքով ինտեգրացիայի է ենթարկվում և կազմակերպվում, դառնալով ամբողջական ու կառավարվող սոցիալական օրգանիզմ: Արտադրական կոլեկտիվը, որպես կազմակերպված սիստեմ, իր հերթին ողջ հասարակության սոցիալական կառուցվածքի էական տարրն է, նրա բաղկացուցիչ մասը: Այդ օրգանիզմի ուսումնասիրության մեթոդոլոգիական հարցերի մեջ պարզություն մտցնելով միայն կարելի է կազմել կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների ծրագիր, ձևակերպել հիպոթեզները, որոշել ուսումնասիրվող երևույթների էմպիրիկ կողմերը, մշակել կոնկրետ նյութի ստացման և ընդհանրացման մեթոդիկան ու մեխանիզմը, ելնելով կոնկրետ պայմաններից, հաշվի առնելով, իհարկե, ուսումնասիրվող կոլեկտիվի սոցիալական օրգանիզմի առանձնահատկությունները:

Բացի մի շարք հանրահայտ ֆունկցիաներից՝ մեթոդոլոգիական, քննադատական և այլն, սոցիոլոգիան նաև հասարակական առանձին ենթասիստեմների հետազոտման միջոց է (այդ թվում՝ տնտեսական, քաղաքական ու կուլտուրական գործունեության սոցիալական պրոբլեմների): Այս դեպքում սոցիոլոգիան հանդես է գալիս ոչ այնքան տեսական, որքան կիրառական իր կողմերով: Ուստի, որպես հետազոտության արդյունք, մենք ստանում ենք այս կամ այն մասնավոր ռեֆորմի միջոցով պրոբլեմի լուծման մասնավոր ծրագիր: Սոցիոլոգիայի կիրառական կողմն առավել ցայտուն երևում է հասարակական սկզբնական կոլեկտիվների՝ ձեռնարկության, ընտանիքի, բնակավայրի և այլնի հետազոտման ժամանակ:

Բազմակողմանիորեն մտածված և հիմնավորված սոցիալ-տնտեսական զարգացման պլանները, դրանց հետևողական կիրառումը, կարծում ենք, դրական ազդեցություն կունենան կոլեկտիվում մարդկանց բազմակողմանի հարաբերությունների վրա, քանի որ այդ պլանները նպաստում են և պայմաններ ստեղծում դրական տենդենցների զարգացմանը, կոլեկտիվի շրջանակներում յուրաքանչյուր անհատի հատուկ հեռանկարների ապահովմանը:

Ամեն մի կոլեկտիվի կյանքի բոլոր կողմերի մանրազնին ուսումնասիրումը, գիտա-տեսական հիմունքներով եղած փորձի ընդհանրացումը, սոցիալ-տնտեսական զարգացման առավել օպտիմալ պլանի ձևի մշակումը, դրանով իսկ սուբյեկտիվիստական մոմենտների բացառումն ու արտադրական կոլեկտիվի ներսում սինխրոնիզատորների ստեղծումը, մեր օրերում, կենսական խնդիր է, հրամայական պահանջ:

Կոլեկտիվի սոցիալական օրգանիզմի գիտական հետազոտումը և գործարկումը կնպաստի զգալիորեն բարձրացնելու նրա օգտակար գործողության գործակիցը: Այս ուղղությամբ մեր երկրի բազմաթիվ քաղաքներում տարիներ ի վեր լուրջ աշխատանք է տարվում: Ժամանակն է, որ Հայաստանում ևս այս գործին պատշաճ ուշադրություն նվիրվի:



նակցությունների հաջող ավարտման շնորհիվ լայն հեռանկարներ բացվեցին միջազգային ամբողջ մթնոլորտի առողջացման համար։ Անհրաժեշտ է հատկապես ընդգծել, որ Մոսկվայի և Վաշինգտոնի միջև փոխադարձ պայմանավորվածությունը ձեռք բերվեց ոչ որևէ, այլ պետության հաշվին։ Այդ բանակցությունները արդյունավետ էին հենց այն պատճառով, որ դրանք վարվում էին կողմերի հավասարության և հավասար անվտանգության, ուժի գործադրումից կամ դրա գործադրման սպառնալիքից հրաժարվելու, շահերի փոխադարձ հարգման սկզբունքների խստիվ կիրառմամբ, սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը միջազգային հարաբերություններում հաստատելու ոգով։ Սովետա-ամերիկյան բանակցությունների հաջող ելքը ցույց տվեց, որ ռեալիստական մոտեցման դեպքում կարելի է դրական արդյունքների հասնել ամենադժվարին, ամենաբարդ միջազգային պրոբլեմների լուծման գործում։

Սովետական Միությունը սոցիալիստական մյուս երկրների հետ միասին շարունակում է ակտիվորեն պայքարել հանուն զինաթափման։

Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը սովետական արհմիությունների 1972 թ. մարտին կայացած համաժողովում, զինաթափման հարցերին վերաբերվող ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից արված առաջարկությունները արդեն ապացուցեցին իրենց կենսունակությունը։ Ժողովուրդների և կառավարությունների ավելի ու ավելի աճող պաշտպանությանն է արժանանում զինաթափման հարցերի շուրջ համաշխարհային կոնֆերանս հրավիրելու մասին սովետական կոմունիստների համաժողովի առաջարկությունը։

Ստրատեգիական զենքի սահմանափակման միջոցառումների մասին սովետա-ամերիկյան համաձայնագրի ստորագրումը խոր դժգոհություն առաջ բերեց ԱՄՆ-ի ռազմամոլ շրջաններում։ Նրանք ամեն կերպ ձգտում էին ձախողել այդ հայտնի փաստաթղթի վավերացման գործը, ճգնելով «ապացուցել», որ հիշյալ համաձայնագրերը իբր թե «անհավասար» են և ձեռնտու են միայն Սովետական Միությանը, որը «միակողմանի առավելություններ է» ստանում, իսկ ԱՄՆ-ի անվտանգությունը «սպառնալիքի տակ է դրվում» և այլն։ Այդ պատճառով Պենտագոնի ու ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ներկայացուցիչները, ձևականորեն ընդունելով ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված համաձայնագրերի կարևորությունը, միաժամանակ փոխհատուցման պահանջներ են ներկայացնում՝ նոր թափ հաղորդելու պայմանագրերում չնշված զենքի տեսակների մրցավազքին։

Զինաթափման գործում ձեռք բերված որոշ հաջողությունները չպետք է հանգստացնեն խաղաղության կողմնակիցներին։ Չէ՞ որ ներկայումս շարունակվում է պատերազմական մրցավազքը, հսկայական բեռ հանդիսանալով ժողովուրդների ուսերին։ Բոլոր երկրների տարեկան ռազմական ծախսերը, միասին վերցրած, ներկայումս կազմում են 200 միլիարդ դոլար։ Հետաքրքիր է նշել, որ մեկ ավիառումբի արտադրության վրա ծախսվող միջոցներով կարելի է կառուցել բնակելի 5 տուն։ Հրթիռային կառավարվող մեկ արկի արժեքը հավասար է 1000 սառնարանի, տանկինը՝ մեկ դպրոցի, հրթիռային կործանիչինը՝ մեկ մեծ հիվանդանոցի, ռազմական-տրանսպորտային ինքնաթիռինը՝ երեք-չորս սենյականոց բոլոր հարմարություններով 100 բնակարանի, ծանր ռեակտիվ ռմբակոծչինը՝ 100 հազար տոննա շաքարի կամ ժամանակակից 37 դպրոցների, «Յուպիտեր» տիպի բալիստիկ հրթիռինը՝ բնակելի 60 շենքի, «Ատլաս բալիստիկ հրթիռինը՝ 70 խոշոր գրադարանների, «Պոլարիս» հրթիռներով սուզանավինը՝ 25 խոշոր հիվանդանոցի, կամ 25 հազար բնակարանի, հածանավինը՝ 16 հազար խոշոր բնակելի շենքի, ատոմային ավիակրինը՝ երեք միլիոն տոննա ցորենի։

Այս տվյալները վկայում են այն մասին, թե որքան անհրաժեշտ է դադարեցնել ոչնչացման ու կործանման զենքերի արտադրությանը հատկացվող խելահեղ ծախսումները։ Կյանքը մերկացնում է բուրժուական գաղափարախոսների սնանկ «տեսությունները», թե իբր զինաթափումը վնասակար է ժողովուրդների համար, թե այն կուժեղացնի գործազրկությունը և այլն։ Ինչպե՞ս չհիշենք այստեղ մեծ ամերիկացի Աբրահամ Լինկոլնի այն խոսքերը, որ հնարավոր է բոլոր մարդկանց խաբել միառժամանակ, ոմանց կարելի է անվերջ խաբել, բայց անհնարին է՝ բոլորին անվերջ խաբել։

ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանները համառորեն հրաժարվում են սպառազինությունների մրցավազքի դադարեցումից. դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ զենքի արտադրությունը, խոշորագույն և միանգամայն եկամտաբեր բիզնես է ռազմա-արդյունաբերական ընկերությունների համար։ Այսպես, ԱՄՆ-ում 80 միլիարդ դոլար ռազմական ծախսերից մոտ 45 միլիարդը հատկացվում է ռազմական ուղղակի պատվերների վճարմանը, ընդ որում 18 միլիարդը հասնում է ավիահրթիռային արդյունաբերության կորպորացիաներին։ Ռազմական խոշոր պատվերներ են ստանում հետևյալ ընկերությունները. «Բոինգ»-ը (մոտ 3 միլիարդ դոլար 1971 թվականին), «Ջեներալ Դայնեմիքսը» (2,5 միլիարդից ավելի), «Ջեներալ էլեկտրիկը» (մոտ 2 միլիարդ), ինչպես նաև «Լոկհիդը», «Նորդ Ամերիկեն ավիէյշն»-ը, «Ամերիկեն տելեֆոն էնդ տելեգրաֆ կոմպանին», «Դուգլաս էյրկրաֆտը» և ուրիշներ։ Ռազմական այդ մոնոպոլիաները վերջին ժամանակներս ուժեղագույն ճնշում են գործ դնում Սպիտակ տան վրա, նրան հրահրելով ավելի բորբոքել «սառը պատերազմը», սրել միջազգային լարվածությունը։ Այսպիսով միանգամայն պարզ է, որ արևմտյան երկրներում քիչ չեն այն գործիչները, ովքեր բոլորովին էլ չեն ցանկանում զինաթափվել։

Սոցիալական տարբեր սիստեմներին պատկանող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան գաղափարի նոր փայլուն հաղթանակի մասին է վկայում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև կնքված պայմանագրի վավերացումը։ Այդ պայմանագիրը մեկ անգամ ևս վառ դրսևորում է միջազգային անվտանգության ամրապնդման և համաեվրոպական համագործակցության այն գծի կենսականությունն ու արդյունավետությունը, որը նախատեսել է մեր կուսակցության XXIV համագումարը և որն իր հաստատումն ու հետագա զարգացումն ստացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի մայիսյան պլենումում։ Սովետա-արևմտագերմանական պայմանագրի նպատակներն ու խնդիրները պարզ են ու հասկանալի։ Դրանք ամենայն որոշակիությամբ ձևակերպված են պայմանագրի տեքստում, որը տեղ չի թողնում որևէ աղավաղված մեկնաբանության համար։ Առանձնահատուկ նշանակություն ունի կողմերի պարտավորությունների վավերագրումը Եվրոպայի անվտանգության արմատական հարցի՝ Եվրոպայում գոյություն ունեցող պետական սահմանների հարցի կապակցությամբ։ Սովետական Միությունը և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը հայտարարում են, որ «Այժմ և ապագայում որպես անխախտ սահմաններ են դիտվում Եվրոպայի բոլոր պետությունների սահմանները, ինչպես որ դրանք կան սույն պայմանագրի ստորագրման օրը» և առաջ չեն քաշի «որևէ տերիտորիալ պահանջ որևէ մեկի նկատմամբ»։ Հետպատերազմյան ժամանակամիջոցում առաջին անգամ կապիտալիստական խոշոր պետության հետ կնքված պայմանագրում վավերագրվում են Լեհաստանի արևմտյան սահմանը և ԳԴՀ-ի ու ԳՖՀ-ի սահմանը։

Ինչպես պայմանագրի կնքման, այնպես էլ նրա վավերացման գործի հաջողության համար հսկայական նշանակություն ունեն Սովետական Միության և ԳՖՀ-ի պետական գործիչների անձնական հանդիպումները և նրանց միջև կայացած բանակցությունները 1970—1972 թվականներին։ Սովետա-արևմտագերմանական պայմանագրի վավերացումը և ուժի մեջ մտնելը, որը Լեհական Ժողովրդական Հանրապետության և ԳՖՀ-ի միջև կնքված պայմանագրի հետ մեկտեղ, վավերացրեց եվրոպական պետությունների հետպատերազմյան սահմանների անխախտելիության սկզբունքը, ունի հսկայական նշանակություն։ Միջազգային հասարակայնությունը գոհունակությամբ ընդունեց նաև Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագիրը Սովետական Միության, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև։ Այդ միջոցառումները լուրջ նախադրյալներ են ստեղծում Եվրոպայում կայուն խաղաղության և հուսալի անվտանգության ապահովման համար։ Դրան նպաստում է նաև ԳԴՀ-ի և ԳՖՀ-ի՝ որպես գերմանական երկու՝ սուվերեն և անկախ պետությունների միջև հարաբերությունների նորմալացումը, որ տեղի ունեցավ 1972 թվականի դեկտեմբերին, և նրանց առաջիկա ընդունումը Միավորված ազգերի կազմակերպության մեջ։ Այժմ արդեն օրակարգի հարց են դառնում բոլոր երկրների կողմից ԳԴՀ-ի միջազգային-իրավական ճանաչումը և ԳՖՀ-ի ու Չեխոսլովակիայի հարաբերությունների նորմալացումը։

Նոյեմբերի 22-ին չեզոք Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիում բացվեցին անվտանգության ու համագործակցության հարցերի համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման բազմակողմ կոնսուլտացիաներ, որոնց մասնակցում են եվրոպական 32 երկրներ (մայրցամաքի փաստորեն բոլոր պետությունները՝ բացի Ալբանիայից), ինչպես նաև ԱՄՆ-ի և Կանադայի ներկայացուցիչները։ Դեսպանների մակարդակով տեղի ունեցող այդ բազմակողմ կոնսուլտացիաները նշանավորում են անցում անվտանգության ու համագործակցության համաեվրոպական խորհրդակցության գործնական նախապատրաստմանը։ Սահմանվում են խորհրդակցության կոնկրետ ժամկետները, նրա անցկացման կարգը և խորհրդակցության օրակարգը։ Անտարակույս, խորհրդակցության հաջող անցկացումը նոր հնարավորություններ կստեղծի Եվրոպայի պետությունների միջև լայն համագործակցության համար իրավահավասարության, չմիջամտելու, բարիդրացիական սկզբունքներով։

Անհրաժեշտ է ընդգծել, որ Եվրոպայի իրադրության նորմալացման գործում կարևոր ներդրում հանդիսացավ Սովետական Միության և մի շարք երկրների միջև քաղաքական, տնտեսական, գիտա-տեխնիկական և մշակութային երկկողմ կապերի զարգացումը։ Բազմակողմանի համագործակցության, այդ թվում քաղաքական բնագավառում համագործակցության բարձր մակարդակ է ձեռք բերվել Ֆրանսիայի հետ մեր ունեցած հարաբերություններում։ Սովետա-ֆրանսիական բարեկամությունն ու համագործակցությունը կարևոր գործոն է խաղաղության և անվտանգության ապահովման համար Եվրոպայում և ամբողջ աշխարհում։ Ընդհանուր առմամբ հաջողությամբ են զարգանում մեր հարաբերությունները նաև եվրոպական այնպիսի պետությունների հետ, ինչպիսիք են Իտալիան, ԳՖՀ-ն,

# ՆԱԽ ԵՎ ԱՌԱՋ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Ա. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ

ՀԿԿ Երևանի Շահումյանի շրջկոմի առաջին քարտուղար

*Վ. Ի. Լենինը Մեծ նախաձեռնություն նշանավոր հոդվածում նշում է, որ
«Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը,
ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Երկեր, հատ. 29,
էջ 523)։ Կյանքը համոզիչ կերպով ապացուցեց լենինյան այս դրույթի ճըշ-
մարտացիությունը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը միշտ
եղել ու մնում է սոցիալիստական էկոնոմիկայի առաջընթացի կարևոր գոր-
ծոնը։ Ահա թե ինչու իններորդ հնգամյակի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համա-
գումարի դիրեկտիվներում նախատեսված է աշխատանքի արտադրողականու-
թյան մեծ աճ։ Նոր հնգամյակում այն արդյունաբերության մեջ պետք է բարձ-
րանա 38,8 տոկոսով, անցած՝ ութերորդ հնգամյակի 32 տոկոսի դիմաց։ ՍՄԿԿ
XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժ-
նևը, անդրադառնալով այդ հարցին, շեշտեց, որ տնտեսական շինարարության
ասպարեզում մեր առջև ծառացած խնդիրների լուծման գործում— «...այն
գլխավորը, որի վրա մենք պետք է հույս դնենք, արտադրության արդյունավե-
տության բարձրացումն է։ Եթե ավելի պարզ խոսելու լինենք, պրոբլեմի էու-
թյունն այն է, որ աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների
յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային
եկամտի ծավալը։ Իսկ դա, վերջին հաշվով, հանրային աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացումն է» (*ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ*
72—73)։

Երևան քաղաքի Շահումյանի շրջանի արդյունաբերական ձեռնարկու-
թյունների կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները, ճիշտ
ըմբռնելով կուսակցության այդ պահանջը, իրենց տեսադաշտում են պահում
աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրը։ Այն իր պատշաճ
տեղն է գրավում շրջանի գործարանների ու ֆաբրիկաների հնգամյա պլաննե-
րում։ Նոր հնգամյակում տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում աշխատանքի արտա-
դրողականությունը կաճի 20 տոկոսով, տրիկոտաժի № 2 ֆաբրիկայում՝ 47,
մետաքսի կոմբինատում՝ 25 տոկոսով։ Այս տեսակետից մեծ առաջընթաց կու-*



*նենա «Էլեկտրոն» գործարանը։ Նախատեսվում է հինգ տարում այստեղ աշ-
խատանքի արտադրողականությունը բարձրացնել 86 տոկոսով, ընդ որում,
հնգամյակի ընթացքում թողարկվող արտադրանքի ծավալի 90—95 տոկոսը
կապահովվի դրա հաշվին։*

*Մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման ուղիները բազմաթիվ ու բազմատեսակ են։
Այստեղ կխոսեմ դրանցից մի քանիսի մասին։ Ինչպես ամենուրեք, մեզ մոտ
ևս այդ գործում վճռական նշանակություն կունենան գիտա-տեխնիկական
առաջընթացի արագացումը, նոր ռեզերվների հայտնաբերումը, աշխատատար
պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, աշխատանքի գիտական
կազմակերպումը և սոցիալ-կուլտուրական մի ամբողջ շարք միջոցառումների
իրականացումը։*

*Կուսակցության XXIV համագումարը, որպես իններորդ հնգամյակի գըլ-
խավոր խնդիր, առաջադրեց ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական
մակարդակի բարձրացումը։ Այդ խնդրի հաջող լուծման գլխավոր ուղիներից
մեկը գիտա-տեխնիկական առաջընթացի արագացումն է, որը չի կարելի
պատկերացնել առանց աշխատանքի արտադրողականության բարձրացման։
Այն ենթադրում է ինչպես սովետական, այնպես էլ արտասահմանյան գիտու-
թյան ու տեխնիկայի նորագույն նվաճումների ու արտադրության ուսանելի
փորձի լայն արմատավորում, բարձրարտադրողական մեքենաների ու սարքա-
վորումների մշտական ներդրում, աշխատատար պրոցեսների մասնակի ու
կոմպլեքսային մեքենայացում, ավտոմատացում ու քիմիացում, առաջավոր
տեխնոլոգիայի բազմակողմանի կիրառում։ Այս տեսակետից մեր շրջանի ար-
դյունաբերական ձեռնարկությունների նվաճումներն զգալի են։ Այժմ նրան-
ցում գործում են 1160 ավտոմատացված հաստոցներ, կոմպլեքսային մեքենա-
յացված 7 տեղամասեր, հոսքային մեքենայացված 55 գծեր։*

*Արտադրության ծավալի մեծացման, շահութաբերության ու աշխատանքի
արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ու
որակի բարելավման նպատակով իրականացվող գիտա-տեխնիկական առաջ-
ընթացի միջոցառումների շնորհիվ որոշակի տեղաշարժեր են կատարվել «Էլեկ-
տրոն» գործարանում։ Այստեղ վերանայվել են էլեկտրական հաշվիչ մեքենա-
ների դետալների ու հանգույցների ողջ տեխնոլոգիական պրոցեսները, լուրջ
քայլեր են արվել արտադրության մեքենայացման ու ավտոմատացման աս-
պարեզում։ Դրանց նպատակն ընդհանուր տեխնիկական մակարդակի բարձ-
րացումն է։ Նախընթաց տարիներին գործարանում իրականացվել են առաջա-
վոր տեխնոլոգիայի 42, ավտոմատացման և մեքենայացման 58 և բազմաթիվ
այլ միջոցառումներ. մշակվել ու ներդրվել են հինգ հոսքային գիծ, ութ կոնվե-
յեր, հոսքային գծեր են անցկացվել նախապատրաստման, դրոշմման, պլաստ-
մասսայի և կարկասահավաքման տեղամասերում։ Այդ ամենը հնարավորու-
թյուն է ընձեռել տանելու մոտ մեկ մլն ռուբլու օգուտ, 864 մարդու տեղա-
փոխելու արտադրության այլ տեղամասեր և արտադրական հրապարակի մեկ
քմ ընկնող արտադրանքի ծավալը մեծացնելու 3,8 անգամ։*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ձեռնարկության կուս-
կազմակերպության (բյուրոյի քարտուղար՝ Ա. Հարությունյան) հոգածության
առարկան է։ Կուսակցական ժողովներում ու կուսբյուրոյի նիստերում պար-
բերաբար արծարծվում են այդ հարցերը, կոմունիստները հանդես են գալիս*

խելացի առաջարկություններով ու դիտողություններով։ Այսպես, կուսժողովներից մեկի ժամանակ, երբ քննարկվում էին «Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կուսկազմակերպության խնդիրները», գործարանի գլխավոր տեխնոլոգ, ՍՄԿԿ անդամ Ռ. Հարությունյանը շեշտեց, որ միայն մեքենայացման ճանապարհով է հնարավոր հաշվիչ մեքենան կարգավորել 18 աշխատանքային օրում։ Էլեկտրոնիկայի բնագավառում ետ մնալը հաղթահարելու նպատակով նա առաջարկեց ժամանակավորապես ստեղծել տեխնոլոգիական հատուկ խումբ, որը մշակի տեխնոլոգիական առաջավոր եղանակներ և դրանք ներդնի արտադրության մեջ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները կատարելու համար կոմունիստներ Ռ. Հարությունյանը, Վ. Ջալոյանը (արտադրամասի պետ), Ս. Իգիթյանը (արտադրամասի վարպետ), Հ. Շահինյանը (արտադրամասի պետ) առաջարկեցին հստակություն մտցնել հաշվառման ու հաշվետվության մեջ, կարգավորել պահեստային տնտեսության գործերը, բարելավել մատակարարումը, այն կազմակերպել համաչափ ու պլանավորված, կազմել հաստոցների ու սարքավորումների նորոգման գրաֆիկ, իրականացնել տնտհաշվարկը բոլոր տեղամասերում, հոգալ բանվորների տեխնիկական ուսուցման և նրանց տըntեսական գիտելիքներով զինելու մասին և, ամենակարևորը, մեքենայացնել ու ավտոմատացնել արտադրական պրոցեսները։

Ժողովն ընդունեց գործնական որոշում։ Այդ, ինչպես նաև «Անթերի արտադրանքի սարատովյան մեթոդի ներդրման և կուսկազմակերպության խնդիրների մասին» կոմունիստների ընդունած որոշումները կենսագործվեցին հաջողությամբ։ Ժողովին նախորդած ժամանակաշրջանում, հատկապես ՍՄԿԿ XXIV համագումարից հետո, գործարանում իրականացվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացմանը նպաստող մի շարք միջոցառումներ։ Միայն նորագույն տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման շնորհիվ «Էլեկտրոն» գործարանը 1971 և 1972 թվականներին տվեց մեծ քանակությամբ լրացուցիչ արտադրանք։

Նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը № 1 տրիկոտաժի ֆաբրիկայում մեծապես խթանում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Վերջին տարիներին ձեռնարկության տնտեսական ղեկավարությունը և կուսկազմակերպությունն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում արտադրության տեխնիկական վերազինմանը։ Կուսկազմակերպության ժողովի որոշմամբ արտադրությունից հանվել են ֆիզիկապես և բարոյապես մաշված մի շարք սարքավորումներ, որոնց փոխարեն տեղադրվել են հայրենական և արտասահմանյան արտադրության 200 գործող, կարող և հարդարող տեխնոլոգիական մեքենաներ։ Դրանց շնորհիվ կրճատվել է ձեռքի աշխատանքը և նշանակալիորեն բարձրացել արտադրողականությունը։ Այստեղ 1972 թ. նորագույն մեքենաների տեղակայմամբ մեծացավ սպասարկման գոտին և աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 18 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության աճին զուգընթաց իջավ արտադրանքի մի քանի տեսակների աշխատատարությունը. կանացի շրջազգեստինը՝ 10,8, կանացի ժակետինը՝ 29,1, մանկական ժակետինը՝ 6,1 տոկոսով։

Քննարկվող հարցի առումով որոշակի դրական աշխատանք է կատարել նաև Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կոլեկտիվը։ Վերջին տարիներին այստեղ տեղադրվել են ավելի քան 740 հազար միավոր ժամանակակից



գործող հաստոցներ, որոնք ունեն բարձր արտադրողականություն։ Կտորեղենի մեքենայացված զուգման սարքավորման տեղադրմամբ վերացել է ձեռքի աշխատանքը ներկող-հարդարող արտադրամասում։ Ընդ որում, արտադրամասի հզորությունը 663 հազարից հասել է մեկ միլիոն 881 հազար մետրի, իսկ տարեկան տնտեսական օգուտը կազմել է 77 հազար ռուբլի։ «Կովո» մակնիշի հատուկ չորացնող մեքենայի ներդրումը հնարավորություն է ընձեռել ացետատային մետաքսը հարդարել տեխնոլոգիայի պահանջներին համապատասխան, իջեցնել պատրաստի արտադրանքի ինքնարժեքը և տարեկան տնտեսել ավելի քան 62 հազար ռուբլի, էլ չենք խոսում աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակի մասին, որն ապահովվել է այդ նորարարությունների շնորհիվ։

Աշխատատար ծանր պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման խնդիրները լուծելիս՝ արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներն ու կազմակերպությունները չպետք է մոռանան, որ չափազանց կարևոր է նաև օժանդակ աշխատանքների մեքենայացումը։ Ճիշտ է, շրջանի ձեռնարկություններն այս ասպարեզում ևս ունեն նկատելի հաջողություններ, բայց մինչև օրս շատ գործեր, ինչպես, օրինակ, թեթև արդյունաբերության ձեռնարկություններում կիսաֆաբրիկատի և պատրաստի արտադրանքի փոխադրումը արտադրամասից արտադրամաս և պահեստ, կատարում են ձեռքով։ Ընդ որում, արդյունաբերական բանվորների 40 տոկոսից ավելին զբաղված են օժանդակ գործողություններով։ Շատ օժանդակ բանվորներ զբաղված են բեռների տրանսպորտավորման, տեղափոխման ու պահեստավորման, բեռնման ու բեռնաթափման գործով։ Անժխտելի է դրանց մեքենայացման հույժ անհրաժեշտությունը։ Օժանդակ պրոցեսների մեքենայացմամբ հնարավոր կլինի լուծել մի շարք խնդիրներ։ Ազատված բանվորական ուժը առաջին հերթին կօգտագործվի հիմնական տեղամասերում, կբարելավվի միջարտադրամասային մատակարարումը, կկանխվեն աշխատանքային պարապուրդները և այլն։

ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց իններորդ հնգամյա պլանի հաջող կատարման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մոբիլիզացնել արտադրության ներքին ռեզերվները։ Հանրահայտ է, որ այդ գործում կարևոր տեղ են գրավում արտադրաֆոնդերի լիարժեք օգտագործումը և հերթափոխայնության գործակցի բարձրացումը։ Ընդգծելով հերթափոխայնության գործակցի բարձրացման կարևորությունը՝ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում ձեռնարկությունների կուսկոմիտեների և կուսակցական վերադաս մարմինների առջև խնդիր դրեց ավելի խիստ մոտենալ այդ հարցին, «...մշակել և իրականացնել այնպիսի միջոցառումների կոմպլեքս, որոնք ապահովեն սարքավորումների առավել լրիվ օգտագործումը (նույն տեղը, էջ 82)։ Այս խնդիրների պատշաճ լուծումը, անշուշտ, կհանգեցնի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Հատկանշական է, որ վերջին տարիներին շրջանի ձեռնարկությունների գերակշռող մասում բարձրանում է ֆոնդատվությունը, սարքավորումները գործում են լրիվ ծանրաբեռնվածությամբ, խիստ կրճատվում են միջհերթափոխային պարապուրդները։ Այս առումով գործերն առավել բարեհաջող են «Էլեկտրոն» գործարանում, մոդելային կոշիկների, տրիկոտաժի № 1 ֆաբրիկաներում, մետաքսի կոմբինատում և այլ ձեռնարկություններում։

Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում, արտադրաֆոնդերի օգտա-

գործման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով, բոլոր հաստոցներն ամրացվել են որոշակի նեղավարպետների, սահմանվել է մեքենաների նախազգուշական ստուգման հատուկ կարգ, 9 տոկոսով մեծացել է ոլորման արտադրամասում օգտագործվող կոճերի կարողությունը, 20 տոկոսով ավելացվել սարժայի հենքերի երկարությունը, որի շնորհիվ արտադրանքի օրական միջին քանակն աճել է 300 մետրով: Այստեղ նախկինում անգործության էին մատնված 816 գործող ավտոմատ հաստոցների ավտոմատ հանգույցները: Կուսկազմակերպության միջամտությամբ և դիրեկցիայի հետևողականության շնորհիվ հնարավոր եղավ օգտագործել 560 հաստոցների լամելային հարմարանքները և 400 հաստոցի ավտոմատ մարտկոցները: Արդյո՞ւնքը: Ավելացավ բանվորների սպասարկած հաստոցների քանակը, կրճատվեց հումքի կորուստը, լավացավ արտադրանքի որակը, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 3—9 տոկոսով:

Կուսակցությունը պահանջում է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել անտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններին, կիրառել արտադրության ու աշխատանքի կազմակերպման արդյունավետ եղանակներ, օգտագործել աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորությունները, հայտաբերել նոր ռեզերվներ: Այդ բարդ սիստեմում իր ուրույն տեղն ու նշանակությունն ունի տնտեսական հաշվարկը, որը մեր շրջանի ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճի աղբյուր է: Այն արդյունավետ կերպով կիրառվում է № 1 ֆաբրիկայում:

Սոցիալիստական մրցությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն է: Այն լավ է կազմակերպված մետաքսի կոմբինատում, դաշնամուրի ֆաբրիկայում, «Էլեկտրոն», կամրջային երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարաններում և այլ ձեռնարկություններում: Կուսկազմակերպության, դիրեկցիայի և արտադրական կոլեկտիվի համառ ջանքերով «Էլեկտրոն» գործարանը վերջին հինգ տարվա ընթացքում անընդմեջ հաղթող է ճանաչվում սոցիալիստական մրցությունում և արժանանում է համամիութենական կարգի մրցանակային տեղերի և դրամական պարգևների:

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, առաջին հերթին, պայմանավորված է բանվորի պատրաստականությամբ ու հմտությամբ, աշխատանքի ու սոցիալական սեփականության նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով, ընդհանուր զարգացման մակարդակով: Դրանում կարելի է համոզվել հենց թեկուզ մեր շրջանի ձեռնարկությունների օրինակով: Սոցիալ-կուլտուրական և որակավորման բարձրացման միջոցառումները, որոնք իրականացվում են անմիջականորեն ձեռնարկությունների դիրեկցիաների ու կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, անսպառ աղբյուր են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար: Անժխտելի է, որ բանվորի հանգստի ու կենցաղի լավ կազմակերպումը բազմապատկում է նրա ուժերը, բարձրացնում աշխատաժամանակի արդյունավետությունը: Այս տեսակետից ուսանելի շատ բան է արվել «Էլեկտրոն» գործարանում: Միայն անցած հնգամյակում ձեռնարկության 265 անդամ ապահովվել է նոր բնակարանով: Վերջին տարիներին կոլեկտիվի յուրաքանչյուր 7—8 անդամի հատկացվում է առողջարանի, հանգստի տան կամ տուրիստական ուղեգիր: Ամեն տարի միայն



օգուտների հաշվին 16—18 հազար ռուբլի է ծախսվում ուղեգրեր ձեռք բերելու նպատակով: Յուրաքանչյուր շաբաթ 2—3 ավտոբուս է հատկացվում կոլեկտիվին՝ քաղաքից դուրս հանգիստը կազմակերպելու և հանրապետության տեսարժան վայրերին ծանոթանալու համար: Ձեռնարկությունում կանոնավոր գործում են 1000 տեղանոց բանվորական ճաշարանը, ակումբը, սպորտային բազմաթիվ խմբակներ: Ձմռանը Ծաղկաձորի սպորտբազայում շաբաթ և կիրակի օրերին հանգստանում է 40—50 մարդ:

Սոցիալ-կուլտուրական բազմազան միջոցառումներ են իրականացվում նաև շրջանի ուրիշ ձեռնարկություններում: Հազարավոր բանվորներ ընդգրկված են տեխմինիմումի ուսուցման խմբակներում, մասնակցում են արտադրության կուլտուրայի, ռացիոնալիզատորական, կոմունիստական աշխատանքի շարժմանը: Ձեռնարկություններում տեխնիկական առաջադիմությունն իրագործվում է ռացիոնալիզատորների և գյուտարարների ակտիվ մասնակցությամբ: Ամեն տարի արմատավորվում են հարյուրավոր առաջարկություններ, որոնց տված պայմանական օգուտն անցնում է մեկ միլիոն ռուբլուց: Այսպես, 1972 թ. շրջանի ձեռնարկություններում արված առաջարկություններից 815-ը արմատավորվել է արտադրության մեջ և նրանց բերել 1 մլն 200 հազար ռուբլու օգուտ: Հատկանշականն այն է, որ տեխնիկական առաջընթացի արագացմամբ, ռացիոնալիզատորական շարժման ծավալմամբ, սոցիալ-կուլտուրական միջոցառումների իրականացմամբ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Այն 1972 թ. «Էլեկտրոն» գործարանում աճել է 11,7 տոկոսով, մետաքսի կոմբինատում՝ 11,5, տրիկոտաժի № 2 ֆաբրիկայում՝ 8,2 տոկոսով և այլն:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար շարժումը շարունակվում է: Մետաքսի կոմբինատի կուսկոմիտեն և դիրեկցիան վերակառուցել են իրենց գործունեությունը և մշակել կոմպլեքս միջոցառումներ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման և տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշների բարելավման համար: Մետաքսագործները որոշել են բարոյապես մաշված մակնիշների մեքենաներն աստիճանաբար փոխարինել ժամանակակից, բարձր արտադրողականություն ունեցող մեքենաներով, բարձրացնել կադրերի որակավորումը, աշխատանքի գիտական կազմակերպմամբ բարելավել բանվորների աշխատաժամանակի օգտագործումն ու արտադրության կազմակերպումը, մասնագիտացնել բանվորների սպասարկած մեքենաները և թողարկվող արտադրատեսակները, լիովին կանխել արտապլանային պարապուրդներն ու բանվորների ներհերթափոխային աշխատաժամերի կորուստները, հիմնովին լավացնել վերամշակվող հումքի և անավարտ արտադրանքի որակը և այլն:

Կոմպլեքսային միջոցառումների լիակատար կենսագործումը, անկասկած, կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, մեծ չափով կօգնի բանվորական ուժի զգալի կրճատմանը, նախադրյալներ կստեղծի բազմահաստոցային սպասարկման գործը մասսայական դարձնելու համար: Հասկանալի է, որ բազմահաստոցային սպասարկման, բանվորների թվի կրճատման միջոցով կտնտեսվեն մեծ գումարներ, կավելանան տվյալ տնտեսության օգուտները, հետևաբար, և՝ նյութական խթանման ֆոնդերը:

Սակայն ոչ ամենուրեք է, որ լիովին օգտագործում են աշխատանքի ար-

*տադրողականության բարձրացման հնարավորությունները։ Ուղղակի ասենք, որ մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ (Հայհիդրոէներգոշինի մեխանիկական, Ջարբախի շինանյութերի, պաշտպանական ակնոցների գործարանները, քաղաքային սովետի տրիկոտաժի ֆաբրիկան) չկատարեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման 1972 թ. պլանը։ Դա ցույց է տալիս, որ հիշյալ ձեռնարկությունների կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները տակավին չեն վերակառուցել իրենց գործունեությունը ներկա պահանջներին համապատասխան։ Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ ու տնտեսական ղեկավարներ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում սարքավորումների տեխնիկական մակարդակի բարձրացման, բարոյապես հնացած մեքենաների մոդեռնացման ու դրանք նորերով փոխարինելու, արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման վրա։ Անհանդուրժելի է, երբ կահույքի դեկորատիվ գործվածքեղենի ֆաբրիկայում (դիրեկտոր՝ Հ. Գևորգյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Վ. Մաչիլյան) գործող սարքավորումների կեսից ավելին, որոնք տեղադրվել են 15, իսկ 7 տոկոսը՝ 30 տարի առաջ, չեն նորացվում ու փոխարինվում նորագույն սարքավորումներով։ Մի շարք ձեռնարկություններ (պաշտպանական ակնոցների, հատուկ մետաղյա կոնստրուկցիաների փորձնական, տնային իրերի պատրաստման գործարաններ, քաղաքային սովետի տրիկոտաժի ֆաբրիկա) իրենց սարքավորումներով արտելների տպավորություն են թողնում։*

*Արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների ու տնտեսական ղեկավարների անհետաձգելի խնդիրն է՝ գործուն միջոցների դիմել, գիտատեխնիկական հեղափոխության ճանապարհին նորացնել և լիարժեք օգտագործել արտադրամիջոցները, լուրջ ուշադրություն դարձնել նյութերի խնայողությանը, ներքին ռեզերվների հայտաբերմանն ու օգտագործմանը, է՛լ ավելի կատարելագործել արտադրության գիտական կառավարման ձևերն ու մեթոդները, դրանք ծառայեցնելով աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։*

*Սկզբնական կուսկազմակերպությունները միաժամանակ պարտավոր են, տեխնիկական կոմպլեքսային միջոցառումների մշակմանն ու կենսագործմանը զուգահեռ, կոլեկտիվներում ուժեղացնել ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքը։ Նրանք պետք է այդ գործը կազմակերպեն այնպես, որ ամեն մի բանվոր, ինժեներա-տեխնիկական աշխատող ճիշտ ըմբռնի աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները, քաջ գիտակցի, որ դա, ինչպես նաև հանրային ունեցվածքի նկատմամբ հոգատար, խնայողաբար վերաբերմունքը մեր սոցիալիստական երկրի հարստությունը բազմապատկելու կարևոր աղբյուր են։*

*Շրջկոմը և արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած մեծ խնդիրների լուծման գործում հսկայական նշանակություն են տալիս ղեկավար կադրերի, ինչպես ընդունված է ասել, արտադրության հրամանատարների հետ կատարվող աշխատանքին։ Նրանց համար պարբերաբար կազմակերպվում են ցիկլային դասախոսություններ, գիտապրակտիկ կոնֆերանսներ, որոնք նպաստում են նրանց գիտելիքների հարստացմանը, տնտեսավարության փորձի ձեռքբերմանը և, որ գլխավորն է, պատասխանատվության բարձրացմանը արտադրության կառա-*



*վարման գործում։ Նրանց համար կազմակերպել ենք գիտա-արտադրական կոնֆերանս՝ նվիրված արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիներին։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ կապված հարցեր ենք քննարկել նաև կուսշրջկոմի պլենումի ու բյուրոյի նիստերում։*

*Ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի հոյակապ կանխագծումների կենսագործման հաջողությունը մեծ չափով պայմանավորված կլինի նաև նրանով, թե յուրաքանչյուր ձեռնարկության ղեկավարություն, կուսակցական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններ ինչպես են զբաղվում աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, ինչպես են օգտվում արտադրական կարողությունների օգտագործման, արտադրապրոցեսների ավտոմատացման, առաջավոր տեխնոլոգիայի կիրառման համար իրենց ընձեռված մեծ հնարավորություններից։ Գիտա-տեխնիկական հեղափոխության ամեն մի նվաճում, սոցիալ-կուլտուրական ամեն մի միջոցառում պետք է ծառայեցնել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդ խնդրի լուծման համար մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների առջև բացվում են լայն հեռանկարներ։ Իններորդ հնգամյակում գործարաններում ու ֆաբրիկաներում կտեղադրվեն բարձր արտադրողական նոր մեքենաներ, կանցկացվեն ավտոմատ հոսքային գծեր, կմեծանան արտադրական կարողությունները։*

*Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների առջև ծառացած խնդիրների պատշաճ լուծմամբ մենք կնպաստենք՝ իրականացնելու իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրը, որն ազդարարում է. «...ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելք՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»։*



# ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՈՐԾՆԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ

ՅՈՒ. Հ. ՃՇՄԱՐԻՏՅԱՆ

ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի երկրորդ քարտուղար

Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումներով՝ ՀԿԿ Ստեփանավանի շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները նախապատրաստական լայն աշխատանք են կատարում կուսփաստաթղթերի փոխանակումը կազմակերպված անցկացնելու համար։ Այս հարցը բազմակողմանիորեն քննարկվել է կուսշրջկոմի պլենումում, բյուրոյի նիստում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Կուսկազմակերպությունների քարտուղարների համար անցկացվել են սեմինար-խորհրդակցություններ, որտեղ կուսփաստաթղթերի փոխանակման մասին հրահանգչական զեկուցումներով հանդես են եկել կուսշրջկոմի քարտուղարները, կազմբաժնի վարիչը, ինֆորմացիայի արտահաստիքային սեկտորի անդամները։

Կուսշրջկոմն ամենայն ուշադրությամբ և հետևողականորեն ուսումնասիրում է կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստման ընթացքը կուսկազմակերպություններում՝ պարզելով, թե ամեն ինչ արվո՞ւմ է, արդյոք, այն հաջողությամբ սկսելու և անցկացնելու համար, աշխատանքի ինչպիսի՞ ձևեր ու մեթոդներ են օգտագործվում, ինչպիսի մակարդակով են անցնում ժողովները։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ սկզբնական կուսկազմակերպությունների մեծ մասում ժողովներն անցել են քաղաքական-գաղափարական բարձր մակարդակով։ Կոմունիստները հավանություն են տվել ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի «Կուսակցական փաստաթղթերի փոխանակման մասին» որոշմանը, այն դիտել որպես գործողության ուղեցույց։ Կուսբյուրոները հետևում են, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ պատասխանատվությամբ մոտենա այդ գործին, իրեն հաշիվ տա, թե ինչպես է կատարում ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության պահանջները, թե տվյալ կուսկազմակերպությունն ինչպես է իրականացնում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները և ինչ պետք է անի կազմակերպչական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքն է՛լ ավելի ուժեղացնելու համար։ Այդ տեսանկյունով են անցել կուսակցական ժողովները Վարդաբլուրի կոլտնտեսության, Ագարակի սովխոզի, գուլպայի ֆաբրիկայի, «Արդկապ» գործարանի և ուրիշ սկզբնական կուսկազմակերպություններում, որտեղ կոմունիստների գերակշռող մասն ակտիվորեն մասնակցել է հարցերի քննարկմանը։



Կուսակցական ժողովները միշտ էլ դիտվել են որպես դաստիարակության դպրոց։ Նրանց այդ դերի պատշաճ կատարումն այժմ առավել անհրաժեշտ է, բայց, ցավոք, Պուշկինոյի սովխոզի, № 1 շինվարչության, № 8 ճանշահագործման և շինարարական տեղամասի սկզբնական կուսկազմակերպություններում կուսժողովներն ընդհանրապես անցնում են անհետաքրքիր, միօրինակ օրակարգով, կոմունիստների մեծ մասի պասսիվության պայմաններում։ Դժգույն են անցել նաև կուսփաստաթղթերի փոխանակությանը նվիրված ժողովները։ Բնական է, որ դրանք ցանկալի արդյունք չեն կարող տալ։ Այդ կազմակերպություններում ինչպես ժողովների օրակարգերի ընտրության, այնպես էլ նախապատրաստման նկատմամբ ցուցաբերվում է դատապարտելի անտարբերություն։

Կուսշրջկոմի բյուրոն քննարկել է Կաթնաղբյուրի սովխոզի, կենցաղսպասարկման կոմբինատի, գուլպայի և կահույքի ֆաբրիկաների կուսկազմակերպությունների բյուրոների հաշվետվությունները՝ կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստման վերաբերյալ։ Քննարկման ժամանակ առաջին պլան են մղվել կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, բոլոր օղակներում կուսակցական ազդեցության ուժեղացման, կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության զարգացման, նրանց կողմից կանոնադրական պարտականությունների կատարման հետ առնչվող հարցերը։ Առանձին կուսկազմակերպություններ, սակայն, բավարար ուշադրություն չեն նվիրում դրանց։ Կոմունիստների նկատմամբ պահանջկոտության բացակայության և նրանց ցածր պատասխանատվության հետևանքով ավտոտրանսպորտային ձեռնարկության կուսկազմակերպության 17 անդամներից միայն չորսն են կատարել իրենց ութ ամսվա պլանները։ Ն. Շահվերդյանը, Ն. Քոչարյանը, Ս. Եղիազարյանը, Ս. Սահակյանը և ուրիշներ անցած տարվա հունիս-օգոստոս ամիսներին իրենց առաջադրանքները թերակատարել են 20—25 տոկոսով։ Շրջկոմի բյուրոյի միջամտությունից հետո կուսբյուրոն բարձրացրել է պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ և իր գործունեությունն ուղղել արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, արտադրական ռեզերվների արդյունավետ օգտագործմանը, հնգամյակի պլանների անթերի կատարմանը։

Կոմունիստների նախաձեռնության զարգացման, նրանց ակտիվ գործունեության կազմակերպման ստուգված մեթոդներից է կուսակցական հանձնարարությունը։ Դրա կատարման ընթացքում կոփվում է կոմունիստը, զարգանում ու կատարելագործվում մարդկանց հետ աշխատելու նրա հմտությունը, սկսած գործը մինչև վերջ հասցնելու վճռականությունը։ Հանձնարարության կատարումը կոմունիստի մեջ պատվաստում է կարգապահության ու պարտաճանաչության զգացում, իր գործընկերների, աշխատանքի ու վարքագծի նկատմամբ պատշաճ պահանջկոտության, թերությունների հանդեպ անհաշտության, իրերի դրությանը սկզբունքային գնահատական տալու լավագույն հատկանիշներ։ Ահա թե ինչու կուսկազմակերպությունների բյուրոները ջանում են, որպեսզի հանձնարարությունները ճիշտ բաշխվեն, դրանք տրվեն յուրաքանչյուր կոմունիստի։ 84 կոմունիստներ կան Ստեփանավանի սովխոզ-տեխնիկումի կուսկազմակերպությունում (կուսբյուրոյի քարտուղար՝ Վ. Պարամյանցև)։ Իրենց աշխատանքային պարտականություններին զուգընթաց, նրանցից յուրաքանչյուրը կատարում է կուսակցական որոշակի հանձնարարություն։ Մեծ

թվով կոմունիստներ ներգրավվում են կուսժողովներում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը: Այստեղ գրեթե չկա կոմունիստ, որը ակտիվ չլինի: Կուսկազմակերպության անդամներից Հ. Սահակյանը, Ա. Քալանթարյանը, Ե. Օվեյանը, Քնարիկ Խուդավերդյանը մեծ պատասխանատվությամբ են կատարում կուսակցական հանձնարարությունները, ապահովում իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ: Շրջկոմի ցուցումով սովխոզ-տեխնիկումի և Վարդաբլուրի կոլտնտեսության կուսկազմակերպությունների՝ կոմունիստներին հանձնարարություններ տալու լավագույն փորձը ուսումնասիրում և կիրառում են շրջանի բազմաթիվ կուսկազմակերպություններ:

Կուսշրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում նաև կուսփաստաթղթերի կազմակերպական-տեխնիկական նախապատրաստությանը: Հաշվի առնելով յուրաքանչյուր կազմակերպության առանձնահատուկ պայմանները՝ շրջկոմը կազմել է գրաֆիկ, որի համաձայն կանցկացվի կուսփաստաթղթերի փոխանակումը: Ներկայումս կուսշրջկոմը և կուսկազմակերպությունները կարգի են բերում կուսակցականների հաշվառման գործը: Նախնական համեմատությունները ցույց են տալիս, որ ոչ բոլոր կոմունիստների փաստաթղթերն են լրացված գրագետ և պահանջված ձևով: Հարկ եղավ բավականին փոփոխություններ մտցնել հաշվառման քարտերում՝ կոմունիստների աշխատանքի, կրթության, հասցեների կապակցությամբ:

Շրջկոմը պլանավորել է առաջիկայում նույնպես հրավիրել կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունքներ՝ նվիրված կուսփաստաթղթերի փոխանակման գործնական հարցերին: Առաջիկայում ևս բյուրոյի նիստերում կլսվեն կուսկազմակերպությունների քարտուղարների հաղորդումները կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստման ընթացքի մասին: Կուսփաստաթղթերի փոխանակումը համակուսակցական կարևոր գործ է: Այն կծառայեցնենք կուսակցական շարքերի է՛լ ավելի ամրապնդման, տընտեսական խնդիրների հաջող լուծման նպատակին:



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՈՒ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

ԼՅՈՒԴՄԻԼԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Բնակչության կենսագործունեության հիմքը նյութական բարիքների սպառումն է: Նայած իր գործադրման նպատակին, սպառումը լինում է արտադրողական և անձնական: Արտադրողական է համարվում նյութական բարիքների ստեղծման պրոցեսում գործադրված աշխատուժի և արտադրամիջոցների սպառումը: Արտադրողական սպառումը արտադրապրոցեսի մի մասն է: Անձնական է համարվում մարդկային պահանջմունքների բավարարման նպատակով գործադրված կենսական բարիքների ու ծառայությունների սպառումը, որը մարդու վերարտադրման պրոցեսի մի մասն է: Անձնական սպառման աղբյուրը, եթե մտովին հեռանանք ազգային հարստության օգտագործումից, երկրի ազգային եկամտի սպառման ֆոնդն է: Ազգային եկամտի այն բաժինը, որ հասարակության յուրաքանչյուր անդամի անձնական սպառմանն է հատկացվում, որոշվում է երկրում իշխող նյութական բարիքների արտադրության ու բաշխման եղանակով:

Նյութական բարիքների բաշխման սոցիալիստական եղանակի դեպքում հասարակության յուրաքանչյուր անդամի ստացած ազգային եկամտի մեծությունը որոշվում է վերջինիս սպառման ֆոնդի և բնակչության մեծությամբ: Այլ հավասար պայմաններում որքան մեծ է կենսաբարիքների արտադրության ծավալը, այնքան շատ է բնակչության անձնական սպառման բարիքների զանգվածը, իսկ որքան բազմաթիվ է երկրի բնակչությունը, մյուս հանգամանքների հավասարության դեպքում, այնքան նվազ է հասարակության յուրաքանչյուր անդամին հասնող հասարակական արտադրանքի բաժինը:

Այսպիսով, երկրի բնակչության աճի հետ միասին, այլ հավասար պայմանների առկայությամբ, աճում է բնակչության սպառած նյութական բարիքների քանակը և նվազում սպառման ֆոնդի չափը՝ բնակչության մեկ շընչին հասնող բաժնի հաշվով: Սակայն, նույնիսկ սպառման մակարդակի անփոփոխ պահպանման դեպքում, հասարակության սպառած կենսական բա-

րիքների ֆոնդը չի աճում բնակչության թվի ավելացմանը համամասնորեն, որովհետև սպառման մեծության վրա իր կնիքն է դնում ոչ միայն բնակչության թիվը, այլև նրա տարիքային կազմը։

Բնակչության տարիքային կազմն ազդում է ինչպես սպառման ընդհանուր մեծության, այնպես և մակարդակի վրա։ Բնակչության տարիքային կազմի և նրա սպառման փոխկախվածությունը ցույց տալու համար հաշվարկենք Հայաստանի բնակչության սպառման ընդհանուր գումարը 1965 թվականին, հիմք ընդունելով 1965, 1975, 1980 թթ. բնակչության տարիքային կառուցվածքը։

Հայաստանի բնակչության տարիքային կառուցվածքը հետևյալ պատկերն ունի[1]։

| Տարիքային խմբեր (տարի) | Յուրաքանչյուր տարիքային խմբի տեսակարար կշիռն ամբողջ բնակչության մեջ (տոկոսներով) | | |
|---|---|---|---|
| | 1965 թ. | 1975 թ. | 1980 թ. |
| 0—14 | 40,7 | 35,0 | 32,2 |
| 15—19 | 7,4 | 10,9 | 10,7 |
| 20—29 | 14,8 | 15,4 | 18,1 |
| 30—39 | 15,5 | 12,4 | 10,6 |
| 40—49 | 6,9 | 12,0 | 11,6 |
| 50—59 | 6,2 | 5,5 | 7,7 |
| 60—69 | 4,6 | 4,3 | 3,5 |
| 70 և ավելի | 3,9 | 4,5 | 4,6 |
| Ընդամենը | 100,0 | 100,0 | 100,0 |

Ինչպես տեսնում ենք, 1965, 1975 և 1980 թթ. բնակչության տարիքային կազմը խիստ տարբեր է։ Այդ պայմանավորված է 1965 թ. հետո ընկած ժամանակաշրջանում տեղի ունեցող ծնունդի մակարդակի իջեցմամբ։

Բերված տվյալների և սպառման տարիքային գործակիցների օգնությամբ կարելի է հաշվարկել 1965 թ. բնակչության փաստական սպառումը, իսկ այնուհետև՝ նույն թվով բնակչության սպառումը 1970, 1975 և 1980 թթ. բնակչության տարիքային կազմով հանդերձ։ Հաշվարկումներից ստացվում է, որ եթե 1965 թ. բնակչությունն ունենար 1975 թ. կազմը, ապա նա կսպառեր 1965 թ. փաստական սպառման 101,2 տոկոսը՝ մեկ շնչի սպառման նույն մակարդակի առկայությամբ։ Ունենալով 1980 թ. կազմը, 1965 թ. բնակչությունը կսպառեր 1965 թ. փաստական սպառվածի 102,5 տոկոսը։

Վերը մատնանշվածը վկայում է, որ սպառման ընդհանուր մեծությունը, այլ հավասար պայմանների առկայությամբ, պայմանավորված է և բնակչության տարիքային կազմով և նրանով, որ մարդն իր կյանքի տարբեր ժամանակաշրջաններում սպառում է ոչ միաչափ։ Հունգարական տվյալների համաձայն, եթե մեկ մարդու միջին տարեկան սպառումն ընդունենք մեկ միավոր, ապա 0—14 տարեկաններինը կկազմի միջին մարդու սպառման 0,64, 14—19 տարեկաններինը՝ 0,99, 20—29 տարեկաններինը՝ 1,19, 25—29 տարեկաննե-

[1] Աղյուսակը կազմված է ՀՍՍՀ վիճակագրական վարչության և պետպլանի տնտեսագիտության և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի տվյալների հիման վրա։



րինը՝ 1,38, 30—39 տարեկաններինը՝ 1,29, 40—44 տարեկաններինը՝ 1,17, 45—59 տարեկաններինը՝ 1,09, 60—64 տարեկաններինը՝ 0,88, 65—69 տարեկաններինը՝ 0,88 և, վերջապես 70 և ավելի բարձր տարիք ունեցողներինը՝ 0,79 միավոր[1]։

Սովետական տնտեսագետ Վ. Վ. Շվիրկովի տվյալներով մարդու սպառման արժեքը կյանքի ընթացքում փոփոխվում է հետևյալ կերպ[2]։

| Տարիքը (տարիներով) | Սպառման արժեքի սանդղակ | |
|---|---|---|
| | տղամարդկանց | կանանց |
| Մինչև 1 | 0,142 | 0,142 |
| 1— 3 | 0,249 | 0,249 |
| 3— 7 | 0,406 | 0,409 |
| 7—11 | 0,509 | 0,513 |
| 11—15 | 0,714 | 0,744 |
| 15—18 | 0,891 | 0,888 |
| Մեքենայական արտադրության մեջ զբաղված չափահաս բանվորը | 1,000 | 0,994 |

Բերված գործակիցներից բխում է, որ եթե բնակչության մեջ մեծ տեսակարար կշիռ ունի 0—14 տարեկանների տարիքային խումբը, ապա այլ հավասար պայմաններում բնակչության ընդհանուր սպառումը պակաս կլինի։ Ազգային եկամտի ընդհանուր սպառումը աճում է բնակչության մեջ բարձր տարիքի անձանց տեսակարար կշռի ավելացման համեմատ։ Հայաստանում բնակչության կազմը այդպիսին կլինի 1980 թ.։ Հենց այդ պատճառով 1965 թ. սպառումը, որ հաշվարկված է 1980 թ. բնակչության հասակային կազմը նկատի ունենալով), որում մեծ կլինի բարձր տարիքի անձանց տեսակարար կշիռը, փաստականից ավելի ստացվեց։

Բնակչության տարիքային կազմն իր կնիքն է դնում նաև սպառման մակարդակի վրա։ Եթե 1965 թ. բնակչության տարիքային կազմը նույնը լիներ ինչ 1980 թ., ապա 1965 թ. միջին շնչի սպառման մակարդակը 3,4 տոկոսով ցածր կլիներ փաստականից։ Այստեղից հետևում է, որ այլ հավասար պայմանների առկայությամբ մեկ շնչի միջին սպառման մակարդակն ուղղակի կախման մեջ է երիտասարդ տարիքային խմբերի տեսակարար կշռից։ Որքան մեծ է այս խմբերի տեսակարար կշիռը բնակչության կազմում, այնքան ավելի բարձր է մեկ շնչին ընկնող սպառման մակարդակը։

Ելնելով դրանից, կարելի է ասել, որ իր կազմում կրտսեր տարիքի անձանց գերակշռությունը նպաստավոր է երկրի համար, այն առումով, որ տվյալ դեպքում երկրում բարձրանում է մեկ շնչին հասնող սպառման մակարդակը։

Ժողովրդական սպառման վրա ներազդում են նաև բնակչության աճի տեմպերը։ Այդ տեսնելու համար համեմատենք բնակչության աճի տարբեր տեմպեր ունեցող ռեգիոնների կենսամակարդակը։ Ներկայումս տեղի է ունենում տարբեր ռեգիոնների բնակչության աճի տեմպերի համահարթում։ Այդ պատճառով ժողովրդական սպառման վրա բնակչության աճի տեմպերի ազ-

[1] Տվյալները վերցված են հունգարական «Դեմոգրաֆիա» ամսագրից, 1966, № 3, էջ 305։

[2] В. В. Швырков, Закономерности потребления промышленных и продовольственных товаров, 1965, стр. 133:

դեցությունը բացահայտելու համար համեմատենք 1966 թ. կենսամակարդակի ցուցանիշները:

1966 թ. միութենական հանրապետություններն ըստ բնակչության աճի տեմպերի ստորաբաժանվում էին երեք խմբի: Առաջինի մեջ, որի համար բնորոշ է բնակչության աճի տեմպերի ցածր մակարդակը, մտնում էին ՌՍՖՍՀ-ն, Ուկրաինան, Բելոռուսիան, Լիտվան, Լատվիան, Էստոնիան: Երկրորդի մեջ, որի համար բնորոշ են բնակչության աճի միջին տեմպերը, Վրաստանը, Մոլդավիան և Հայաստանը: Երրորդի մեջ, որն աչքի է ընկնում բնակչության աճի տեմպերի բարձր մակարդակով, Ղազախստանը, Ուզբեկստանը, Ադրբեջանը, Տաջիկստանը, Թուրքմենիան և Կիրգիզիան:

Նշված տվյալները ցույց են տալիս, որ ժողովրդի բարեկեցության մակարդակը համեմատաբար բարձր է բնակչության աճի ցածր տեմպեր ունեցող հանրապետություններում: Բնակչության աճի տեմպերի բարձրացմամբ կենսամակարդակը զգալիորեն իջնում է: Բայց, մենք ամենևին էլ չենք պնդում, թե բնակչության աճի տեմպերն այս կամ այն կենսամակարդակը որոշող միակ պատճառն է:

Ժողովրդական բարեկեցության մակարդակի վրա ազդում են բազմաթիվ գործոններ, այդ թվում տվյալ հանրապետության տնտեսական զարգացման ելակետային մակարդակը, բնական հարստությունների մեծությունը, ժողովրդական տնտեսության մեջ ներդրված և ներդրվող կապիտալ ներդրումների ծավալը, հասարակական արտադրության արդյունավետության աստիճանը, տնտեսական զարգացման պրոֆիլն ու ներկա մակարդակը և այլն: Բնակչության աճի տեմպերը նույնպես պետք է դասել կենսամակարդակի կարևորագույն գործոնների թվին:

Բնակչության աճի տեմպերով է նախ պայմանավորված դեմոգրաֆիկ ներդրումների և ազգային եկամտի կուտակման ու սպառման ֆոնդերի մեծությունը:

Դեմոգրաֆիկ ներդրումներն այն միջոցներն են, որոնք առանձնացվում են հասարակության կողմից իր նոր անդամների պահանջմունքները բավարարելու համար՝ երկրում գոյություն ունեցող կենսամակարդակը չգերազանցող չափերով: Դրանց թվին են դասվում այն միջոցները, որոնք տրամադրվում են՝ հասարակության նոր անդամներ ծնած ընտանիքների նախկին կենսամակարդակի պահպանման համար՝ նոր անդամներին մանկական հիմնարկություններում պահելու, ուսուցման և մասնագիտացման, բժշկական սպասարկման (քանի դեռ նրանք արտադրողներ չեն դարձել), նրանց համար նոր աշխատատեղի ստեղծման վրա կատարվող ծախսերը և, վերջապես, երկրի բնակչության աճող մասի համար սպառման արտադրության մեջ ներդրվող միջոցները: Մեր կարծիքով, իր նոր անդամների կենսական կարիքների ապահովման նպատակով հասարակության կողմից ներդրվող միջոցների ամբողջ գումարը հարկավոր է անվանել դեմոգրաֆիկ ծախսեր և վերջիններիս մեջ առանձնացնել դեմոգրաֆիկ ներդրումները: Դրանց թվին պետք է դասել դեմոգրաֆիկ ծախսերի սոսկ այն մասը, որն իբրև կապիտալ ներդրում անցնում է սպառման միջոցների արտադրությանը և երկրի բնակչության աճած մասի համար նոր աշխատատեղերի ստեղծմանը: Այսպիսի սահմանազծման առկայությամբ ավելի է նկատելի, որ դեմոգրաֆիկ ներդրումների աղբյուրը ազգային եկամտի կուտակման ֆոնդն է: Դեմոգրաֆիկ ծախսերի մյուս մասի աղբյուրը, որը



բնակչությանն է անցնում ընտանիքներին տրվող ամենամսյա և միանվագ նպաստների և բնակչությանն սպասարկող հիմնարկություններում նյութական ծախսերի ձևով, երկրի ազգային եկամտի սպառման ֆոնդն է:

Դեմոգրաֆիկ ծախսերի գումարը պատկերացնելու համար նշենք, որ մանկամսուրներում մեկ երեխայի խնամքի համար ՍՍՀՄ-ում հասարակությունը տարեկան ծախսում է 300—400, մանկապարտեզում՝ 400, դպրոցներում՝ 100 ռուբլի (երկարօրյա դպրոցներում՝ 160 ռուբլի): Բարձրագույն ուսումնական հաստատություններում մեկ ուսանողի ուսման ծախսը տարեկան կազմում է 850 ռ., իսկ նոր աշխատատեղի ստեղծումը՝ 5,8 հազար ռուբլի: Դրանք դեմոգրաֆիկ ծախսերի սոսկ մի մասն են, որում չեն մտնում հասարակության նոր անդամների բուժսպասարկման վրա ծախսվող միջոցները:

Բնակչության դանդաղ աճի դեպքում դեմոգրաֆիկ ներդրումները աննշան են և չեն տարբերվում տնտեսական ներդրումներից, քանի որ սերունդները, միմյանց փոխարինելով, բավարարվում են սպառման առարկաների արտադրության արդեն գոյություն ունեցող ծավալով: Իսկ բնակչության արագ աճի դեպքում, սպառման առարկաների արտադրության ճյուղերում գոյություն ունեցող արտադրական կարողություններն անբավարար են աճող բնակչության կարիքները հոգալու համար: Այդ դեպքում շեշտակիորեն ավելանում են դեմոգրաֆիկ ծախսերը, դրանց թվում՝ ներդրումները: Դեմոգրաֆիկ ծախսերի շեշտակի ավելացմամբ առաջանում է բնակչության ընդհանուր սպառման աճ և նվազեցվում կուտակման հնարավորությունները: Այդ կարելի է ցույց տալ բնակչության աճի տարբեր տեմպեր ունեցող ռեգիոնների տնտեսական զարգացման որոշ ցուցանիշների վերլուծության օգնությամբ:

Վերլուծենք վերը բերված երեք խումբ հանրապետությունների ազգային եկամտի և բնակչության աճի տեմպերի փոխհարաբերակցությունը:

Առաջին խմբի հանրապետություններում 1959—1967 թթ. ազգային եկամտի աճի միջին տարեկան տեմպերը կազմել են 11,5, իսկ բնակչության աճը՝ 1,13 տոկոս: Այսինքն՝ բնակչության մեկ տոկոս աճին բաժին է ընկել ազգային եկամտի 8,5 տոկոս աճ: Հաշվարկված է, որ բնակչության մեկ տոկոսով ավելացման դեպքում միայն աճած մասի կենսապահանջները բավարարելու համար, ժողովրդական բարեկեցության գոյություն ունեցող մակարդակը չգերազանցող սահմաններում, պետք է տրամադրել երկրի ազգային եկամտի 3—5 տոկոսը[1]: Հետևաբար, հանրապետությունների այս խմբում, ուր ազգային եկամտի միայն 5,6 տոկոսն է (1,13×5) ծառայել դեմոգրաֆիկ ներդրումների. հետևաբար ազգային եկամտի աճը բավական է եղել թե բնակչության աճող մասի կարիքները բավարարելու, թե ժողովրդական բարեկեցության մակարդակը բարձրացնելու համար:

Բնակչության աճի միջին տեմպ ունեցող հանրապետություններում ազգային եկամտի տարեկան աճը կազմել է 10,9, իսկ բնակչությանը՝ 2,47 տոկոս: Բնակչության աճի մեկ տոկոսին բաժին է ընկել ազգային եկամտի աճի 4,4 տոկոսը: Հետևաբար այդ հանրապետություններում ազգային եկամտի աճի ավելացումը բավական է եղել միայն դեմոգրաֆիկ ծախսերի համար, որոնք անհրաժեշտ են բնակչության աճի ամենամյա 2,4 տոկոսի տեմպերի դեպքում (2.47×5):

Հանրապետությունների երկրորդ խմբում, առանց ընդհանուր միութենա-

[1] «Вопросы философии», 1957, № 8, էջ 91:

կան միջոցներ ներդրավելու, անհնար կլիներ կենսամակարդակի բարձրա-
ցումը 1959—67 թվականներին։ Մոլդավական ՍՍՀ-ում, Վրացական ՍՍՀ-ում
և Հայկական ՍՍՀ-ում կենսամակարդակի անշեղ աճը վկայում է ամբողջ երկրի
ազգային եկամտից այդ հանրապետությունների համար լրացուցիչ միջոցներ
ներդրավելու հանգամանքը։

Այլ կերպ է դասավորվում գրությունը բնակչության արագ աճ ունեցող
հանրապետություններում։ Երրորդ խմբի հանրապետությունների բնակչու-
թյունը 1959—67 թթ. ավելացել է 4,02, իսկ ազգային եկամուտը՝ 9 տոկոսով,
բնակչության աճի մեկ տոկոսին բաժին է ընկել ազգային եկամտի աճի 2,2
տոկոսը։ Հետևաբար, այդ հանրապետությունների ազգային եկամտի աճն
այդ տարիներին բավական չի եղել նույնիսկ բնակչության աճած մասի պա-
հանջմունքները բավարարելու համար։ Թեև այստեղ ազգային եկամտի աճի
տեմպերը ամենևին էլ ցածր չեն եղել։ Այնուամենայնիվ, բնակչության արագ
աճի դեպքում ազգային եկամտի ամեն մի ավելացում պետք է հարաբերել
աճող բնակչության պահանջմունքներին։ Համեմատությունից կարելի է եզ-
րակացնել, որ միութենական հանրապետությունների տվյալ խմբում 1959—
67 թթ. ամբողջ բնակչության կենսամակարդակը այլ հավասար պայմանների
առկայությամբ պետք է իջներ։ Սակայն, նկատի ունենալով, որ սոցիալիս-
տական հասարակության վերջնական նպատակը բնակչության նյութական
ու հոգևոր հարաճուն պահանջմունքների բավարարումն է, հասարակությու-
նը չի կարող թույլ տալ բնակչության կենսամակարդակի նվազում։ Նա սահմա-
ված կլինի կուտակման ֆոնդի հաշվին մեծացնել ազգային եկամտի սպառ-
ման ֆոնդը։ Տվյալ դեպքում, սպառման ֆոնդի նվազագույն մեծությունը
պետք է հավասար լինի անցյալ տարվա սպառման ֆոնդի և դեմոգրաֆիկ
ծախքերի գումարին, այսինքն՝ միութենական հանրապետությունների երրորդ
խմբում սպառման ֆոնդը ամեն տարի պետք է աճի 20,1 տոկոսով (4,02×5)։
Եվ, եթե անցյալ տարիներին ազգային եկամուտը բաշխվում էր 25 : 75 հա-
մամասնությամբ, ապա 1959—1967 թթ. յուրաքանչյուր տարի այն հարկա-
վոր է բաշխել 5 : 95 համամասնությամբ։ Հետևաբար ազգային եկամտի մոտ
95 տոկոսը պետք է հատկացվի բնակչության անձնական սպառմանը։ Այդ
միջոցով հասարակությունը կարող է թույլ չտալ բնակչության կենսամակար-
դակի իջեցում։

Բայց բնակչության վերարտադրությունն անընդհատ պրոցես է։ Հիշյալ
հանրապետությունների բնակչությունը 1968 թ. աճեց մոտավորապես նույն
տեմպերով։ Հետևաբար, 1968 թ. նույնպես, դեմոգրաֆիկ ծախքերը ծածկելու
համար պահանջվեց ազգային եկամտի 20 տոկոս աճ։ Հաշվարկված է, որ
հասարակական արտադրության արդյունավետության այժմյան մակարդակի
պայմաններում, ազգային եկամտի մեկ տոկոս աճի համար անհրաժեշտ է
հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդնել նախորդ տար-
վա ազգային եկամտի 2,4 տոկոսը[1]։ Նշանակում է, 1968 թ. երրորդ խմբի
հանրապետությունների դեմոգրաֆիկ ծախսերն ապահովելու համար, հասա-
րակական արտադրության անփոփոխ արդյունավետության պայմաններում,
1967 թ. ազգային եկամտի 48,2 տոկոսը (20,1×2,4) պետք է ներդրվեր տվյալ
հանրապետությունների ժողովրդական տնտեսության մեջ։ Սակայն, ինչպես

[1] Совершенствование планирования и управления народным хозяйством. М.,
1967 էջ 105։



մենք համոզվեցինք, այլ հավասար պայմանների առկայությամբ, 1967 թ.
այդքան միջոցներ չէր կարող հատկացվել կուտակմանը, որովհետև ազգային
եկամտի մոտ 95 տոկոսը պետք է ծառայեր սպառմանը։ 1967 թ. նշված հան-
րապետությունները բնակչության կենսամակարդակի բարձրացման և 1968 թ.
դեմոգրաֆիկ ներդրումների ապահովման համար կարող էին հատկացնել ազ-
գային եկամտի միայն 5 տոկոսը։ Հասկանալի է, որ այդքանով հնարավոր չէ
լուծել այդ երկու խնդիրները։

Հասարակությունը կանգնած է երկընտրանքի առաջ. կա՛մ անփոփոխ
պահպանել բնակչության կենսամակարդակը այս թվականին և համաձայնել
նրա շեշտակի իջեցմանը գալիք թվականին, կա՛մ, հակառակը։ Ընդ որում,
այդ երկընտրանքից ոչ մեկն ընդունելի չէ։ Այդ պրոբլեմը լուծելու համար
հասարակությունը պետք է ամբողջ երկրի ազգային եկամուտը վերաբաշխի
հօգուտ արագ աճ ունեցող հանրապետությունների, կամ կրճատի այդ հանրա-
պետություններից գանձվող հավելյալ արդյունքի մի մասը։ Հասարակությունը
պետք է ոչ միայն ծածկի բնակչության կենսամակարդակը բարձրացնելու հա-
մար չբավարարող միջոցները, այլև իրականացնի անհրաժեշտ կապիտալ ներ-
դրումներն ապագա դեմոգրաֆիկ ծախքերն ապահովելու համար։

ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների համա-
ձայն նշված ժամանակաշրջանում երրորդ խմբին դասված հանրապետություն-
ներում կենսամակարդակը բարձրացել և շարունակում է բարձրանալ։ Այդ
վկայում է, որ ինչ որ եղանակով միջոցները վերաբաշխվել են, կամ բարձրա-
ցել է հասարակական արտադրության արդյունավետությունը և չեզոքացվել
են բնակչության արագ աճի բացասական հետևանքները։

Ժողովրդական սպառման և բարեկեցության մակարդակի վրա բնակչու-
թյան արագ աճի բացասական ազդեցությունը վերոհիշյալով չի սպառվում։
Այն զուգորդվում է տնտեսապես ակտիվ բնակչության տեսակարար կշռի նը-
վազմամբ։ Տնտեսապես ակտիվ բնակչության թվին են դասվում երկրի աշ-
խատունակ բնակչությունը բանվորական հասակում (16—54՝ կանանց, 16—
59՝ տղամարդկանց համար)՝ առանց հասարակական արտադրության մեջ չըզ-
բաղված անձանց և զինծառայողների ու հասարակական արտադրության մեջ
զբաղված, ոչ բանվորական հասակի բնակչությունը։

Տնտեսապես ակտիվ անձանց թիվն աճում է բանվորական հասակի
բնակչության ավելացումով և նվազում է ոչ բանվորական հասակի մարդկանց
թվի աճով։ Իսկ արագ աճի դեպքում բնակչության կազմում մեծանում է
փոքրահասակների և իրենց երեխաների խնամքով զբաղված ու հասարակա-
կան արտադրության մեջ չներգրավված կանանց տեսակարար կշիռը։

Տնտեսապես ակտիվ բնակչության տեսակարար կշռի մեծացումը ժողո-
վրդական սպառման և բարեկեցության մակարդակի վրա ազդում է, նախ՝
բնտանիքի կենսամակարդակի իջեցման միջոցով։

Հայտնի է, որ սոցիալիզմի օրոք բնակչության պահանջմունքների բավա-
րարման հիմնական աղբյուրը աշխատավարձն է։ Յուրաքանչյուր աշխատողի
աշխատավարձի մեծությունը որոշելիս հաշվի չի առնվում և չպետք է առնվի
նրա խնամքի տակ գտնվող շնչերի թիվը։ Նյութական բարիքների բաշխման
նման եղանակը տարբերություն է առաջացնում անհավասար թվով անդամներ

ունեցող ընտանիքների կենսամակարդակներում[1]։ Նույն մեծության աշխատավարձի դեպքում որքան ավելի է ընտանիքի չաշխատող անդամների թիվը, այնքան քիչ է ընտանիքի յուրաքանչյուր անդամին բաժին ընկնող եկամուտը, և հետևաբար, ցածր է նաև այդ ընտանիքի կենսամակարդակը։ Բնակչության բարեկեցության աստիճանը կախված է յուրաքանչյուր ընտանիքի պայմաններից ու կենսամակարդակից։

Շատ անդամներ ունեցող ընտանիքները բնորոշ են բնակչության արագ աճ ունեցող շրջաններին։ Հենց այդ շրջաններում հանձին բնակչության փոքրահասակ խմբերի և հասարակական արտադրությունում չներգրավված կանանց՝ մեծ է տնտեսապես ոչ ակտիվ բնակչության տեսակարար կշիռը։ Ուստի, ծննդի բարձր մակարդակ և բնակչության արագ աճ ունեցող շրջաններում էլ հենց մեծ է բարեկեցության համեմատաբար ցածր մակարդակ ունեցող ընտանիքների թիվը։ Այդ հանգամանքը ևս մի գործոն է, որը նպաստում է միութենական հանրապետությունների կենսամակարդակի տարբերությունների խորացմանը։ Ամբողջ երկրի մասշտաբով բնակչության կազմում տնտեսապես ոչ ակտիվ անձանց տեսակարար կշռի մեծացումը նշանակում է ուտողների թվի ավելացում և արտադրողների պակասեցում, ինչը, իհարկե, անբարենպաստ է երկրի էկոնոմիկայի համար։

Այսպիսով, բնակչության արագ աճը՝ արտադրաուժերի նվազ զարգացման դեպքում, բացասաբար է ներգործում ժողովրդական բարեկեցության աստիճանի վրա և, դժվարացնելով բնակչության կենսամակարդակի բարձրացումը, խոչընդոտում է սոցիալիստական հասարակության հիմնական նպատակի հաջող իրագործմանը։ Ուստի, բնակչության արագ աճը թելադրում է առավել հուժկու թափով զարգացնել արտադրաուժերը և արագացնել տեխնիկական պրոգրեսը։ Ի դեպ, այս եզրակացությունը չի կարող վերջնական լինել, քանի որ մենք բնակչությունը քննարկեցինք սոսկ որպես նյութական բարիքներ սպառողի։ Մինչդեռ բնակչությունը նաև նյութական բարիքներ արտադրող է։ Ուստի, նախքան բնակչության աճի այս կամ այն տեմպի բարենպաստության վերաբերյալ դատողություն անելը, անհրաժեշտ է որոշել, թե ինչպիսի բնակչությունն է նյութական բարիքներ արտադրողը, որը համապատասխանում է արտադրաուժերի զարգացման տվյալ մակարդակին։

Գոյություն ունի հարցի մի երրորդ կողմ ևս։

Բնակչությունը իր իսկ վերարտադրության հիմքն է։ Այդ պատճառով մենք պետք է պարզենք, թե բնակչության աճի ինչպիսի տեմպերի առկայությամբ կարող ենք հասնել նրա վերարտադրության առավել լավ տիպի սահմանմանը։

Այսպիսով, այնպիսի մի արդիական պրոբլեմ լուծելու համար, ինչպիսին բնակչության աճի ամենահամապատասխան տեմպի սահմանների որոշումն է, անհրաժեշտ է բնակչությանը դիտել որպես նյութական բարիքներ սպառողի, այնուհետև, որպես նյութական բարիքներ արտադրողի և, վերջապես, որպես բուն բնակչության վերարտադրության հիմքի։

Մենք անդրադարձանք այդ մեծ և բարդ պրոբլեմի միայն մեկ կողմին։

[1] Անհավասար թվով անդամներ ունեցող ընտանիքների կենսամակարդակում եղած տարբերությունները մի որոշ չափով հարթվում են սպառման հասարակական ֆոնդերի շնորհիվ, որոնց մի մասը բաշխվում է անկախ յուրաքանչյուր աշխատողի աշխատանքային ավանդից։

# ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆԸ՝ ՊԱՏՇԱՃ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Խ. Կ. ՏԵՐ-ՄԽԻԹԱՐՅԱՆ

ՀՍՍՀ պետպլանի մեքենաշինության բաժնի պետ

Սովետական Հայաստանի մեքենաշինության մասին այսօր կարելի է խոսել մեծ գոհունակությամբ։ Այն ստեղծվել ու աճել է սովետական իշխանության տարիներին և այժմ հանրապետության արդյունաբերության մեջ ունի իր առաջատար տեղը։

Մեր հանրապետությունում մեքենաշինությունն առավել արագ սկսեց զարգանալ հետպատերազմյան ժամանակաշրջանում, երբ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կողքին շարք մտան Երևանի Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրո, լուսատեխնիկական սարքերի, էլեկտրաճշգրիտ սարքերի, ժամացույցի, կաբելի, Հոկտեմբերյանի մեքենաշինական և այլ գործարանները։ Այս ձեռնարկությունները հանրապետության մեքենաշինության առաջնեկներն են և մեծ դեր խաղացին մեքենաշինության զարգացման գործում։ Ընդհանուր առմամբ ՀՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թ., 1958 թ. համեմատությամբ, աճել է 2, իսկ մեքենաշինությունը՝ 3,4 անգամ։

Մեքենաշինությունն սկսեց մուտք գործել հանրապետության շրջաններն ու քաղաքները։ Երևանից, Լենինականից, Կիրովականից բացի այդպիսի օջախներ ստեղծվեցին Կամոյում, Գորիսում, Ստեփանավանում, Արթիկում, Մարալիկում, Սևանում, Չարենցավանում, Աբովյանում, Մարտունիում և այլ վայրերում։ 1972 թ. ՀՍՍՀ արդյունաբերական արտադրանքի 26 տոկոսը մեքենաշինության բաժինն էր։

Սովետական Հայաստանի մեքենաշինությունը բազմաճյուղ է։ Նրա մեջ մտնում են 80 գործարան, 12 գիտահետազոտական ինստիտուտ կամ նրանց մասնաճյուղեր, կոնստրուկտորական և տեխնոլոգիական բյուրոներ, որոնք ենթակա են միութենական 13 մինիստրությունների։ Դրանք են՝ էլեկտրատեխնիկական, սարքաշինական, հաստոցաշինական և գործիքաշինական, քիմիական մեքենաշինության, ավտոմոբիլային, ռադիոէլեկտրոնային արդյունաբերության և այլ ճյուղեր։ Մեր հանրապետության մեքենաշինության բնորոշ հատկանիշն այն է, որ զարգանում է մասնագիտացված արտադրանքի թողարկման սկզբունքով, արտադրանք, որը պայմանավորված է համամիութենական աշխատանքի բաժանմամբ։ Այդ հիմնական սկզբունքը մնում է մեքենաշինության հետագա զարգացման հիմքում։ Ընդլայնվում են նաև միջճյուղավորային ար-

տադրությունների ձեռնարկությունները։ Այդպիսի արդյունաբերական ձեռնարկություններ են՝ Չարենցավանի Թուջաձուլական, Երևանի փորձնական տեխնոլոգիական սարքերի և հաստոցանորմալ, Էջմիածնի պլաստմասսաների գործարանները։

Որո՞նք են Հայաստանի մեքենաշինության բուռն զարգացման նախադրյալները։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում մեր հանրապետության ամենախոշոր պրոբլեմներից մեկը չզբաղված աշխատունակ ձեռքերը հանրային աշխատանքում ընդգրկելն էր. անհրաժեշտ էր հատկապես փոքր քաղաքներում և շրջաններում միջնակարգ դպրոցն ավարտողներին ապահովել աշխատանքով։

Այս առումով Հայաստանի արդյունաբերության մեջ նախընտրությունը տրվում է այն բնագավառներին, որոնք ունեն մեծ աշխատատարություն, ջրի և էլեկտրաէներգիայի համեմատաբար փոքր ծախս, պահանջում են աշխատանքի բարձր որակավորում։ Արդյունաբերության այդպիսի ճյուղերից է մեքենաշինությունը, որի արտադրանքը լայն սպառում ունի ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր բնագավառներում։

Մեքենաշինության զարգացման համար մեծ խթան հանդիսացավ արդյունաբերության կառավարման նոր սիստեմին անցնելը։ Այն ձեռնարկությունների ուշադրությունը բևեռեց արտադրական կարողությունների և արդյունաբերական արտադրաֆոնդերի առավել օգտագործման, նյութերի խնայողության վրա։ Կառավարման նոր սիստեմի շնորհիվ առավել զարգացավ արդյունաբերությունը, խոշորացան տնտհաշվարկային միավորները։ Այսպես, ստեղծվեցին Հայէլեկտրալույս, Հայէլեկտրաշարժիչ, արտադրական, իսկ հետագայում նաև Հայէլեկտրամեքենաշինական միավորումներ։

Ձեռնարկությունների միավորմամբ հեշտացավ արտադրության կառավարումը, լավ օգտագործվեցին արդյունաբերական կարողությունները։ Հանրապետության մեքենաշինության արտադրանքն այժմ լայնորեն սպառվում է արտասահմանյան երկրներում։

Ինչ խոսք, դա խոշոր հաջողություն է Հայաստանի մեքենաշինության համար։ Սակայն չի կարելի բավարար համարել այն, որ ձեռնարկությունների ճնշող մասը արտահանում է իր արտադրանքի մինչև 4 տոկոսը, բացառությամբ ժամացույցի գործարանի (27 տոկոս) և Չարենցավանի ներտաշ հաստոցների գործարանի (10 տոկոս)։

Արտադրանքի մեծ մասշտաբներով արտահանումը քաղաքական և տնտեսական հարց է, որի վրա պետք է լուրջ ուշադրություն դարձնել։ Մեքենաշինության մեջ արտադրանքի ծավալով մեծ տեսակարար կշիռ ունի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, որը թողարկում է ՍՍՀՄ-ում արտադրվող էլեկտրատեխնիկական հիմնական արտադրատեսակների ավելի քան 70 տոկոսը և իր արտադրանքի ծավալով Միության հանրապետություններում երրորդ տեղում է, սարքաշինությունը՝ չորրորդ, իսկ հաստոցաշինությունը՝ հինգերորդ։ Հայաստանում թողարկվում են մինչև 100 կվտ կարողությամբ գեներատորներ՝ Միությունում արտադրվածի 35 տոկոսը, 100 կվտ-ից բարձր կարողության գեներատորների 20, շարժական ենթակայանների 23, լուսատեխնիկական սարքերի 11 տոկոսը և այլն։

Հայաստանում արտադրվող մետաղահատ հաստոցների մոտ 40 տոկոսը բարձր ճշտության են։ Այս ցուցանիշը Միության հանրապետությունների մեջ



ամենաբարձրն է։ Միջազգային ստանդարտների մակարդակով են արտադրվում ուժային տրանսֆորմատորները, էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, մի շարք մետաղահատ հաստոցներ և այլն։

Մեքենաշինության արտադրանքը բազմիցս ցուցադրվել է Սովետական Միության և միջազգային ցուցահանդեսներում ու արժանացել մրցանակների։ Միջազգային և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսներում ոսկե մեդալներով են պարգևատրվել ճշգրիտ խառատային հաստոցներն ու էլեկտրաէռոզային հաստոցները, ծրագրային կարգավորմամբ նոր սերիայի գեներատորները, էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ կարգավորող սարքերը և այլն։

ՍՄԿԿ XXIV համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի դիրեկտիվներում ասված է, որ մեքենաշինության գլխավոր խնդիրն է՝ բոլոր ճյուղերն ապահովել բարձր արդյունավետ մեքենաներով ու սարքերով, բարձրացնել սարքավորումների արդյունավետությունը ագրեգատների միավորային կարողությունը մեծացնելու, դրանց որակը և հուսալիությունը բարելավելու միջոցով։ Որպեսզի մեքենաշինությունը կատարի իր առջև դրված խնդիրները, անհրաժեշտ է արագացնել նաև բուն մեքենաշինության տեխնիկական վերազինումը։

Հետհամագումարյան շրջանում մեր հանրապետությունում որոշակի գործ է կատարված մեքենաշինության առավել զարգացման համար։ 1971—1972 թթ. «Հայէլեկտրաշարժիչ» միավորման ձեռնարկություններն իրացրել են նոր 4A սերիայի էլեկտրաշարժիչների արտադրությունը։ Սրանք իրենց տեխնիկական տվյալներով, նախորդ տիպերի համեմատությամբ, ավելի բարձր ցուցանիշ ունեն և միավոր կարողության նոր սերիայում ավելի քիչ մետաղ է ծախսվում։ «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը յուրացրել է 40 վտ կարողությամբ լյումինեսցենտային լամպերի արտադրությունը, որի լուսավորությունը բարձր է։ Յուրացված է նաև կվարցային «Արևիկ» լամպերի արտադրությունը. շուտով կարտադրվեն ստարտյորներ ու լյումինեսցենտային նոր տիպի լամպեր։

Երևանի կաբելի գործարանը յուրացրել է պենոպլաստիկային մեկուսիչով ուժային կաբելի արտադրությունը՝ ռետինե շլանգային կեղևով։ Իսկ մոտակա 2—3 տարիներին ձեռնարկությունը կյուրացնի նաիրիտե կեղևով էլեկտրահաղորդալարերի արտադրությունը և սարքաշինության համար կտա այլ հաղորդալարեր։

Հայէլեկտրագործարանը կարտադրի չպայթող ասինքրոն էլեկտրաշարժիչներ։ Դրանք АДОК տիպի շարժիչներն են։ Կարտադրվեն նաև ЕС սերիայի մինչև 100 կվտ կարողությամբ գեներատորներ. կթողարկվի նոր տիպի «Արագած—73» սառնարան։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը յուրացրել է նոր գամմայի խառատային հաստոցների նմուշները և դրանց արտադրության համար այժմ նախագծվում է ձեռնարկության վերակառուցումը։ Ֆրեզերային հաստոցների գործարանը 1971—1972 թթ. անցավ նոր, 675П տիպի ֆրեզերային հաստոցների արտադրությանը, որոնց ճշգրտությունն ավելի բարձր է, քան նախկինում արտադրվածներինը։

Լենինականի շինարարական մեխանիզմների և մեքենաների գործարանը յուրացնում է քարի մշակման նոր հաստոցների արտադրությունը, որոնք ունեն ավելի մեծ արտադրողականություն։ Չարենցավանի հաստոցաշինական գոր-

ծարանը թողարկում է ծրագրային կարգավորմամբ ֆրեզերային հաստոցներ։ Նոր տիպի սարքեր են արտադրում Կիրովականի «Ավտոմատիկա» և այլ գործարաններ։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսվում է 1971—1975 թթ. մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության աճ Միության մասշտաբով 1,7, այդ թվում՝ լայն սպառման ապրանքներինը՝ 2,2 անգամ։ Այս ցուցանիշները Հայաստանի արդյունաբերության մեջ ընդունված են համապատասխանաբար՝ 1,92 և 2,5 անգամ։ Ինչպես տեսնում ենք, հանրապետության արդյունաբերության զարգացման ցուցանիշներն ավելի բարձր են, քան միջին միութենականը։ Պետք է նշել, որ անցյալում նույնպես Հայաստանի մեքենաշինության զարգացման տեմպերն ավելի բարձր են եղել։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները, հանրապետության մեքենաշինարարները կատարեցին հնգամյակի առաջին երկու տարվա առաջադրանքները, պլանից ավելի արտադրեցին միլիոնավոր ռուբլու արտադրանք։ Կան բոլոր նախադրյալները իններորդ հնգամյակի երրորդ տարվա պլանները գերակատարելու համար։

Անցած տարվա պլանները հաջողությամբ կատարեցին «Հայէլեկտրալույս» միավորումը, Երևանի կաբելի, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, «Ավտոմատիկա» և ավտոգենային մեքենաշինության, Չարենցավանի գործիքաշինական և հաստոցաշինական գործարանները, Երևանի ավտոգործարանը և այլն։ Ցավոք, պետք է նշել, որ այլ առաջավոր ձեռնարկությունների կողքին կան նաև այնպիսիները՝ Լենինականի սառնարանային կոմպրեսորների և կոնդենսատորների, որոնք չկատարեցին 1972 թ. պետական առաջադրանքները։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, հաշվի առնելով ժողովրդի կենսամակարդակի անընդմեջ վերելքը, հատուկ ուշադրություն են նվիրում լայն սպառման ապրանքների արտադրության ավելացման վրա և այդ հարցի վերաբերյալ ընդունում հատուկ որոշումներ։ Այդ ասպարեզում նշանակալից աշխատանք են կատարել հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունները, որի շնորհիվ տարեցտարի ավելանում է լայն սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների թիվը։ Այսպես, 1965 թ. մեքենաշինական ձեռնարկությունների միայն 12 տոկոսն էր զբաղվում այդ ապրանքների արտադրությամբ, 1970 թ.՝ 43, իսկ 1972-ին՝ 65 տոկոսը։

Վերջին 2—3 տարիներին մեծ թվով ձեռնարկություններ սկսեցին արտադրել լայն սպառման ապրանքներ։ Հանրապետության մեքենաշինության ձեռնարկություններն արտադրում են սառնարաններ, լուսատեխնիկական, ոսկերչական իրեր, ժամացույցներ, առաստաղային հովացնողներ, պլաստմասսայից տնտեսական իրեր, էլեկտրական արդուկներ, դրիչներ, սրճաղացներ, տնտեսական զարդարանքներ և այլն։

Պլանով նախատեսվում է 1971—1975 թթ. ավելացնել լայն սպառման ապրանքների արտադրությունը։ Ինչպես նշվեց վերը, դրանք ընթացիկ հնգամյակում կավելանան 2,5 անգամ (միջին հաշվով տարեկան կաճի 20,1 տոկոսով), իսկ տեսակարար կշիռը 1975 թ. կհասնի 17,5 տոկոսի։ Հնգամյակի առաջին երկու տարիներին լայն սպառման ապրանքների արտադրության ոլորտը ընդգրկվել են մի շարք մասնաճյուղեր ու արտադրամասեր՝ հանրապետության զանազան շրջաններում և նույնիսկ գյուղերում։ Օրինակ, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի մասնաճյուղը (տարեկան 100



հազար հատ կարողությամբ) Քուչակ գյուղում սկսել է արտադրել մաղացներ։ Շարք են մտել Կամոյի կաբելի գործարանի մասնաճյուղը Սարուխան գյուղում՝ լուսատեխնիկական հաղորդալարերի արտադրությամբ, Չարենցավանի գործիքաշինական գործարանի մասնաճյուղը Սարուխան գյուղում, Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի մասնաճյուղը Եղեգնաձորում և այլն։

ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի 1971 թ. նոյեմբերի 24-ի որոշմամբ սահմանված են մեքենաշինության գործարանների 1972—1975 թթ. առաջադրանքները՝ լայն սպառման ապրանքների արտադրության վերաբերյալ։ Ձեռնարկությունների ղեկավարները պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն դրանք լրիվին կատարելու համար։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում հատուկ տեղ է հատկացված կապիտալ շինարարությանը, որի պլանների կատարումը բացառիկ կարևոր նշանակություն ունի։ Բայց, չնայած դրան, Հայաստանի մեքենաշինության ձեռնարկությունները 1971—1972 թթ. չկատարեցին կապիտալ շինարարության պլանը։ Ընդհանուր ծավալով 1971 թ. կատարված է 95, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 87,2 տոկոսով, իսկ հիմնական արտադրաֆոնդերի ավելացմանը՝ ընդամենը 86,7 տոկոսով։ Դրությունը բարվոք չէր նաև 1972 թվականին։ Տիտղոսացուցակի 62 ձեռնարկություններից 27-ում շինմոնտաժային աշխատանքների պլանը չի կատարված։ Այսպես, Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանում շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարված է 20, Չարենցավանի քիմիական հոսանքի աղբյուրի գիտահետազոտական ինստիտուտի փորձնական գործարանում՝ 61, Երևանի ոսկերչական գործարանում՝ 54, Արզնու «Բյուրեղ» միավորումում՝ 78 տոկոսով։ Չեն ներդրվել կարողություններ՝ Երևանի հիդրոհաղորդակ գործարանում 2100 տոննա ձուլվածքի համար, Կիրովականի ավտոգեներատորային մեքենաշինության գործարանում՝ 10 հազար ք.մ. արտադրական տարածություններ, Հայէլեկտրագործարանում՝ գործիքաշինական կորպուսը 15,6 հազար ք.մ. արտադրական տարածությամբ, Կամոկաբել գործարանում՝ 5,6 հազար ք.մ. տարածությամբ և այլն։

Շինարարական աշխատանքների այսպիսի վիճակի համար պատասխանատու են ո՛չ միայն արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունները, այլև այն ձեռնարկությունների ղեկավարները, որոնք բավարար չափով չեն զբաղվել շինարարության և, հատկապես, տեխնիկական դոկումենտացիայի ժամանակին նախապատրաստման հարցերով։ Օրինակ, տեխնիկական փաստաթղթերի ձգձգման պատճառով 1971 թ. ուշ սկսվեց Արտաշատի փորձնական գործիքաշինական գործարանի շինարարությունը։ Կապիտալ շինարարության այսպիսի ընթացքը կարող է բացասաբար անդրադառնալ հնգամյակի հաջորդ տարիների պլանային առաջադրանքների կատարման վրա։

Արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունները, ինչպես նաև գործարանների ղեկավարները, հաշվի առնելով ստեղծված դրությունը, պետք է լուրջ միջոցներ ձեռնարկեն կապիտալ շինարարության պլանների անվերապահորեն կատարելու համար։

Սովետական Հայաստանի մեքենաշինարարները թևակոխել են իններորդ հնգամյակի երրորդ վճռական տարին։ Նրանք ոգեշնչված են կոմունիստական կուսակցության կոչով և իրենց ջանքերը կգործադրեն կատարելու ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած ծրագիրը։

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ԱԶԴԱԿՆԵՐԸ

ԷԼՄԻՐԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոններից մեկը ժողովրդական տնտեսության քիմիացումն է՝ քիմիական պրոդուկտների ու նյութերի լայնորեն օգտագործումը, քիմիական տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը։

Հանրապետության գիտատեխնիկական առաջընթացի և քիմիական արդյունաբերության արդյունավետության բարձրացման գործում առաջնակարգ դեր է վերապահված գիտական հետազոտություններին։ Այս կապակցությամբ կարևոր նշանակություն է ձեռք բերում հանրապետության գիտահետազոտական կազմակերպությունների ուժերի կենտրոնացումը արտադրության արմատական պրոբլեմները լուծելու, կատարվող գիտական հետազոտությունների արդյունավետությունը բարձրացնելու, ավարտուն աշխատանքների ներդրումն արագացնելու վրա։ Հանրապետությունում գործում են քիմիական արդյունաբերության հետ առնչվող պրոբլեմների մի քանի գիտահետազոտական ինստիտուտներ, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններ, բարձրագույն ուսումնական հաստատություններ և գործարանային լաբորատորիաներ, որոնց գործունեության վերլուծությունը հնարավորություն է ընձեռում գաղափար կազմելու այդ մարմինների թափած աշխատանքների տնտեսական արդյունավետության մասին։

Մեր կարծիքով, գիտական հետազոտությունները որոշակի պայմանականությամբ կարելի է խմբավորել հետևյալ ձևով. հիմնարար հետազոտություններ՝ ընդհանուր և տեխնիկական քիմիայի ու անօրգանական նյութերի տեխնոլոգիայի, բիոքիմիայի, բիոֆիզիկայի և ֆիզիոլոգիական ակտիվ միացությունների քիմիայի ասպարեզում, կիրառական հետազոտություններ՝ նոր պրոդուկտների ու նյութերի ստեղծման, մշակման ու կիրառման բնագավառում, հետազոտություններ՝ տարբեր տեսակի քիմիական պրոդուկտների ու նյութերի արտադրության տեխնոլոգիայի մշակման ոլորտում, գործող տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ու մոդեռնացման բնագավառում սարքավորումների արտադրողականությունը բարձրացնելու նպատակով կատարված աշխատանքներ, քիմիական տարբեր նյութերի ու պրոդուկտների հատկությունների ուսումնասիրելու և փորձարկման մեթոդներ ստեղծելու աշխատանքներ։

Այժմ հանրապետության արդյունաբերությանը սպասարկում են 75 հիմնարկություններ (ինստիտուտներ, ֆիլիալներ, կոնստրուկտորական բյուրոներ, լաբորատորիաներ, հաշվողական կենտրոններ, հենակետեր, փորձնական և հետազոտական բազաներ)։ Սրանց ամբողջությունը կազմում է հասարակական արտադրության առանձնահատուկ ոլորտ, կամ ինչպես հաճախ անվանում են «ժողովրդական տնտեսության ճյուղ՝ արտադրության գիտական նախապատրաստման բնագավառում»։ Դրա գլխավոր ֆունկցիան արտադրության ինտենսիվացմանն ու արդյունավետության բարձրացմանը նպաստելն է։

Այդ պատճառով հետազոտական ծախսերը հանդես են գալիս որպես գիտության զարգացումն առավել հեղափոխող տնտեսական միջոցներ։ Այժմ հանրապետության քիմիական արտադրության ոլորտում աշխատում են մի քանի հարյուր գիտական աշխատողներ՝ գիտության 60 դոկտորներ և մի քանի հարյուր թեկնածուներ, որոնք կազմում են հանրապետության դոկտորների և գիտության թեկնածուների 14,6 և 13,4 տոկոսը։

Էական դեր է խաղում առաջավոր բանվորներին, գյուտարարներին և ռացիոնալիզատորներին ճյուղի գիտահետազոտական գործունեության մեջ ընդգրկելը։ Տարեցտարի աճում է քիմիական արդյունաբերության մեջ ռացիոնալիզատորական ու գյուտարարական շարժմանը մասնակցող բանվորների, ծառայողների, ինժեներների ու տեխնիկների թիվը, կիրառված միջոցառումների քանակը և դրանց տնտեսական արդյունավետության գումարը։

Ռացիոնալիզատորները և գյուտարարները մեծ դեր խաղացին հիմնական սարքավորման մոդեռնացման հետ կապված աշխատանքներ կատարելիս։ Հանրապետության քիմիական արդյունաբերության մեջ մոդեռնացվել է մոտ 130 միավոր արտադրական սարքավորում, որից 1966—1971 թթ. տնտեսվել է 231 հազար ռուբլի, իսկ ծախսերի ետդնման ժամկետը 1,4 տարվանից պակաս է եղել։ 1971 թ. քիմիական արդյունաբերության մեջ տեղադրված էր 32 մեքենայացված հոսքային գիծ՝ ավելի քան 250 միավոր տեխնոլոգիական սարքավորումներով։

Քիմիական արդյունաբերության ինժեներատեխնիկական աշխատողներն ու բանվորները ներկայացրել են 6700 գյուտարարական ու ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 4850-ը, 960 հազար ռուբլի տնտեսական արդյունավետության ընդհանուր գումարով։ Բավական մեծ գումարներ են ծախսվում նաև նոր տեխնիկայի ստեղծման, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման և պարգևատրման նպատակով։

Գիտահետազոտական աշխատանքների ֆոնդի կենտրոնացումը հնարավորություն ընձեռեց կրճատելու սակավ արդյունավետ աշխատանքները և դրա հաշվին պլանավորելու ճյուղային տիպի խոշոր հետազոտություններ, որոնք տնտեսական բարձր ցուցանիշներ են ապահովում։ Հանրապետության քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կենտրոնական լաբորատորիաների մեծ մասը ինքնուրույն կամ գիտությունների ակադեմիայի ճյուղային և ուսումնական ինստիտուտների հետ համատեղ գիտահետազոտական և փորձնական աշխատանքներ են կատարում արտադրության մեջ նոր տեխնիկայի ու կատարելագործված տեխնոլոգիայի ներդրման համար։ Իրականում ձեռնարկությունների կենտրոնական լաբորատորիաների առաջարկությունների ներդրումից ստացած տնտեսական արդյունավետությունը կազմում է մոտ 15 մլն ռուբլի, չհաշված սպառողների տնտեսումը, որն արտադրանքի որակի և սորտայնության արդյունք է։

Գործարանային լաբորատորիաների գործունեության ցուցանիշները չեն զիջում հիմնարկությունների ցուցանիշներին, իսկ առանձին դեպքերում նույնիսկ ավելի բարձր են։ Այդ են ցույց տալիս աղյուսակում բերված թվերը։

Հանրապետության քիմիական արդյունաբերության բնագավառում գործող գիտական հիմնարկությունների աշխատանքի ցուցանիշները

| Գիտական հաստատություններ ու կազմակերպություններ | Գիտաշխատողների տեսակարար կշիռը ընդհանուր թվում | Տնտեսական արդյունավետությունը (հազ. ռուբլի) | | Հեղինակային վկայականների քանակը | |
|---|---|---|---|---|---|
| | | Ընդամենը | 1 հետազոտողին ընկնող | Ընդամենը | 100 հետազոտողին ընկնող |
| ՀՍՍՀ ԳԱ հիմնարկություններ | 35,6 | 1100 | 4,75 | 46 | 19,3 |
| Ինստիտուտներ և բուհերի ամբիոններ ու պրոբլեմային լաբորատորիաներ | 43,4 | 600 | 2,08 | 87 | 30,0 |
| Ձեռնարկությունների կենտրոնական լաբորատորիաներ | 21,0 | 700 | 4,95 | 34 | 24,2 |

Ներկայումս ձեռնարկությունների կենտրոնական լաբորատորիաները հիմնական ուշադրությունը կենտրոնացնում են հեռանկարային նշանակություն ունեցող խոշոր գիտական հետազոտությունների վրա, որոնք նյութական ու աշխատանքային մեծ ծախսեր են պահանջում։

Վերջին տարիներին մեծ ուշադրություն է հատկացվում աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացմանը՝ գիտական հետազոտությունների արդյունքներն արտադրության մեջ արագ ներդնելու և տեխնիկական պրոգրեսի արդյունավետությունը բարձրացնելու նպատակով։ Սակայն ձեռնարկությունների կենտրոնական քիմիական լաբորատորիաների աշխատանքում, մեր կարծիքով, կան լուրջ թերություններ։ Կենտրոնական գործարանային լաբորատորիաները (ԿԳԼ) լիովին չեն դարձել ձեռնարկությունների գիտական կենտրոններ, նրանց թեմատիկան չի ընդգրկում արտադրության ամբողջ կոմպլեքսը։ Ձեռնարկությունների լաբորատորիաներն անբավարար են կոմպլեկտավորված բարձրորակ մասնագիտական կադրերով, ինժեներա-

տեխնիկական անձնակազմի (ԻՏԱ) մեջ բացակայում են գիտական աստիճան ունեցողները, իսկ ԿԳԼ-ի աշխատանքի գիտական և մեթոդական ղեկավարությունը հանրապետության գիտական հիմնարկությունների կողմից թույլ է, չնայած նրան, որ խոշոր գիտահետազոտական աշխատանքների տեսակարար կշիռը գնալով աճում է։

Գիտական հետազոտությունների ընդլայնման լուրջ արգելակներից մեկն այն է, որ ԿԳԼ-ի վրա է դրված վերահսկողության ֆունկցիան։ Ըստ երևույթին ԿԳԼ-ների հետազոտությունների հիմնական ուղղությունները պետք է դառնան արտադրության գործող տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացումը և տեխնիկա-տնտեսական ցուցանիշների, արտադրանքի որակի բարելավումը և ասորտիմենտի ընդլայնումը նոր, կարևոր պրոդուկտների արտադրության տեխնոլոգիայի յուրացման հաշվին, հումքի ծախսերի կրճատումը, սակավ ճարվող (դեֆիցիտ) փոխարինիչների հայտնաբերումը, արտադրության թափոնների և կողմնակի պրոդուկտների օգտագործումը. կեղտաջրերի մաքրման և տարածվող գազերի վնասազերծման մեթոդների հայտնաբերումը և յուրացումը. ձեռնարկությունների արտադրանքի սպառման ոլորտի ընդլայնումը։

Հանրապետության քիմիական արդյունաբերության արտադրանքի ավելացման 63 (1961—1965 թթ.) և 66 (1966—1970 թթ.) տոկոսը ըստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ։ Ընթացիկ հնգամյակում ավելի մեծ չափով կավելանա թողարկման ծավալը։ Այս ասպարեզում հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է արագ վերացնել այն թերությունները, որոնք դեռևս գոյություն ունեն մի շարք ձեռնարկություններում։ Թերությունները հիմնականում նկատելի են նոր տեխնիկայի ներդրման, աշխատանքի պլանավորման ու արդյունավետության գնահատման և առաջավոր փորձի տարածման գործում։

Անհրաժեշտ է նշել, որ ներդրված նոր տեխնիկայի շնորհիվ ստացված տնտեսական փաստացի արդյունավետությունը ոչ միշտ է ձեռք բերում կոնկրետ թվային արտահայտություն և ճշգրիտ արտացոլվում ձեռնարկության կամ նրա ստորաբաժանումների աշխատանքը բնորոշող համապատասխան ցուցանիշներում։ Ամեն միջոցառման փաստացի և հաշվարկային արդյունավետության մեծությունների մեջ եղած տարբերությունները որոշվում են փաստացի և հաշվարկային ցուցանիշների հնարավոր տարբերություններով, որը բացատրվում է մի շարք պատճառներով՝ որոշ ցուցանիշներ ճիշտ չհաշվելը, տեսակարար կապիտալ ներդրումների, արտադրության հեռանկարային ծավալի սխալ որոշումը և այլն։ Տարածված երևույթ է կամավոր մեթոդներով հաշվարկներ կատարելը, որոնք շեղվում են տիպային մեթոդիկայի դրույթներից։

Հաշվարկներում հաճախ շփոթում են տնտեսական արդյունավետություն և տնտեսական արդյունք հասկացողությունները։ Երբ նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ աճում է արտադրության ծավալը, նոր տեխնիկայի ներդրման ցուցանիշները չեն վերահաշվվում ըստ արտադրության նոր ծավալի, դա էլ հենց հանգեցնում է ստացվող տնտեսման չափազանցմանը։

Ինչպես երևում է գործարաններում կատարած հաշվարկներից, ընդհանուր տնտեսական արդյունավետության զգալի բաժինն ստացվում է արտադրանքի ինքնարժեքի իջեցումից։ Կան հիմքեր ենթադրելու, որ հաշված միջոցառումների մեծ մասը ունի նվազեցրած արդյունավետություն, քանի որ հաշվի չեն առնվում հարակից ճյուղերի և սպառողների ծախսերը։

Երևանի քիմիական կոմբինատում պոլիվինիլբուտիրոլի (ПВБ) լաքի արտադրությունը կազմակերպելիս կատարված հաշվարկների հիման վրա սահմանվեց, որ արտադրության պրոցեսում տնտեսական արդյունք չի ստացվում, քանի որ 1 տոննա լաքի հաշվարկային ինքնարժեքը բարձր է սոսնձի ինքնարժեքից։ Սակայն դրա օգտագործումն արդյունավետ է սպառողների համար։ Այդ լաքը հաջողությամբ կիրառվում է լաքի և գրունտի արտադրության մեջ (1 տոննայից ստացված տնտեսական արդյունքը կազմում է 90 հազար ռուբլի՝ գրունտի համար) տարեկան տնտեսվում է 2250 հազար ռուբլի։

Կատարված ուսումնասիրություններից պարզվեց, որ շատ ձեռնարկություններ ձգտում են, որպեսզի նոր տեխնիկայի պլանում նախատեսված միջոցառումները կատարվեն ծախսերի ետգնման նորմատիվային ժամկետներում։ Վերջինս շատ կարևոր է ընդհանուր տնտեսական ցուցանիշների բարելավման համար։

Նոր տեխնիկայի ներդրման ետգնման ժամկետները մեր ուսումնասիրած ճյուղում գնալով կրճատվում են։ Դա գիտատեխնիկական պրոգրեսի արդյունք է։

Ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես էլ քիմիական արդյունաբերության մեջ գիտատեխնիկական պրոգրեսը ավելի լայն տարածում կստանա նոր հնգամյակում։ Այդ ասպարեզում հնգամյա պլանով առաջադրված խնդիրների իրագործումը պահանջում է գիտահետազոտական աշխատանքների լայն ծավալում, կարևոր պրոբլեմների հաջող մշակում ու ներդրում, գիտության ու արտադրության աշխատողների ուժերի մոբիլիզացում։

---



# ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳԸ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ*

Ա.Զ. Գ. ԱԴՈՅԱՆ

Տեխնիկական գիտությունների թեկնածու

Գիտությունն այսօր դարձել է արտադրական և այնպիսի մի ուժ, որն էականորեն ներգործում է հասարակության կենսագործունեության բոլոր կողմերի վրա։ Կոմունիստական կուսակցությունը սովետական գիտությանն առաջադրել է շատ կարևոր ու դժվարին մի խնդիր— կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նպատակով մշակել և ժողովրդական տնտեսության մեջ կիրառել գիտատեխնիկական առաջընթացն արագացնող, սոցիալիզմի առավելությունների լավագույն օգտագործումն ապահովող արդյունավետ մեթոդներ [1]։

Կոմպլեքսային այս պրոբլեմի լուծմանը մասնակցում են գիտության համակարգի բոլոր ճյուղերը։ Մշակումների ընթացքում ընդհանուր ճանաչում գտավ և կիրառվում է այն կոնցեպցիան, ըստ որի, գիտությունների համակարգի կազմակերպման ու կառավարման մակարդակի բարձրացումը պետք է դառնա պրոբլեմի լուծման հիմնական միջոցներից մեկը։ Արդեն իրագործված են գիտությունների համակարգի կազմակերպական կառուցվածքի բարելավման մի շարք արմատական միջոցներ, մշակվում է մեր երկրում գիտատեխնիկական առաջընթացի կառավարման ավտոմատացված մի համակարգ [2], զգալի աշխատանքներ են ծավալվում մի նոր գիտության՝ գիտաբանության (наука о науке) ձևավորման ու զարգացման նպատակով (3—5)։ Այդ առումով այժմ չափազանց հրատապ են գիտությունների համակարգի արդյունավետության բարձրացման հարցերը, որպիսիք են՝ ա) գիտությունների համակարգի դասակարգումն ըստ վերոհիշյալ հիմնական խնդրի հայտանիշի. բ) գիտությունների համակարգային վերլուծումը, ձգտելով ճիշտ ու հստակ գնահատել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման պրոբլեմի լուծման գործում տարբեր գիտությունների դերը։

Սույն հոդվածը միտում է այդ երկու խնդիրների նախնական, մոտավոր

*) Տպագրվում է հարցադրման կարգով— խմբ.։

*լուծմանը։ Հոդվածում միաժամանակ շարադրված և հիմնավորված է մեր պրոգնոզը մերձավոր ապագայում կիրառական գիտությունների երկու նոր դասերի ձևավորման մասին, որոնք կոչված են արագացնելու գիտատեխնիկական առաջընթացի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերը։*

## I. Գիտությունների համակարգի ընդհանուր դասակարգումը

*Այժմ, երբ գիտությունները շատ արագ և դիալեկտիկորեն զարգանում ու միահյուսվում են, գրեթե անհնար է դրանց համակարգը ճշտորեն մասնատել դասերի, ենթադասերի, խմբերի և ենթախմբերի։ Ուստի և մեր կատարած դասակարգումը միայն մոտավոր չափով է ճիշտ։ Այս հոդվածում արտացոլված է դասակարգման միայն հիմնական մասը, ուր համակարգը բաժանված է դասերի ու ենթադասերի (Համակարգի պարզ մոդելը տե՛ս էջ 81)։*

*Գիտությունների համակարգի դասակարգման առաջին քայլի՝ դասերի մասնատելու համար որպես հայտանիշ ընդունենք գիտական հետազոտությունների ու մշակումների արդյունքի («ելքի») բնույթը, ելնելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդրից։ Այլ կերպ ասած, գիտությունները դասակարգելով ըստ ժողովրդական տնտեսության զարգացման գործում դրանց խաղացած դերի, կստանանք հետևյալ հինգ դասերը (պայմանականորեն նշանակենք Դ1, Դ2, ..., Դ5)։*

*Դ1.* Հիմնարար գիտություններ, *որոնք ուսումնասիրում են բնության, հասարակության և մարդու մտածողության ոլորտներում եղած երևույթների էությունը և բացահայտում դրանց դրսևորման ու զարգացման օրինաչափությունները։ Դ2.* Վերացական մեթոդաբանական գիտություններ— *ուսումնասիրում և մշակում են գիտական, փորձարարական և գործնական խնդիրների լուծման մեթոդոլոգիան, մեթոդներն ու սկզբունքները։ Դ3.* Կիրառական դիֆերենցված գիտություններ— *ուսումնասիրում և մշակում են ձեռնարկությունների կառուցվածքի բաղկացուցիչ տարրերի՝ տեխնոլոգիական պրոցեսների, մեքենաների, սարքերի, հանգույցների նախագծման (հաշվարկման, կոնստրուկտավորման) և օգտագործման գիտատեխնիկական հիմունքները։ Դ4.* Կիրառական ինտեգրված գիտություններ, *որոնք ստեղծում և ժողովրդական տնտեսության մեջ ներդնում են ողջ հզորությամբ գործող տիպային ձեռնարկություններ, որպես դրա կառուցվածքի հիմնական և ամբողջական տարրեր (պրոգնոզվող դաս)։ Դ5.* Կիրառական համակարգային գիտություններ— *մշակում են ժողովրդական տնտեսության կառուցվածքի և գործառնության պրոցեսների օպտիմալացման գիտակիրառական հիմունքները, նախագծերը, ծրագրերը և ալգորիթմները (պրոգնոզվող դաս)։*

*Այժմ այս հինգ դասերից յուրաքանչյուրը մասնատենք ենթադասերի, որպես հայտանիշ ընդունելով համապատասխան գիտությունների կողմից հետազոտվող ու մշակվող օբյեկտների տարբերությունը։*

*Մասնատելով Դ1-ը, ստանում ենք հիմնարար գիտությունների հետևյալ վեց ենթադասերը (նշված են Ե1—1, Ե1—2, ..., Ե1—6), որոնցից յուրաքանչյուրը համապատասխանաբար հետազոտում ու բացահայտում է՝ Ե1—1. բնության, հասարակության և մարդու մտածողության երևույթների առավել ընդհանուր օրենքներն ու օրինաչափությունները (մարքս-լենինյան փիլիսոփայություն). Ե1—2. կենդանի և անկենդան բնության մեջ, ինչպես նաև դրանց*



## ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՊԱՐԶԱԳՈՒՅՆ ՄՈԴԵԼԸ

(Բլոկ-սխեմա)



սահմանագծերում տեղի ունեցող երևույթների համար ընդհանուր օրենքներն ու օրինաչափությունները (բիոֆիզիկան, բիոքիմիան, բիոգեոքիմիան, օվկիանագիտությունը, կենսաաշխարհագրությունը և այլն). Ե1—3. անկենդան բնության մեջ տեղի ունեցող երևույթների օրենքներն ու օրինաչափությունները (ֆիզիկական, քիմիական, աշխարհագրական, երկրաբանական, հանքաբանական և այլ գիտություններ). Ե1—4. կենդանի բնության մեջ տեղի ունեցող երևույթների օրենքներն ու օրինաչափությունները (կենսաբանական գիտությունները). Ե1—5. հասարակական երևույթների օրենքներն ու օրինաչափությունները (հասարակական գիտությունները՝ մարքսիզմ-լենինիզմը, քաղաքատնտեսությունը, պատմությունն ու հնէաբանությունը, սոցիոլոգիան, լեզվագիտությունը, պետության և իրավունքի տեսությունը և այլն). Ե1—6. կենդանի բնության, հասարակության մեջ և մեքենաներում կատարվող հիմնական պրոցեսների կառավարման և ինքնակառավարման օրենքներն ու օրինաչափությունները (կիբեռնետիկան՝ նշված երևույթների էությունն ու օրինաչափություններն ուսումնասիրող մասը)։

Մասնատելով Դ2-ը, ստանում ենք վերացական մեթոդոլոգիական գիտությունների հետևյալ չորս ենթադասերը (նշված են՝ Ե2—1, Ե2—2, ..., Ե2—4), որոնցից յուրաքանչյուրը համապատասխանաբար ստեղծում է մեթոդաբանություններ, մեթոդներ ու սկզբունքներ, որոնք՝

Ե2—1. ընդհանուր են գիտական հետազոտությունների, նախագծա-կոնստրուկտորական և մի շարք գործնական աշխատանքների համար (մատերիալիստական դիալեկտիկական մեթոդոլոգիան ու տրամաբանությունը, մաթեմատիկան, ինֆորմացիայի ընդհանուր տեսությունն ու ինֆորմատիկան, մոդելացման տեսությունը, չափագիտությունը, սեմիոտիկան, գիտաբանությունը, կազմակերպման ու կառավարման ընդհանուր և կիբեռնետիկական մեթոդոլոգիան և այլն). Ե2—2. անկենդան բնության երևույթների հիմնարար գիտական հետազոտությունների համար (մաթեմատիկական ֆիզիկան, ֆիզիկական և քիմիական էքսպերիմենտների տեսությունը և այլն). Ե2—3. հասարակական երևույթների գիտական հետազոտությունների համար (վիճակագրությունը, փորձարարական սոցիոլոգիան, տնտեսագիտական մաթեմատիկան, մաթեմատիկական լեզվաբանությունը և այլն). Ե2—4. կենդանի բնության գիտական հետազոտությունների համար (մաթեմատիկական բիոլոգիան, բիոլոգիական կիբեռնետիկան, կենդանի օրգանիզմների վարքագծի մոդելացումը, քրեագիտությունը և այլն)։

Մասնատելով Դ3-ը, ստանում ենք կիրառական տարբերակված գիտությունների հետևյալ վեց ենթադասերը (նշված են՝ Ե3—1, Ե3—2, ..., Ե3—6), որոնք համապատասխանաբար ստեղծում են ձեռնարկությունների և այլ օբյեկտների ստրուկտուրային տարրերի նախագծման գիտատեխնիկական հիմունքներ.

Ե3—1. արտադրամիջոցների, էներգետիկ ռեսուրսների, նյութական բարիքների արտադրության համար (տեխնիկան, գյուղատնտեսական, կիրառական տնտեսագիտական և այլ գիտություններ). Ե3—2. հասարակությանը կուլտուրայի բարիքներով ապահովելու համար (ճարտարապետությունը որպես արվեստ, կիրառական բանասիրական գիտությունների մի մասը, կիրառական արվեստագիտությունը, երաժշտագիտությունը, թատերագիտությունը, կինոյի և կինոֆիկացիայի տեսությունը, գրաբանությունը, հեռուստատեսային սիստեմների տեսությունը և այլն). Ե3—3. հասարակությանը սպասարկման ծառայություններով ապահովելու համար (առևտրագիտությունն ու էկոնոմիկան, մասսայական սպասարկման տեսությունը և ծառայությունների էկոնոմիկան, կիրառական իրավագիտությունը և այլն). Ե3—4. հասարակության անդամների դաստիարակման, ուսուցման և ժողովրդական տնտեսության կադրերի պատրաստման համար (կիրառական մանկավարժական գիտությունները, ուսուցող համակարգերի ու մեքենաների տեխնիկայի տեսությունը, մանկավարժական կիբեռնետիկան և այլն)։ Ե3—5. առողջապահության համար (բժշկական և դեղագործական գիտությունները, բժշկական կիբեռնետիկան և այլն). Ե3—6. հասարակությանը բնության տարերային ուժերից և երկիրը թշնամիներից պաշտպանելու համար (համաճարակագիտությունը, սեյսմոլոգիան, ռազմական գիտությունները և այլն)։

Մասնատելով Դ4-ը, ստանում ենք կիրառական ինտեգրացված գիտությունների հետևյալ 13 ենթադասերը, որոնց շնորհիվ ստեղծվում են բարձրարդյունավետ ձեռնարկություններ՝ հետևյալ բնագավառներում։

Ե4—1. բնական ռեսուրսներ արդյունահանող և վերամշակող ճյուղերում. Ե4—2. էլեկտրական, ջերմային և այլ տեսակի էներգիայի արտադրության ու բաշխման մեջ. Ե4—3. գյուղատնտեսության, անտառային տնտեսության և ձկնատնտեսության մեջ. Ե4—4. սնունդ, հագուստ և կենցաղային սպառման այլ առարկաներ արտադրող ճյուղերում. Ե4—5. կոմունալ-բնակարանային տնտեսության ոլորտներում. Ե4—6. հասարակությունը կուլտուրայի բարիքներով ապահովելու մարզում. Ե4—7. հասարակության սպասարկման ծառայությունների ասպարեզում. Ե4—8. հասարակությունը տրանսպորտով և կապի միջոցներով ապահովելու գործում. Ե4—9. ընդհանուր նշանակություն ունեցող արտադրամիջոցներ (ամեն տեսակի մեքենաներ, գործիքներ), սարքեր, կառավարման ինֆորմացիոն տեխնիկական միջոցներ և այլն) արտադրող ճյուղերում. Ե4—10. առողջապահության ոլորտում. Ե4—11. հասարակության անդամների դաստիարակության և ուսուցման, ժողովրդական տնտեսությունը կադրերով ապահովելու մարզում. Ե4—12. հասարակության համար նյութական ու կուլտուրական բարիքներ հայթայթելու, պահպանելու և բաշխելու, ասպարեզում. Ե4—13. երկրի պաշտպանության կարիքների բավարարման և բնության տարերային ուժերից հասարակությանը ձերբազերծելու համար։

Մասնատելով Դ5-ը, ստանում ենք կիրառական համակարգային գիտությունների հետևյալ չորս ենթադասերը (նշված են՝ Ե5—1, Ե5—2, ..., Ե5—4), որոնք համապատասխանաբար ստեղծում են գիտակիրառական հիմունքներ, նախագծեր, ալգորիթմներ.

Ե5—1. երկրի ժողովրդական տնտեսության, որպես մի ամբողջություն կազմող համակարգի, կառուցվածքի զարգացման ու կատարելագործման, ինչպես և դրա գործառնության (ֆունկցիավորման) պրոցեսների օպտիմալացման համար. Ե5—2. ժողովրդական տնտեսության ճյուղերի, որպես ենթահամակարգերի, կառուցվածքի զարգացման ու կատարելագործման, ինչպես և դրանց գործառնության պրոցեսների օպտիմալացման համար. Ե5—3. միութենական հանրապետությունների, երկրամասերի, մարզերի և խոշորագույն քաղաքների, որպես մեծ ռեգիոնալ ենթասիստեմների, կառուցվածքի զարգացման ու կատարելագործման, ինչպես և դրանց գործառնության պրոցեսների օպտիմալաց-

ման համար. Ե5—4. ժողովրդական տնտեսության հատուկ և մեծ կոմպլեքսային ենթահամակարգերի համար, որոնց միջոցով լուծվում են նոր պրոբլեմներ և իրագործվում են նոր ծրագրեր։

## II. Գիտությունների համակարգի դասակարգումային վերլուծությունը

Ելնելով առաջին մասում շարադրված դասակարգումից, վերլուծենք գիտությունների համակարգը, փորձելով գնահատել գիտությունների դերն ու նշանակությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, ինչպես նաև հիմնավորելու ներկայումս սաղմնային վիճակում գտնվող Դ4 և Դ5 կիրառական գիտությունների ձևավորման պրոգնոզը։ Ի դեպ, հարկ է ասել, որ մեր վերլուծությունը մեկնում է հասարակության նյութատեխնիկական բազա արտահայտող գաղափարի այն սահմանումից, որը տրված է հոդվածի վերջում նշված [6] աշխատության հեղինակների կողմից։ Ահա այն. «Հասարակության նյութատեխնիկական բազան՝ դա արտադրամիջոցների, կիրառվող էներգիայի տեսակների, օգտագործվող արտադրական տեխնոլոգիական եղանակների, գիտական հետազոտությունների համար անհրաժեշտ միջոցների, ինչպես նաև հասարակության կողմից հայտնաբերված բնական ռեսուրսների մի ամբողջություն է»։

Հոդվածում ներկայացված բլոկ-սխեման, որպես գիտությունների համակարգի մոդել, նպատակ ունի ավելի համոզիչ դարձնելու շարադրվող վերլուծության էությունը։ Ինքնին հասկանալի է, որ տվյալ, ինչպես և ամեն մի այլ մոդել արտահայտում է ուսումնասիրվող օբյեկտի միայն առանձին կողմերը և բովանդակում որոշ պայմանականություններ։ Տվյալ մոդելում բարդ համակարգի տարրերը մասնատված են ու ցուցադրված որպես միմյանց հետ փոխկապված ուղղանկյուն բլոկներ. ժողովրդական տնտեսության կառուցվածքը չի պատկերված, իսկ գիտությունների համակարգը հանված է դրա կազմից և ներկայացված փոխկապված հինգ բլոկների տեսքով (Դ1—Դ5) չափազանց պարզ են պատկերված նաև մոդելի բլոկների ուղղակի և հետադարձ կապերը։

Դ1 գիտությունները։ *Մոդելից պարզ երևում է, որ դրանց հետազոտությունների օբյեկտներն են բնությունն ու հասարակությունը։ Հետազոտությունների ծավալման և կուտակված տեսական ու փորձնական ինֆորմացիայի մշակման համեմատ, դրանք գեներացնում (ստեղծում) են և իրենց «ելքերին» հղում նոր, գիտական ինֆորմացիա, որը պարունակում է ուսումնասիրվող երևույթների էությունը լուսաբանող ըմբռնումներ, հիպոթեզներ, տեսություններ, օրենքներ ու օրինաչափություններ։ Իրենց այդ գլխավոր արդյունքից բացի, առաջին դասի գիտությունները հաճախ մշակում են նոր, բարձրարդյունավետ տեխնոլոգիական պրոցեսներ և նոր հատկություններ ունեցող նյութեր ու էներգիայի տեսակներ ստանալու եղանակներ, ինչպես և բացահայտում ու գնահատում են ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ բնական ռեսուրսների պաշարները. երբեմն դրանք ստեղծում են նաև ապագա մեքենաների ու սարքերի գործող մոդելներ։ Որպես ցայտուն օրինակ կարելի է հիշել Դ1 գիտությունների կիրառման այն փայլուն արդյունքները, որոնք հանգեցրին ատոմային էներգիայի և տիեզերքի նվաճման սկզբնավորմանը, ստեղծեցին քվանտային (լազերային) նոր տեխնիկա, նոր տեսակի արհեստական (սինթետիկ) նյութեր, օրինակ՝ ալմաստներ։*



Անհրաժեշտ է հատկապես ընդգծել մարքսիզմ-լենինիզմի կենսագործման այնպիսի փայլուն արդյունքները, ինչպիսիք են՝ զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում և սոցիալիզմի կառուցումը մի շարք երկրներում, կոմունիզմի կառուցման գլխավոր ստրատեգիայի մշակումը։

Մի քանի խոսք Դ1 գիտությունների ենթադասերի մասին։ Գրականության մեջ կան կարծիքներ, թե այնպիսի մի գիտություն, որպիսին է համակարգերի ընդհանուր տեսությունը, պետք է դասվի Ե1—1 ենթադասին, ինչպես և մարքս-լենինյան փիլիսոփայությունը։ Մենք գտնում ենք, որ սկզբունքորեն հնարավոր չէ որ այդ տեղը հավակնի գրավել որևէ այլ գիտություն, որովհետև մատերիալիստական դիալեկտիկան իր զինանոցն անընդհատ հարստացնում է նոր գիտությունների զարգացման համեմատ, դրանով իսկ մշտապես զարգանում է ինքն էլ։ Եվ, մեր կարծիքով, համակարգերի ընդհանուր տեսությունը պատկանում է Դ2 գիտություններին։

Ակներև է մի տենդենց, որ Ե1—2-ին վերագրած գիտությունների թիվն արագ աճում է։ Թեև այժմ արդեն քաջ հայտնի է, որ կենդանի բնության պրոբլեմների գերակշռող մասը կարելի է լուծել ֆիզիկայի ու քիմիայի մեթոդներով, այնուամենայնիվ, այդ պրոբլեմների բարդության պատճառով, կենդանի և անկենդան բնության սահմանագծին առնչվող հարցերն ուսումնասիրող գիտությունների տարբերակումը դեռևս կշարունակվի։

Արդի օրգանական քիմիան ընդհուպ մոտեցել է կենդանի նյութի սինթեզմանը։ Այնուամենայնիվ, ֆիզիկայի և այլ գիտությունների հետ մեկտեղ մենք այն դասել ենք Ե1—3 ենթադասին։

Հասարակական գիտությունները (Ե1—5) իրենց պրոբլեմները լուծում են ո՛չ միայն հասարակական, այլև այնպիսի երևույթների հետազոտման միջոցով, որոնք պայմանավորված են մեր հասարակության և բնության ու շրջապատի ուժեղ փոխգործողություններով, այդ թվում՝ իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ պայքարի, բնության պաշտպանության և այլ ոլորտներում։

Կիբեռնետիկան մենք կարգում ենք հիմնարար գիտությունների Ե1—6 ենթադասին, նկատի ունենալով դրա այն մասը, որը հետազոտում ու վերլուծում է կառավարման պրոցեսների էությունն ու օրինաչափությունները կենդանի բնության, հասարակության մեջ և մեքենաներում։ Կիբեռնետիկայի մնացած մասը մենք վերագրում ենք մեթոդոլոգիական գիտությունների ենթադասերին։ Հավանաբար մոտ ապագայում կյանք կառնեն ու կձևավորվեն նոր գիտություններ, որոնք կհետազոտեն հասարակության օպտիմալ կառավարման ավելի ու ավելի բարդացող պրոբլեմները։

Այսպիսով, կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում առաջին դասին վերագրված գիտությունների դերը հիմնարար է, քանի որ դրանք մշակում են գիտությունների համակարգի ու նյութատեխնիկական բազայի զարգացման գիտական ստրատեգիան. ստեղծում են նորագույն արտադրամիջոցների, առավել արդյունավետ տեխնոլոգիական պրոցեսների, էներգիայի նոր աղբյուրների մշակման ու ստացման գիտական հիմունքները. մշակում են հասարակության, նրա ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման ընդհանուր տեսությունը։ Այդ հիմնարար դերը կատարելիս նրանք անընդհատ բացահայտում են բնության, հասարակության և մարդու մտածողության երևույթների ծավալման օրենքներն ու օրինաչափությունները, ինչպես և հայտնաբերում երկրի

բնական ռեսուրսների նոր աղբյուրներ ու մշակում նրանց ռացիոնալ օգտագործման եղանակներ։

**Դ2 գիտությունները** կատարում են առավելապես վերացական բնույթի հետազոտություններ, բայց ստեղծում են հետազոտման համընդհանուր (ունիվերսալ) մեթոդներ ու սկզբունքներ, ինչպես գիտությունների կարիքների, նույնպես և գործնական նպատակների համար։ Այսպես, մաթեմատիկական ապարատը և հավանականության տեսության մեթոդներն օգտագործվում են բոլոր գիտությունների կողմից և առօրյա պրակտիկայում։ Երբեմն հատուկ և մեծ ծավալի ծրագրային հետազոտությունների պահանջմունքների համար Դ2-ի գիտությունները մշակում են մեթոդներ, դրանք սկսում են լայնորեն օգտագործվել շատ այլ ասպարեզներում։ Օրինակ, ռազմական խնդիրների լուծման նպատակով վերջին տարիներս մշակվել են խաղերի տեսության ու Մոնթե-Կառլոյի մեթոդները, բայց դրանք լայնորեն կիրառվում են նաև ֆիզիկայում, քիմիայում հնէաբանության, լեզվաբանության, գյուղատնտեսության մեջ և գործնական այլ ասպարեզներում։

Դ2-ի արդյունքների ընդհանրականությունը մոդելում արտապատկերված է առանձնահատուկ կապերով, իսկ Դ2-ի մոդելի բոլոր բլոկների հետ (բացառությամբ Դ1-ի) փոխադարձաբար կապված է ընդհանուր օգտագործման ինֆորմացիոն ցանցի միջոցով։ Դ1 և Դ2 բլոկների անմիջական փոխկապերը շեշտում են Դ2 գիտությունների հետևյալ յուրահատկությունները՝ ա) դրանք առաջացել ու դեռևս առաջանում են Դ1 գիտությունների ընդերքում և գերազանցապես բավարարում են դրանց կարիքները. բ) Դ1 և Դ2 գիտություններով զբաղվող կազմակերպությունները գիտությունների ակադեմիայի ձեռնարկությունների համակարգին են պատկանում. գ) հաճախ Դ2-ի կարգը դասվող գիտական նոր մեթոդների հեղինակներն այն գիտնականներն են, ովքեր մշակում են Դ1 գիտությունների այս կամ այն հարցերը։

Այսպիսով, գնահատելով երկրորդ դասին (Դ2) վերագրված գիտությունների դերը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, անհրաժեշտ է դրանք համարել նույնքան հիմնարար, որքան են Դ1 գիտությունները, որովհետև դրանք բոլոր գիտություններին զինում են համընդհանուր և մեթոդական հուժկու ապարատով, որը հնարավորություն է ընձեռում իրոք առավելագույն արդյունավետությամբ կատարելու հետազոտություններն ու մշակումները (ժամանակի ու միջոցների տնտեսման, ճշգրտության առումով)։ Այստեղ ավելորդ չէ հիշատակել, որ Ջ. Մաքսվելը, օգտագործելով մաթեմատիկական ապարատը, էլեկտրամագնիսական ալիքները տեսականորեն հայտնագործեց շատ ավելի շուտ, քան Հ. Հերցի և Ա. Պոպովի փորձերը, որոնք հանդիսացան ռադիոտեխնիկայի (մի նոր դարաշրջանի) սկիզբը, իսկ Ա. Էյնշտեյնը կատարեց XX դարի խոշորագույն գիտական հայտնագործումը— հարաբերականության տեսությունը, որն ստեղծեց ժամանակակից ֆիզիկայի, միջուկային էներգետիկայի ու տիեզերագիտության ամուր հիմքերը։

**Դ3 գիտությունները**։ Այս դասին պատկանող գիտությունների հետազոտման օբյեկտներն են՝ ձեռնարկությունների ու ժողովրդական տնտեսության մյուս օբյեկտների առանձին տարրերի ստեղծման, կառուցման ու շահագործման գիտատեխնիկական հարցերը։ Ընդ որում, դրանք բխում են Դ1 և Դ2 գիտությունների նվաճումներից, սեփական փորձից, նույնպես և գյուտարարների ու ռացիոնալիզատորների մասսայական ու հարուստ փորձից։ Այս գիտությունները ստեղծում են ծայր աստիճան դիֆերենցածված ու մասնագիտացված կիրառական գիտատեխնիկական հիմունքներ՝ մեքենաների, մեխանիզմների, սարքերի, տեխնոլոգիական պրոցեսների, կառույցների, կառավարման տեխնիկայի ու ձեռնարկությունների և այլ օբյեկտների նման տարրերի ստեղծման համար։ Այդ դասին պատկանող գիտությունների թիվը մեծ է և շարունակում է մեծանալ գիտատեխնիկական հեղափոխության ծավալման զուգընթաց։ Կարելի է ասել, որ դրանք առավելապես բնորոշվում են ծայրաստիճան մասնագիտացմամբ. ընդ որում, դրանցից յուրաքանչյուրն ունի հետազոտման և կիրառման բազմաթիվ ու բազմատեսակ օբյեկտներ։ Օրինակ, նյութերի դիմադրությունը, մեքենաների ու մեխանիզմների տեսությունը, հուսալիության տեսությունը, հիդրավլիկան, էլեկտրատեխնիկան, կապի կիրառական տեսությունը, էլեկտրոնիկան, կիրառական քիմիան և քիմիական տեխնոլոգիան, արտադրապրոցեսների էկոնոմիկան հետազոտման և կիրառման օբյեկտներ ունեն ժողովրդական տնտեսության բոլոր ասպարեզներում։

Նշենք, որ Դ3 գիտությունների մասնատումը վեց ենթադասերի պայմանական է։ Հիշյալ գիտությունների մյուս բնորոշ գիծն այն է, որ դրանցից յուրաքանչյուրն ստեղծում է համապատասխան գիտական հիմունքներ՝ նախագծելու միայն որոշակի փոխկապված բազում տարրեր, որոնցով բնորոշվում է ժամանակակից խոշոր ձեռնարկության կառուցվածքը։ Դիֆերենցածված գիտությունների կարևոր դիմորոշ կողմերից մեկն էլ պատմականորեն առաջացած դրանց անջատվածությունն ու անհամաչափ զարգացումն է։

Մոդելում ցույց է տրված, որ Դ3 գիտությունների «ելքերը» (հետազոտությունների ու մշակումների արդյունքները) անմիջականորեն առնչվում են Դ4 բլոկին, ինչպես և հաղորդվում ընդհանուր օգտագործման ինֆորմացիոն ցանցին։ Դա նշանակում է, որ Դ3-ի «ելքերի» բազմաթիվ տարրերը, որպիսիք են՝ նորագույն տեխնոլոգիական պրոցեսները, տեխնիկական սարքերն ու մեքենաները, բարձր բերքատու սերմերի սորտերը ու բարձրարդյունավետ կենդանիների ցեղերը, արտադրության կազմակերպման, կառավարման և ինտենսիվացման նորագույն եղանակները անմիջապես կիրառվում են ժողովրդական տնտեսության մեջ։

Դ1, Դ2 և Դ3 գիտությունների փոխադարձ սերտ կապերն ու կուռ միահյուսվածությունը նկատի ունենալով էր, որ գիտությունների ակադեմիայի զարգացման առաջին շրջանում դրանք կազմակերպորեն միավորված էին ակադեմիայի հիմնարկությունների սիստեմում։

Բարձր գնահատելով Դ3 դասին պատկանող գիտությունների դերը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, պետք է շեշտել, որ ելնելով Դ1 և Դ2-ի դասերին պատկանող գիտությունների արդյունքներից, դրանք իրենց հերթին գոյավորում են այդ բազայի ստրուկտուրայի բաղկացուցիչ բազմաթիվ տարրերի նախագծման, մշակման, կառուցման ու շահագործման գիտատեխնիկական հիմունքները։

**Դ4 գիտությունները**։ Ներկայումս ձևավորված, ինտեգրացված և մասնագիտացված կիրառական գիտությունների որևէ օրինակ գործնականում դեռևս գոյություն չունի։ Այդպիսի գիտությունների բազում ֆունկցիաների մի մասը կատարում են ճյուղային գիտահետազոտական, նախագծա-տեխնոլոգիական, նախագծա-կոնստրուկտորական կազմակերպությունները, ինչպես և գործարանային լաբորատորիաներն ու կոնստրուկտորական բյուրոները։ Բայց գործնա-

կանում լիովին ինտեգրացված հետազոտություններ կատարող դեռևս չկա: Պետք է հուսալ, որ առաջիկա 5—10 տարիներին անպայման կառաջանան ու կձևավորվեն մեր կողմից այժմ պրոգնոզվող այդպիսի կիրառական ինտեգրացված ու մասնագիտացված գիտություններ:

Մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոբլեմը կարելի կլինի համարել մեկընդմիշտ լուծված լոկ այն դեպքում, երբ ժողովրդական տնտեսության ստրուկտուրային բոլոր տարրերը (գործարանները, ֆաբրիկաները, էլեկտրակայանները, հանքահորերը, գյուղատնտեսական, տրանսպորտային և այլ ձեռնարկություններ կառուցված կլինեն ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների մակարդակին համապատասխան, այսինքն՝ կստեղծվեն ու կշահագործվեն որպես կոմպլեքսային ավտոմատացված ու բարձրարդյունավետ ձեռնարկություններ: Բայց, ինչպես պարզվեց գիտությունների Դ1, Դ2 և Դ3 դասերի վերն արված վերլուծությունից, այժմ դեռևս գոյություն չունեն այնպիսի գիտություններ, որոնց հետազոտման ու մշակման օբյեկտները լինեին արդի խոշոր ձեռնարկությունները: Հանրահայտ է, որ այդպիսի ձեռնարկությունների ստեղծման աշխատանքներին (գաղափարից մինչև դրանց լրիվ կարողությամբ գործարկման պահը) մասնակցում են մեծաթիվ գիտնականներ, գիտական հաստատություններ ու կազմակերպություններ:

Սակայն փաստն այն է, որ նոր ստեղծվող ձեռնարկությունների մեքենայացման ու ավտոմատացման մակարդակը, ինչպես և դրանց գործունեության տնտեսագիտական ցուցանիշներն զգալի չափով ցածր են երկրի սոցիալիստական տնտեսության, նրա գիտության ու տեխնիկայի ռեալ հնարավորություններից: Դեռ ավելին, ուզածդ նորագույն ձեռնարկության կառուցվածքում նրկատվում է տեխնոլոգիական պրոցեսների, մեքենաների համակարգի, տրանսպորտային միջոցների, շենքերի ու կառույցների, կառավարման կազմակերպական մեթոդների ու տեխնիկայի կատարելության մակարդակների խայտաբղետություն: Մեր երկրում նորմալ գործող լրիվ ավտոմատ ձեռնարկությունների կողքին դեռևս կան բազմաթիվ ձեռնարկություններ, որոնց արտադրապրոցեսներում էական դեր է խաղում ձեռքի պրիմիտիվ աշխատանքը:

Ենթադրում ենք, որ սույն պրոգնոզվող Դ4 գիտությունների ձևավորումն ու զարգացումը հնարավորություն կընձեռեն ավելի կարճ ժամանակամիջոցում վերացնելու նշված թերությունները և, հետևապես, արագացնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերը:

Դ4 գիտությունների հետազոտությունների ու մշակումների օբյեկտներ կհանդիսանան լրիվ հզորությամբ արդեն գործող և շահագործման հանձնվող տիպային, մասնագիտացված և բարձրարդյունավետ ձեռնարկությունները:

Ենթադրենք՝ Դ4 գիտություններն արդեն ձևավորվել և գործում են: Այդ դեպքում հարց է ծագում. ինչպիսի՞ք են դրանց հիմնական հատկանիշները: Այդ դասի տեղը ցույց է տրված գիտությունների համակարգի մոդելում: Այստեղ: Դ4-ը փաստորեն գիտությունների համակարգի «ելքային» բլոկն է. այսինքն՝ Դ1, Դ2 և Դ3 գիտությունների գործունեության արդյունքները Դ4-ի գիտությունների կողմից վերամշակվում ու ներդրվում են ստեղծվող տիպային ձեռնարկություններում, որոնք իրենց հերթին ներդրվում են ժողովրդական տնտեսության ոլորտում: Ուրեմն Դ4 բլոկը միաժամանակ նաև «մուտքային» է ժողովրդական տնտեսության կառուցվածքը կազմող ձեռնարկությունների և



այլ օբյեկտների համակարգում: Կարելի է ասել, որ տվյալ դասի գիտություններն, իրենց փորձնական և ինդուստրիալ բազաներով հանդերձ, կազմում են եկմիասնական գիտաինդուստրիալ համակարգ: Եվ հենց այդ է Դ4 գիտությունների հիմնական էությունը: Ինչպես պարզ երևում է մոդելից, Դ4 բլոկն ստանում է ո՛չ միայն գիտատեխնիկական և դիրեկտիվ ինֆորմացիա. ժողովրդական տնտեսությունից այստեղ մուտք են գործում նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսներ, որոնք անհրաժեշտ են տիպային ձեռնարկություններ ստեղծելու և լրիվ հզորությամբ գործարկելու համար: Հետևաբար, Դ4 բլոկի «ելքերը» անմիջականորեն մուտք են գործում ժողովրդական տընտեսության կառուցվածքում, մարմնավորելով մտքի բարձրագույն նվաճումները:

Դ4 գիտությունների հետևյալ հատկանիշը դրանց նեղ մասնագիտացումն է, հետևաբար և աճող բազմաքանակությունն է: Կարելի է, իհարկե, ենթադասերի թիվն զգալիորեն բազմացնել դիմելով ավելի խիստ մասնատման մեթոդներին, բայց դա չի փոխի մեր հետազոտման էությունն ու արդյունքները:

«Ինտեգրացված գիտություն» տերմինը պետք է հասկանալ այնպես, որ այն, մարմնավորելով Դ1—Դ3 գիտությունների համապատասխան բաժինների հիմունքներն ու արդյունքները, դրանց հանրագումարում (ինտեգրում) ընդհանրացնում և իր հետազոտությունների օբյեկտի կառուցվածքի հատկանշական պահանջներին համեմատ սինթեզում է ամբողջական ու որակապես նոր տեսություն, նոր կիրառական գիտություն՝ տվյալ տիպային ձեռնարկությունների ստեղծման, կառուցման, գործառության ու «բազմացման» պրոբլեմները լիովին և լավագույն ձևով լուծելու համար: Ուրեմն, Դ4 գիտություններին բնորոշ է նաև այն, որ, չնայած նեղ մասնագիտացմանը, դրանք շատ բարդ են, որչափով ստեղծում են տիպային ձեռնարկություններ, այսինքն՝ ամբողջական ու բարդ կիբեռնետիկական դինամիկ օրգանիզմներ, որոնք ողջ կարողությամբ արդեն գործարկված ներդրվում են ժողովրդական տնտեսության մեջ:

Մեր երկրում վերջերս կազմակերպվող գիտաարտադրական միավորումները նախատիպն են ապագա գիտաինդուստրիալ այն կազմակերպությունների, որպիսիք ի վիճակի կլինեն լիովին իրագործելու Դ4 գիտությունների ֆունկցիաները: Ուստի, այդ գիտությունները մենք ներկայացրինք որպես գիտաինդուստրիալ համակարգեր, որոնք ստեղծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հիմնական տարրերի՝ ձեռնարկությունների տիպերը:

**Դ5 գիտությունները:** Ներկայումս այս դասի գիտությունները գտնվում են ձևավորման փուլում: Այստեղ առկա են հետևյալ բաղկացուցիչ մասերը՝ ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման լենինյան տեսությունը, պլանավորման տեսությունն ու պրակտիկան. կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության հիմնարար որոշումները՝ երկրի ժողովրդական տնտեսության, գիտության ու տեխնիկայի կազմակերպման և կառավարման համակարգերի զարգացման պրոբլեմների մասին գիտությունների ակադեմիայի տեսական մշակումները ժողովրդական տնտեսության օպտիմալ պլանավորման կազմակերպման ու կառավարման դժվարագույն պրոբլեմների վերաբերյալ: Գիտությունների զինանոցը տարեցտարի ավելի ու ավելի է հարստանում մեթոդոլոգիական գիտությունների (Դ2) նվաճումներով, որոնք Դ5 գիտությունների ձևավորման ու զարգացման ելակետային հիմքն են: Կասկածից վեր է, որ երկրի կառավարման համակարգի կա-

տարելագործման ասպարեզում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործումը կնպաստի Դ5 գիտությունների ձևավորմանը։

Գիտությունների համակարգի մոդելից պարզորոշ երևում է, որ Դ5 և մյուս բլոկներն ուղղակի և հետադարձ կապեր ունեն։ Իսկ Դ5-ը ողջ համակարգի կենտրոնական բլոկն է. մի բան, որը լիովին համապատասխանում է այդ սիստեմային գիտությունների դերին ու բնույթին։

Դ5 գիտությունների հետազոտությունների օբյեկտը ժողովրդական տնտեսությունն է, որպես հույժ բարդ, զարգացող և ամբողջական համակարգ, որն իր հերթին բաղկացած է համեմատաբար նվազ բարդ ենթասիստեմներից՝ ճյուղային, հանրապետական ու այլ ռեգիոնալ տնտեսություններից։ Դ5 գիտությունների լուծելիք պրոբլեմներից ամենաբարդն ու դժվարագույնը ժողովրդական տնտեսության կառուցվածքի և ֆունկցիավորման պրոցեսների օպտիմալացումն է (տեսականորեն և գործնականորեն)։

Գիտությունների այս դասն իր հետազոտություններում ելնում է սոցիալիստական հասարակության բարձրագույն մարմինների ծրագրային և դիրեկտիվ ցուցումներից, հենվելով Դ1—Դ4 գիտությունների նվաճումների և գիտատեխնիկական առաջընթացի պրակտիկայի փորձի վրա։ Անհրաժեշտ է նշել, որ ժողովրդական տնտեսության ճյուղերի, հանրապետական և այլ ռեգիոնալ տնտեսությունների զարգացման մակարդակների՝ պատմականորեն գոյացած անհամաչափության պատճառով, Ե5—2—Ե5—4 ենթադասերի լուծելիք խնդիրները կտարբերվեն ինչպես իրենց առանձնահատկություններով, նույնպես և բարդությամբ։ Դ5-ի լուծելիք առաջնակարգ պրոբլեմներից կլինի նաև տնտեսության ենթասիստեմների մակարդակների հավասարեցումը։

Դ5 դասի գիտություններն իրենց «ելքերի» միջոցով տալիս են՝ ա) պրոբլեմների տեսական անալիտիկ լուծման կիրառական գիտական հիմունքները, բ) անալիտիկորեն լուծված պրոբլեմների ներդրման կոնկրետ նախագծեր ու ալգորիթմներ։ Այնուհետև դրանք մասնակցում են այդ նախագծերի ու ալգորիթմերի իրագործման պրոցեսներին և, միաժամանակ, պրակտիկ փորձից ելնելով, կատարում անհրաժեշտ ճշգրտումներ ու լրացումներ։

1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան ՍՍՀՄ-ում ստեղծվում են ձեռնարկությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների, հանրապետությունների, ռեգիոնալ տնտեսությունների և ժողովրդական տնտեսության կառավարման ավտոմատացված համակարգեր։ Հետևաբար, Դ5 գիտությունները կմշակեն այդ համակարգերի օպտիմալ ֆունկցիավորման գիտական հիմունքները և, դրանց հետ մեկտեղ, կիրագործեն վերոհիշյալ պրոբլեմների լուծման նախագծերն ու ալգորիթմերը։

Այսպիսով, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում Դ5 գիտություններն ունեն այդ արարող պրոցեսներն օպտիմալացնողի առաջատար գիտակիրառական դեր։

Օգտագործված գրականություն


1. ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը։ Ե., 1971։
2. Автоматизированные системы управления. М., 1972.
3. Г. М. Добров. Наука о науке. К., 1970.
4. Сб. Наука о науке (перевод с англ.). М., 1966.
5. Б. М. Кедров. Классификация наук. Ч. 1, М., 1961 и ч. 2, М., 1965,
6. Современная научно-техническая революция. М., 1970.


# ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ԵՎ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Այժմեականության բնորոշ գիծը գիտության բուռն զարգացումն է, դրա անմիջական ազդեցությունը տնտեսական ու սոցիալական կյանքի բոլոր կողմերի վրա։ Գիտական հետազոտությունների թափն ու խորությունը ամեն մի երկրի տնտեսական պոտենցիալի հիմնական չափանիշներից են։

Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումը, օրգանական կապի մեջ գտնվելով գիտատեխնիկական առաջընթացի հետ, պահանջում է ապահովել գիտական հետազոտությունների լայն ճակատ, կազմակերպել դրանց արագ օգտագործում, որոնք, իրենց հերթին, կհանգեցնեն գիտության ներդրումների զգալի մեծացման։

Ջոն Բեռնալի տվյալներով, XX դարի նախօրեին, գիտության առաջընթացն աշխարհում իրագործվում էր մոտ 15 հազար գիտնականների ջանքերով։ 1950-ական թվականների կեսերին գիտական ակտիվ գործունեությամբ էին զբաղվում մոտ 400 հազար մարդ։ 60-ական թվականների կեսերին գիտական աշխատողների ընդհանուր թիվը հասնում էր 2 միլիոնի։ Հիշյալ ժամանակահատվածում գիտական հետազոտությունների համար կատարված ծախսերն ավելացել են 400 անգամ։

Համեմատության համար նշենք, որ 1914 թվականին Ռուսաստանում կար ընդամենը 11,6 հազար գիտական աշխատող, 1940-ին ՍՍՀՄ-ում գիտական հետազոտությամբ զբաղվում էր 98,3 հազար, 1971-ի սկզբին՝ 930 հազար մարդ, իսկ գիտության համար հատկացումները հասան 13 մլրդ ռուբլու։ Աճի նման տեմպ չի ունեցել մարդկային գործունեության և ոչ մի ոլորտ։

Գիտական և տեխնիկական զարգացման այս հարաճուն պրոցեսին ուղեկցում է համաշխարհային գիտական գրականության հեղեղը։ Ինֆորմացիայի աղբյուրների կուտակումը հանգեցրել է, այսպես կոչված՝ «ինֆորմացիոն պայթյունի», պատճառ ունենալով հրապարակված փաստաթղթերի կրկնապատկումը յուրաքանչյուր 7—10 տարվա ընթացքում։

Գիտության զարգացումը բոլոր ժամանակներում հարուցում է ինֆորմացիայի բուռն աճ։ Մարդկությունը միշտ էլ ահազանգել է կուտակված մեծաքանակ, անընդհատ աճող ինֆորմացիայի մասին։ Հիշեցեք բաբելոնյան հայտնի ցուցնակը. «Ծանր ժամանակներ են սկսվել, աստվածները զայրացել են, երեխաներն այլևս չեն լսում ծնողներին և ամեն մեկը ձգտում է գիրք գրել»։

Ներկայումս ստեղծվել է այնպիսի իրադրություն, որ աշխարհում կուտակվել է ավելի քան 100 մլն անուն տպագիր աշխատանք, այդ թվում 30 մլն գիրք։ Աշխարհում գիտության բոլոր ճյուղերի գծով տարեկան լույս է տեսնում շուրջ 100 հազար պարբերական և շարունակվող հրատարակություն (որից մոտ 30 հազարը գիտության և տեխնիկայի գծով), տարեկան տպագրելով 3—4 մլն հոդված։ Յուրաքանչյուր օր աշխարհում սկսում է լույս տեսնել

1—2 գիտատեխնիկական նոր հանդես։ Դրանից բացի, ամեն տարի լույս են տեսնում մեծ թվով գիտատեխնիկական հաշվետվություններ, կոնֆերանսների նյութեր և ինֆորմացիոն այլ հրատարակություններ։ Միայն ԱՄՆ-ում ամեն տարի լույս է տեսնում մինչև 150 հազար գիտատեխնիկական հաշվետվություն, ընդ որում դրանց թիվը տարեկան աճում է 30—40 տոկոսով։

Պատենտների համաշխարհային ֆոնդն այժմ արդեն հասել է 13 մլն միավորի և տարեկան աճում է 300—350 հազար անունով։

«Ինչպե՞ս իմանանք,— գրել է ակադեմիկոս Ս. Ի. Վավիլովը,— թե տասնյակ միլիոնավոր հրատարակությունների մեջ որտեղ է թաքնված այն, ինչը խսկապես պետք է տվյալ ընթերցողին։ Ինչպե՞ս շատից ջոկել լավագույնը։ Ինչպե՞ս իսկապես ստանալ պետք եղած գիրքը։ Ժամանակակից մարդը գտնվում է գրադարանների հիմալայների առջև այն ոսկեխույզի վիճակում, որն ավազի զանգվածում պետք է փնտրի ոսկու փոքրագույն հատիկը» (С. И. Вавилов, Советская книга, 1947, № 1, էջ 15)։

Այլ կերպ ասած, ստեղծվել է այնպիսի դրություն, երբ գիտնականներն ու ինժեներներն ի վիճակի չեն հետևելու այն բանին, թե իրենց հետաքրքրող հարցի մասին ինչ նոր բան է հայտնագործվել։ Եղած տվյալները ցույց են տալիս, որ հետազոտությունների և մշակումների վրա ծախսվող միջոցների մինչև 45 տոկոսը անարտադրողաբար է ծախսվում՝ իրենց և կից բնագավառներում կատարված աշխատանքների մասին գիտնականների անբավարար տեղյակ լինելու պատճառով։

Ինֆորմացիան սպառողին հաղորդելու ձևերի, միջոցների և մեթոդների անկատարությունն արդարացիորեն բնորոշվում է որպես ճգնաժամային իրավիճակ։ Ընդ որում, ինֆորմացիոն ճգնաժամի գլխավոր պատճառը ոչ թե ինֆորմացիոն նյութերի բացարձակ քանակն է, ոչ թե ինֆորմացիոն հոսքերի քանակական բնութագիրը, այլ ժամանակակից գիտության ինֆորմացիոն պահանջների բավարարման ստեղծված համակարգի անհամապատասխանությունը։ Լինելով գիտական աշխատանքի և՛ առարկան, և՛ արդյունքը, ինֆորմացիան դարձել է գիտության նորմալ գործունեության կարևորագույն ռեսուրսը։

Ինֆորմացիոն պահանջների և ինֆորմացիա ստանալու գոյություն ունեցող համակարգի հնարավորությունների միջև եղած անհամապատասխանությունն զգում է յուրաքանչյուր հետազոտող։ Դա հաստատվում է և օբյեկտիվ տվյալներով՝ ինֆորմացիայի մեծ ուշացումով, նրա կորուստով և որոնման լուրջ դժվարություններով։

Պրոգրեսի արագացումը պայմանավորված է ո՛չ միայն և ոչ այնքան արձանագրված ինֆորմացիայի կուտակումով, որքան ինֆորմացիան սպառողին հաղորդելու գործը կազմակերպելու մակարդակով։ Այդ իսկ պատճառով, գիտական ինֆորմացիայի որոնումը, մշակումն ու օգտագործումը դարձել են կարևոր պրոբլեմ, որի հաջող լուծումից շատ բանով կախված է գիտատեխնիկական առաջընթացի թափը։ Այդ կապակցությամբ հարաճուն նշանակություն են ստանում գիտական ինֆորմացիայի կուտակումը, մշակումը, պահպանումը, որոնումն ու տարածումը։ Գործունեության այդ բնագավառի բազայի վրա ձևավորվել է գիտական ինքնուրույն դիսցիպլինը՝ ինֆորմատիկան, որն ուսումնասիրում է ինֆորմացիայի հատկությունները և ինֆորմացիոն գործունեության զարգացման օրինաչափությունները։



Գիտական ինֆորմացիան (նկատի են առնվում դարերով կուտակված գի-
տելիքները) մարդկության հիմնական սեփականություններից մեկն է և պե-
տության հարուստ ռեսուրսը։
Պատմական զարգացման տենդենցներից մեկը հասարակության արտա-
դրական ուժերի ձևավորման գործում ինֆորմացիայի դերի բարձրացումն է։
Քանի որ արտադրամիջոցների կատարելագործման աղբյուրը գիտության և
տեխնիկայի տարբեր բնագավառներում ստեղծագործական աշխատանքի ար-
դյունքներն են, ուստի արդյունաբերության մեջ յուրաքանչյուր նոր կատարե-
լագործում հենվում է ինֆորմացիայի աճող ծավալի վրա։ Գոյանում է նոր
հասկացություն՝ արդյունաբերական կամ, ընդհանրապես, նյութական արտա-
դրանքի «ինֆորմացիոն տարողությունը»։
Նյութական արտադրանքի «ինֆորմացիոն տարողության» անընդհատ
աճի կապակցությամբ կարելի է ենթադրել, որ այդ կատեգորիան արտադրու-
թյան հասարակական ծախքերի մեջ կգրավի այն տեղը, որը համապատաս-
խանում է վերարտադրության պրոցեսում նրա տնտեսական դերին։ Ինֆոր-
մացիայի օգտագործման շնորհիվ իրագործվում է արդյունաբերության ամ-
բողջական ճյուղերի տեխնիկական արմատական վերազինումը և երկրի տըն-
տեսական զարգացումը։ Ինֆորմացիան դառնում է տեխնիկական առաջընթա-
ցի անհրաժեշտ պայմաններից մեկը և դրանում լիովին արտահայտվում է
ժամանակակից գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի դերը։
Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում գիտության և տեխ-
նիկայի զարգացման գործում որակական թռիչքը բնորոշվում է գիտության
զանազան բնագավառների և, որպես դրա հետևանք, արտադրության ամե-
նահեռավոր ճյուղերի միջև կապերի ուժեղացմամբ։ Առավել արդյունավետ
հայտնագործություններն ու գյուտերը կատարվում են գիտությունների կցա-
տեղերում (օրինակ, մեքենաշինության մեջ՝ մեխանիկայի, աերոդինամիկայի,
հիդրավլիկայի, էլեկտրաստատիկայի, էլեկտրոնիկայի, պնևմոնիկայի և այլ
գիտությունների կցատեղում)։ Այսպես, տեքստիլային թելերի սկզբունքային
նոր, մանելու ոչ իլիկային եղանակներն առաջացան ավանդական մեխանիկա-
կան իլիկներից հրաժարվելու և մանելու պնևմամեխանիկական, էլեկտրա-
ստատիկական ու հիդրավլիկական եղանակներին անցնելու շնորհիվ։ Համա-
նման զուգորդման վրա են հիմնված տեքստիլային տեխնիկայի մյուս տեսա-
կի՝ անմաքոք ջուլհակության զարգացման առաջադեմ տենդենցները։ Քիմիա-
յի բնագավառում կատարված հետազոտությունների արդյունքները հետա-
քրքրում են ո՛չ միայն քիմիական արդյունաբերության, այլև ժողովրդական
տնտեսության ճյուղերի մեծ մասի ձեռնարկություններին։
Գիտության և արտադրության զարգացման նշված յուրահատկություն-
ներն անհրաժեշտ է հաշվի առնել գիտատեխնիկական առաջընթացի տնտե-
սական խթանման ուղիներն ուսումնասիրելիս։ Ընդ որում, առաջին պլան է մըղ-
վում տնտեսական խթանների որոնման խնդիրը՝ գիտության ու տեխնիկայի
նորագույն նվաճումները ո՛չ միայն ճյուղային, այլև միջճյուղային մասշտաբով
տարածելու ժամանակ։ Դրա համար անհրաժեշտ է մշակել և օգտագործել տըն-
տեսական այնպիսի կատեգորիաներ, որոնք արտացոլեն ստեղծարար աշխա-
տանքի արդյունքները ինչպես գիտության, այնպես էլ արտադրության ոլորտ-
ներում։
Հասարակական վերարտադրության զարգացման մեջ ինֆորմացիայի դե-

րի աճն անդրադարձել է նրա տնտեսական էության և շրջանառության յուրահատկությունների վրա։ Ներկայումս ինֆորմացիայի շրջանառության ավանդական ձևերին զուգահեռ (հաշվետու փաստաթղթերի ներկայացման, բազմաթիվ հրապարակումների տարածման, մասնագետների միջև ինֆորմացիայի անմիջական փոխանակման և այլն) համաշխարհային պրակտիկայում երևան են գալիս այն որպես ապրանք իրացնելու տենդենցներ։ Ընդ որում, ինֆորմացիայի գինը ձևավորվում, սահմանվում է ստեղծագործական աշխատանքի արդյունքներն ապրանքային շուկայում իրացվող արդյունաբերական առարկաների հետ համադրելու պրոցեսում, հաշվի առնելով ո՛չ միայն ինֆորմացիայի ստեղծման վրա կատարված ծախսերը, այլ, առաջին հերթին, նրա արդյունաբերական օգտագործման շնորհիվ հասարակական աշխատանքի հնարավոր տնտեսումը։

Այդ բանը հաստատում են միջազգային լիցենզիոն համաձայնագրեր կնքելու՝ գոյություն ունեցող տնտեսական պայմանները, որոնք նախատեսում են պատենտավորված ինֆորմացիայի գնի սահմանումն ըստ փուլերի։ Սկզբնական վճարումը փաստացի վճարն է բուն ինֆորմացիայի (փաստաթղթերի, գծագրերի և այլ ձևով) համար։ Հետագա վճարումները կատարվում են ամեն տարի՝ պատենտավորված ինֆորմացիան օգտագործելու հիման վրա 5—10 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի փաստացի թողարկումից։

Ինֆորմացիայի գնի ձևավորումը տնտեսական բարդ պրոբլեմ է, որովհետև միշտ չէ, որ հնարավոր է լինում որոշել ինֆորմացիայի ստեղծման համար կատարված ծախսերը։ Ինֆորմացիայի մեջ, ինչպես ապրանքի մեջ, որպես կանոն, ամփոփված է որակյալ մասնագետների բազմամյա ստեղծագործական աշխատանքի արգասիքը։ Հետևաբար, ինֆորմացիայի գինը կարելի է օգտագործել որպես հիմնական ցուցանիշներից մեկը՝ չափելու համար գիտական ինֆորմացիայի օգտակարության աստիճանը ընդհանրապես և գիտական աշխատանքի արդյունքներինը՝ մասնավորապես։

Գիտության մեջ, գիտության և արտադրության, ինչպես նաև ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի միջև ուժեղացող կապերի պայմաններում, ինֆորմացիայի քանակական աճի և տնտեսական շրջանառության յուրահատկություններից ելնելով, անհրաժեշտ է առավել զարգացնել ու կատարելագործել գիտատեխնիկական ինֆորմացիայի համակարգը։ Ուստի և պատահական չէ, որ մեր կուսակցությունն ու կառավարությունը վիթխարի նշանակություն են տալիս գիտատեխնիկական ինֆորմացիայի համակարգի զարգացմանը։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում հատկապես նշված է, որ անհրաժեշտ է բարելավել մեր երկրում գիտատեխնիկական ինֆորմացիան, շահագրգռված ճյուղերն ու ձեռնարկություններն ինչպես հարկն է ապահովել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, արտադրության կազմակերպման ու կառավարման բնագավառի առաջավոր փորձի պարբերական հաղորդումը։ Հանդիսանալով հասարակական արտադրության համակողմանի ինտենսիվացման և դրա արդյունավետության բարձրացման պայմաններից մեկը, գիտատեխնիկական ինֆորմացիան դրանով իսկ դարձել է գիտատեխնիկական առաջընթացի կարևորագույն միջոցը։

Անցած հնգամյակում մեր երկրում ավարտվել է գիտատեխնիկական ին-



ֆորմացիայի համապետական համակարգի կազմակերպումը։ Այդ համակարգն ընդգրկում է 10 համամիութենական, 82 կենտրոնական ճյուղային, 15 հանրապետական ինստիտուտ, 68 տերիտորիալ կենտրոն, ինչպես նաև արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների, գիտահետազոտական և նախագծա-կոնստրուկտորական կազմակերպությունների ավելի քան 9 հազար ինֆորմացիայի բաժիններ (բյուրոներ)։

Երկրի գիտատեխնիկական ինֆորմացիայի ողջ համակարգում ներկայումս աշխատում է մոտ 100 հազար մարդ։

Մեր հանրապետությունում գիտատեխնիկական ինֆորմացիայի գլխավոր կազմակերպության ֆունկցիան կատարում է Գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկատնտեսական հետազոտությունների հայկական գիտահետազոտական ինստիտուտը։ Ինֆորմացիայի ինստիտուտի կազմի մեջ, որպես նրա կառուցվածքային ստորաբաժանում, մտնում է Հանրապետական գիտատեխնիկական գրադարանը։

Ինստիտուտը կոչված է օժանդակելու արտադրության, գիտական հետազոտությունների և նախագծա-կոնստրուկտորական մշակումների արդյունավետության բարձրացմանը, արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արագ ներդրմանը, թողարկվող արտադրանքի անընդհատ կատարելագործմանը, աշխատանքի գիտական կազմակերպման և արտադրության կառավարման առաջավոր մեթոդների լայն արմատավորմանը։ Այդ խնդիրներն ինֆորմացիայի ինստիտուտը կատարում է հայրենական ու արտասահմանյան հետազոտությունների, կոնստրուկտորական մշակումների և արտադրական նվաճումների նյութերի կուտակման, գիտական համակարգման, ձեռնարկությունների, կազմակերպությունների, գիտնականների, մասնագետների ու արտադրության նորարարների տեղեկատու-ինֆորմացիայի ապահովման, գիտատեխնիկական պրոպագանդայի կազմակերպման (մամուլ, հեռուստատեսություն, ռադիո, կինո, ցուցահանդեսներ և այլն), ինֆորմացիոն պրոցեսների ավտոմատացման բնագավառում գիտահետազոտական աշխատանքների կատարման, հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, գիտահետազոտական և նախագծա-կոնստրուկտորական կազմակերպություններում ինֆորմացիայի օրգանների կազմակերպմանն օժանդակելու, ինչպես նաև այդ օրգաններին մեթոդական օգնություն ցույց տալու ճանապարհով։

Ինֆորմացիայի հայկական ինստիտուտում ստեղծվել է գիտատեխնիկական փաստաթղթերի հսկայական, իր նշանակությամբ բացառիկ տեղեկատու ինֆորմացիոն ֆոնդ, որն այժմ բաղկացած է 13 մլն փաստաթղթերից։ Դրա մեջ մտնում են գրքեր, ավելի քան 2000 անուն պարբերական և շարունակվող հրատարակություններ՝ հայերեն, ռուսերեն և օտար լեզուներով, ավելի քան 8 մլն արտասահմանյան պատենտ, ՍՍՀՄ-ում տրված բոլոր հեղինակային վկայականների նկարագրությունները, հայրենական և արտասահմանյան ստանդարտներ, արտասահմանյան արդյունաբերական գրացուցակների մեծ ֆոնդ, գերատեսչական գիտատեխնիկական փաստաթղթերի հարուստ հավաքածու և այլն։ Անհրաժեշտ ինֆորմացիայի որոնման և դրա հետագա օգտագործման համար ինստիտուտում ստեղծվել է մոտ 4 մլն քարտից բաղկացած տեղեկատու ապարատ։

Տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդը գիտության, տեխնիկայի նվաճումների

և արտադրության առաջավոր փորձի լայն պրոպագանդման բազա է։ Այդ ֆոնդը ձեռնարկություններին, կազմակերպություններին և մասնագետներին հնարավորություն է ընձեռում օգտագործելու Հայկական ՍՍՀ-ում, Սովետական Միությունում և արտասահմանում եղած գիտատեխնիկական նորագույն նվաճումների նյութերը։ Տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդի հիման վրա ինստիտուտի աշխատակիցները վերլուծական տեսություններ են պատրաստում՝ համեմատելով հանրապետությունում թողարկվող արտադրանքի մակարդակը համամիութենականի և արտասահմանյանի հետ։

Պատենտային գրականության ֆոնդը գրեթե լրիվին կրկնօրինակում է ՍՍՀՄ-ում (Պատենտա-տեխնիկական համամիութենական գրադարան) եղած արտասահմանյան պատենտների ֆոնդը, պատենտային բյուլետենները և աշխարհի ինչպես զարգացած, այնպես և թույլ զարգացած երկրների պատենտային գրականությունը։ Այդ ֆոնդի ստեղծումն զգալիորեն կրճատեց հանրապետությունում կատարվող գիտահետազոտական աշխատանքների և նախագծա-կոնստրուկտորական մշակումների վրա գործադրվող ժամանակը, ինչպես նաև տնտեսեց այդ աշխատանքների համար հատկացվող մեծ միջոցներ։ Մինչ այդ ֆոնդի ստեղծումը շատ գիտական աշխատողներ, կոնստրուկտորներ և նախագծողներ ստիպված էին պատենտային նյութերին ծանոթանալ Մոսկվայում, Պատենտա-տեխնիկական համամիութենական գրադարանում։ Այդ հանգամանքը, բնականաբար, մեծ անհարմարություններ էր ստեղծում և ձգձգում հետազոտությունների ժամկետները, ուշացնում նոր արտադրանքի թողարկումը։

Ներկայումս ինֆորմացիայի ավտոմատացված որոնում է իրականացվում թեթև և սննդի, շինանյութերի արդյունաբերության ճյուղերում։ 1970 թ. կավարտվի հաշվողական տեխնիկայով և ավտոմատիկայով ինֆորմացիայի որոնման ենթահամակարգի արմատավորումը, որը հետագայում կկիրառվի հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր առաջատար ճյուղերում։ Այդ համակարգն արմատավորվել է միութենական մի շարք կազմակերպություններում, ինչպես և թեթև, սննդի ու ավտոմոբիլային արդյունաբերությունների կենտրոնական ճյուղային գիտատեխնիկական ինֆորմացիայի ինստիտուտներում, ՍՍՀՄ հիդրոմետծառայության կենտրոնում և այլուր։ Ներկայումս ԳՏԻ հայկական ինստիտուտի աշխատակիցներն այդ համակարգը ներդնում են ՌՍՖՍՀ և Լիտվական ՍՍՀ ինֆորմացիայի ինստիտուտներում։

Հանրապետությունում ինֆորմացիոն ծառայության կատարելագործումը՝ գիտնականների, ինժեներների, կոնստրուկտորների և այլ մասնագետների պահանջները՝ իրենց գործունեության բնագավառից նեղ մասնագիտական ինֆորմացիայի ստացումը ապահովելու առումով, շատ կարևոր է ու անհրաժեշտ։

Սակայն այդ ծառայության տեսադաշտից դուրս էին մնում բնակչության լայն շրջանները, որոնց նույնպես պետք էր ինֆորմացիա տալ հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների մասին։

Այդ նպատակով 1963-ի սեպտեմբերից ինստիտուտն սկսեց հրատարակել «Գիտություն և տեխնիկա» ամենամսյա մասսայական ինֆորմացիոն պարբերականը։ Տեղական հեղինակների ինքնուրույն հոդվածներից բացի, պարբերականը հրապարակում է թարգմանական նյութեր հայրենական և արտասահմանյան գիտատեխնիկական պարբերականներից։ Յուրաքանչյուր համար պարունակում է ինֆորմացիոն հարուստ նյութ ՍՍՀՄ-ում և արտասահմանում գիտության ու տեխնիկայի նորությունների մասին։ Մի քանի տարվա ընթացքում պարբերականը ձեռք բերեց լայն մասսայականություն. նրա տպաքանակը 5 հազարից հասել է 20—25 հազարի։

Հանրապետության յուրաքանչյուր ձեռնարկության, կազմակերպության, գիտական աշխատողի և մասնագետի ինֆորմացիայով ապահովելու նպատակով ներկայումս Գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկատնտեսական հետազոտությունների հայկական գիտահետազոտական ինստիտուտի բաժանմունքներ են կազմակերպվում Լենինական, Կիրովական և Ղափան քաղաքներում։ Դրանց առընթեր կկազմակերպվեն նաև Հանրապետական գիտատեխնիկական գրադարանի բաժանմունքներ։ Հանրապետության արդյունաբերական խոշոր կենտրոններում ինստիտուտի բաժանմունքների ստեղծումը կնպաստի ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների պրոպագանդայի բարելավմանը, առաջավոր արտադրական փորձի փոխանակման կարգավորմանը, կդյուրացնի ամենօրյա օգնությունը այդ քաղաքների և մոտակա շրջանների ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների գիտատեխնիկական ինֆորմացիայի բաժիններին ու բյուրոներին։

Հանրապետության ինֆորմացիոն ծառայությունը ներկայումս գիտատեխնիկական ինֆորմացիայի բաժինների, բյուրոների, խմբերի և գիտատեխնիկական գրադարանների լայնորեն ճյուղավորված ցանց է։ Հանրապետության ձեռնարկություններում, գիտահետազոտական և նախագծա-կոնստրուկտորական կազմակերպություններում գործում են ինֆորմացիայի 173 օրգան, 187 գիտական և տեխնիկական գրադարան (1972 թվականի հուլիսի 1-ի դրությամբ)։

Հետազոտությունների և մշակումների ծավալների մեծացումը, գիտական աշխատանքների մակարդակի և ժամանակակից արտադրության տեխնիկական պոտենցիալի բարձրացումը, նոր կոնստրուկցիաների ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծումն ու հների կատարելագործումն այժմ անհնար են առանց գիտատեխնիկական ինֆորմացիայի հստակ կարգավորված ծառայության։

Գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում ինֆորմացիոն գործի կազմակերպումն ու դրվածքը արտադրության կազմակերպման մակարդակի ինդիկատորն են, հետազոտական և ինժեներատեխնիկական աշխատանքի կուլտուրայի չափանիշը։

Գիտատեխնիկական ինֆորմացիայի զարգացումն ու կատարելագործումը մեծ, շատ կարևոր խնդիր է։ Դրա պատշաճ լուծումն ու կարգավորումը էական նշանակություն ունեն ժողովրդական տնտեսության կառավարման հետագա կատարելագործման, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման համար։

Լ. Ֆ. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ
Տեխնիկական գիտությունների թեկնածու, գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկա-տնտեսական հետազոտությունների հայկական գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտոր




Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ՎԵՐՋ ՏԱԼ ՆԱՀԱՆԳԿՈՄԻ ԿՏՐՎԱԾՈՒԹՅԱՆԸ ՄԱՍՍԱՆԵՐԻՑ

*Կարմիրբանակային կոնֆերանսի ավարտման հաջորդ օրը կայացավ կուսակցության նահանգկոմի պլենումը, որտեղ տեղի ունեցած կոնֆերանսի վերաբերյալ ինֆորմացիայով հանդես եկավ Իկոննիկովը։*

*Նա հայտարարեց, որ կայազորում ստեղծված դրությունը վերջին ամսվա ընթացքում ընդունել է աղետալի բնույթ։ Բոլոր զորամասերում պակասում են ջուրը, լուսավորությունը, վառելիքը, պարենամթերքը։ Մոլեգնում են տարափոխիկ հիվանդությունները։ Կայազորի հրամանատարությունը, հաշվի չառնելով ոչ մի բան, թույլ է տալիս ամենակոպիտ սխալներ։ Պարապմունքներին կարմիրբանակայիններին «...հրամայում են դուրս գալ ոտաբոբիկ, չլսելու համար՝ 15 օրվա կալանք, կարգապահությունը դավաղանային է, 8 ժամ շարային պարապմունքներ և դրանցից հետո քաղաքական պարապմունքներ»[1]։*

*Այսպիսի պայմաններում կոնֆերանս հրավիրելու սխալը Իկոննիկովը բացատրեց նրանով, որ ինքը նոր աշխատող է, իսկ Քաղշրջկոմի ապարատը թույլ է։*

*Պլենումում հանդես եկած կոմերիտմիության նահանգկոմի քարտուղար Շոխինը, նկարագրելով կայազորի նյութական ծանր դրությունը, հայտարարեց, որ «...կարմիրբանակայինները սովետական իշխանության կողմն են, բայց ի վիճակի չեն տանելու իրենց դրությունը»։*

*Պոպովը կայազորում ստեղծված դրությունը բացատրեց, ի միջի այլոց, նրանով, որ «հրամկազմը ավելի ուժեղ է կոմիսարներից, Քաղշրջկոմը թույլ է»։*

*Քննադատելով վատ ղեկավարությունը և իրերի ծանր դրությունը կայազորում, ես, ինչպես երևում է պահպանված արձանագրական գրառումներից, պլենումում հանդես եկա բավականին խիստ, բայց, իհարկե, առանց ամեն տեսակի կոպտությունների և անձնական վիրավորանքների։ Հիշեցրի, որ կայազորում ստեղծված դրության և հնարավոր հակահեղափոխական ելույթի մասին նահանգկոմի նիստում ժամանակին նախազգուշացնում էր արտակարգ հանձնաժողովի հատուկ բաժնի պետ Բուրցևը, բայց նահանգկոմի բյուրոյի անդամներն այն ժամանակ թերագնահատեցին ստեղծված իրադրության ամբողջ լրջությունը։ Ընդունված որոշումները դուրս եկան անբավարար, բայց նույնիսկ դրանք էլ չկատարվեցին կայազորի հրամանատարության կողմից, իսկ նահանգկոմը հանգստացավ որոշում ընդունելով և չստուգեց նրա կատարումը։*

*Զվիճարկելով կայազորում ստեղծված ծանր դրության գնահատականը, միմիայն Խանովը հայտարարեց, թե «այն նույնպիսին է, ինչպես և ամբողջ հանրապետության մեջ»։*

*Ես հանդես եկա այդպիսի հայտարարության դեմ՝ որպես ըստ էության անճիշտ և մեզ մոտ՝ տեղում իրերի դրությունը սքողող հայտարարություն։ Ասացի, որ նահանգկոմի բյուրոն «անփույթ և անտարբեր վերաբերմունք ունի գործի նկատմամբ», իսկ դրությունը լարված է։ Այդ հաստատելու համար բերեցի այն փաստը, երբ «Սորմովոյի գործարանում մենշևիկները գաղտնի կերպով հավաքել են 200 մարդ։ Նիժ.-Կոտլինիի բանվորները գտնվում են էսեռների ազդեցության տակ, որոնք կոնֆերանսում դրսևորեցին իրենց լիակատար մարտական պատրաստակամությունը։ Արտակարգ հանձնաժողովը մատնացույց է անում ընդհատակյա կազմակերպությունների գոյությունը բանակում և գավառներում, այս բոլորն ապացուցում է, որ մեր կուսակցական օրգանները կտրվել են աշխատավոր մասսաներից...»[1]։*

*Գլխավոր վտանգն այն է, ասում էի ես, որ նահանգկոմը վատ է աշխատում։ Այն փաստը, որ այդպիսի կոնֆերանսը հրավիրվում է նահանգկոմի քթի տակ առանց նրա գիտության, վկայում է ո՛չ միայն Քաղշրջկոմի սխալի, այլև նահանգկոմի կողմից ղեկավարության բացակայության մասին։ Առաջարկեցի վերջ տալ նահանգկոմի աշխատանքում եղած բյուրոկրատիզմին, նրա կտրվածությանը մասսաներից, կոչ արեցի ընկերներին առողջացնել իրադրությունը։*

*...Այժմ վերհիշելով այս բոլորը, ուզում եմ ասել, որ այն ժամանակվա նահանգկոմում կային, ընդհանուր առմամբ, ոչ վատ, բայց արդեն շատ անփորձ մարդիկ։ Նրանք «փորձանքների» մեջ չէին ընկել, չէին անցել հոկտեմբերյան մարտերի դպրոցը, առանձնապես սուր կոնֆլիկտներ չէին ապրել նաև քաղաքացիական պատերազմի տարիներին (կարմիրբանակային կոնֆերանսում տեղի ունեցած «բունտը» նրանց համար առաջին խոշոր իրադարձությունն էր)։ Այդ պատճառով էլ նրանք այնպես կորցնում էին գլուխները, երբ հարկավոր էր մի ելք գտնել ստեղծված դրությունից դուրս գալու համար։*

*Բայց չի կարելի չընդունել, որ երբ մենք բոլորս կանգնեցինք իրական վտանգին դեմ հանդիման, նահանգկոմի ընկերները ցուցաբերեցին անհրաժեշտ համախմբվածություն և իսկական բոլշևիկյան համերաշխության զգացում։*

*Թվում էր, թե նրանց մեծ մասի մոտ խմբակայնության հետք անգամ չի մնացել։ Օրինակ, հենց այդտեղ՝ պլենումում նրանք իրենց նախաձեռնությամբ, «նկատի ունենալով ստեղծված դրությունը», առաջարկեցին Իկոննիկովին և ինձ մտցնել նահանգկոմի բյուրոյի կազմում։ Այդ առաջարկությունն ընդունեցին։*

*Նահանգկոմի պլենումը հաստատեց նահանգում և կայազորում տիրող ընդհանուր դրության վերաբերյալ իմ առաջարկած բանաձևը, որտեղ նշվում էր հակահեղափոխական ազդեցությունների որոշակի աճը կարմիրբանակայինների շրջանում, երբ նրանք, «...դժգոհ և գազազած լինելով իրենց անտանելի ծանր դրությունից, ընկել են էսեռների ու մենշևիկների կազմակերպված ազդեցության տակ։ ՌԿԿ Նիժնի Նովգորոդի նահանգային կոմիտեն գտնում է, որ դրությունը վտանգավոր է, և կուսակցական ու սովետական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է համարում զլուխ բարձրացնող հակահեղափոխության անհապաղ վերացումը...»։*

*Այդ բանաձևում միջոցառումներ էին նախատեսվում բյուրոկրատիզմի, ձևամոլության, մասսաներից սովետական ու կուսակցական օրգանների կտրվածության դեմ պայքարելու համար, առաջարկվում էր հատուկ ուշադրություն դարձնել աշխատավորության, առանձնապես կարմիրբանակայինների նյութական դրության բարելավման վրա։*

*Նահանգկոմի բյուրոյին հանձնարարվում էր «...համապատասխան դիրեկտիվ և ինֆորմացիա տալ նահանգի կազմակերպություններին. Կենտկոմին իրազեկ դարձնել նահանգում ստեղծված քաղաքական դրությանը. գործկոմի և սովետական մյուս կազմակերպությունների ամբողջ ուշադրությունն ու բոլոր ջանքերն անհապաղ ուղղել կայազորի սանիտարական և նյութական դրության բարելավման նպատակին. լավագույն քաղ. և ագիտաշխատողների արագ տեղափոխման միջոցով ուժեղացնել քաղաքական աշխատանքը կայազորում՝ կրճատելով շարային պարապմունքները, կայազորում բարելավելով ռեժիմը և սանձահարելով չափն անցկացրած հրամկազմին»։*

*Նիստի վերջում պլենումը նույնիսկ որոշում ընդունեց անհապաղ կրճատել «շարային պարապմունքները երկու ժամով, որոնք հատկացվում են քաղաքական աշխատանքին», առաջարկելով նահանգային զինկոմին այդ մասին իրազեկ դարձնել կայազորի բոլոր կարմիրբանակայիններին և հրամկազմին։*

*Իմ առաջարկությամբ որոշում ընդունեցին նաև «հեռացնել զինկոմին, պաշտոնից հանել բաղրաժնի պետին, փոխել հրամկազմի մի մասը, կայազորից դուրս քշել անհուսալի, վնասակար տարրերին»։*

*Այդպիսի որոշումն այն ժամանակների համար, իհարկե, արտասովոր էր և, կարելի է ասել, արտակարգ։ Զինկոմին պաշտոնից հանել կարող էր միայն պահեստային բանակի զորքերի հրամանատար Գոլդբերգը, բայց նա այդ պահին գտնվում էր Կազանում, իսկ մեզ մոտ ստեղծված իրադրությունը թելադրում էր, որ անհրաժեշտ է շտապ միջոցներ ձեռք առնել։*

*Ուստի նահանգգործկոմի նախագահությունը դիմեց ձևական տեսակետից ապօրինի այդ քայլին։ Նոր զինվորական կոմիսար նշանակեցինք Բարսկուն, իսկ բաղրաժնի պետ՝ Իկոննիկովին։*

*Մեր նահանգգործկոմի որոշմամբ նահանգային զինկոմի պաշտոնազրկումը հարուցեց Գոլդբերգի խիստ բողոքը։ Նա արգելեց զինկոմ Իտելսոնին հանձնել գործերը, և սա հրաժարվեց մեզ ենթարկվել։*

*Այն ժամանակ ես առաջարկեցի ժամանակա-*

[1] ЦПА ИМЛ, ф. 17, оп. 12, д. 322, лл. 145—147:

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № № 11, 12, 1972 թ., և 1973 թ. № 1:

[1] Նույն տեղը:

վորապես ձերբակալել նահանգային զինկոմին և քաղբաժնի պետին, մի բան, որը և կատարեց արտակարգ հանձնաժողովը։ Ընդունելով այդպիսի ծայրահեղ որոշում, մենք, իհարկե, լավ էինք հասկանում, որ ռիսկ ենք անում դատվել տրիբունալով։ Բայց ընկերները պաշտպանեցին ինձ, վճռելով, որ ավելի լավ է դատվել տրիբունալով, քան այդպիսի վտանգավոր իրադրության մեջ անգործության մատնվել...

## ԼԵՆԻՆՆ ԸՄԲՌՆՈՒՄՈՎ Է ՎԵՐԱԲԵՐՎՈՒՄ ՄԵՐ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՆ

Իմանալով մեր «ապօրինի» գործողությունների մասին, Գոլդբերգը մեր դեմ ուղղված գանգատով անհապաղ դիմեց Ռազմա-հեղափոխական խորհրդին, Կենտկոմին և ԱՊԽ-ին։

Այդ կապակցությամբ մեկ օր հետո Մոսկվայից Նիժնի եկավ միջգերատեսչական արտակարգ հանձնաժողովը, որին գլխավորում էր հանրապետության Ռազմա-հեղափոխական խորհրդի անդամ Դանիշևսկին[1]։ Հանձնաժողովի կազմում մտնում էին Քաթանյանը[2] (կուսակցության Կենտկոմի կողմից), Ռեզովսկին և Պլյատտը (Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի կողմից), ինչպես նաև Պուզիցկին (հանրապետության հեղտրիբունալի կողմից), մարդիկ, որոնք օժտված էին մեծ լիազորություններով։ Կազանից եկավ նաև Գոլդբերգը։

Հանդես գալով նահանգկոմի բյուրոյի և նահանգգործկոմի նախագահության համատեղ նիստում, Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի հատուկ բաժնի ներկայացուցիչ Պլյատտը հավանություն տվեց մեր միջոցառումներին. «Ընկեր Ձերժինսկին ինձ հանձնարարել է ըստ հնարավորին հարթել ստեղծված դրությունը։ Այստեղ, Նիժնիում, աշխատանք են տարել աչ էսեռները։ Նահանգային զինկոմի հեռացումը լավ տպավորություն է թողել զորամասերում։ Այդ միջոցառումը հոյակապ է և բարերար ազդեցություն է ունեցել իրադարձությունների վրա։ Էսեռներն այստեղ բավականաչափ լավ են աշխատում և գործում են արտասահմանյան հրահանգով»։

Երկու օր հետո կայացավ նահանգկոմի, նահանգգործկոմի և միջգերատեսչական արտակարգ հանձնաժողովի համատեղ նիստը, որը հրավիրված էր Կենտկոմի հանձնարարությամբ։ Այդ նիստում Դանիշևսկին հայտարարեց, որ հանձնաժողովը պետք է պարզի զորամասերում տիրող դրությունը, զինվորական օրգանների աշխատանքի բնույթը, այն հանգամանքները, որոնք հարկադրել են մեզ արտակարգ միջոցներ ձեռք առնել և բացատրություններ ստանալ այդ միջոցառումների առթիվ, ծրագրել, թե հետագայում ինչպես կարգավորել ստեղծված դրությունը, և այլն։

Ինչ վերաբերում է նահանգային նախկին զինկոմ Իտելսոնին, ապա հանձնաժողովը, վերլուծելով և քննության առնելով նրա վերաբերյալ մեր ունեցած ամբողջ նյութը, համոզվեց, որ նա «...ենթակա է պաշտոնազրկման, բայց հարկ չկար նրան ձերբակալել։ Հարկավոր է նրան ազատել և դնել բանակի հրամանատարության տրամադրության տակ»։ Այդ կապակցությամբ ես պարզաբանեցի, որ «...մենք չէինք ենթադրում ձերբակալել Իտելսոնին և այդ արեցինք միայն այն պատճառով, որ նա հրաժարվեց գործերը հանձնելուց, որը կազմալուծիչ ազդեցություն էր գործում»։

Այնուհետև Դանիշևսկին ասաց, որ իր դրած բոլոր հարցերին նիստին ներկա գտնվողները պարտավոր են տալ մանրամասն պատասխաններ, որոնք հիմք կծառայեն լուծելու համար այն հարցը, թե «ճիշտ կամ սխալ են նահանգկոմի և նահանգգործկոմի որոշումները»։

Դանիշևսկին մեզ հաղորդակից դարձրեց զորանոցների այցելությունից ստացած իր նախնական տպավորություններին. «Զորանոցներում չկան ապակիներ, չկա լուսավորություն, տախտամածների վրա չկան ներքնակներ։ Շենքը չի տաքացվում։ Սուպը գրեթե միայն ջուր է, կարտոֆիլը նրա մեջ գցում են առանց մաքրելու։ Ակներև է, որ այստեղ հափշտակումներ են տեղի ունենում»։ Այդ բոլորի մասին ե՛լ ավելի ցայտուն կերպով խոսեց Քաթանյանը. «Ինձ վիճակվել է տեսնել ժամանակրային բանտեր, օթևանատներ, բայց այնպիսի պայմաններ, ինչպիսիք գոյություն ունեն այստեղ՝ զորանոցներում, երբեք չեմ տեսել»։

Արտակարգ հանձնաժողովը Նիժնիում ստեղծված իրադրությունն ուսումնասիրեց մի քանի օր, ամեն օր հանդիպելով կուսակցական ու սովետական ակտիվի հետ և մեկնեց Մոսկվա։

Չեմ թաքցնի, որ մենք այդ ամբողջ ժամանակամիջոցում բավական ծանր ապրումներ ունեինք։ Եվ հանգստացանք միայն այն բանից հետո, երբ իմացանք, որ հանձնաժողովը ի վերջո ո՛չ միայն մեզ դատի չի տվել, այլև արդարացրել է մեր բոլոր գործողությունները։ Իսկ շուտով մենք իմացանք, որ Վլադիմիր Իլյիչը ես ըմբռնումով է վերաբերվել մեր բոլոր ստիպողական գործողություններին. դրա համար մենք բոլորս անկեղծորեն ուրախացանք։

Մի քանի օր անց նահանգկոմը նորից անդրադարձավ կայազորի հարցի քննարկմանը։ Լսեցինք Բարսկու և Իկոննիկովի զեկուցումները, որոնք նշեցին դրության ընդհանուր բարելավումը կայազորում։ Միայն առանձին զորամասերում, հատկապես 60-րդ գնդում և 4-րդ ինժեներական գումարտակում, իրադրությունը շարունակում էր դեռևս լարված մնալ։

Նահանգկոմի այդ նույն նիստում Կրեմնիցկին հաղորդեց, որ Խրամովին և իրեն՝ Կրեմնիցկուն, Նիժնիից ետ կանչելու պատճառով, ինչպես նաև այն կապակցությամբ, որ բյուրոյի անդամ Չելիշևը որպես վերահսկիչ հանձնաժողովի անդամ պետք է աշխատի Մոսկվայում, հարկավոր է ընտրել նահանգկոմի բյուրոյի նոր, մշտական կազմ։

Նա նշեց Խանովի, Կողինի, Միկոյանի, Պոպովի և Ժեխանովի թեկնածությունները։ Առաջին երեքին ընտրեցին միաձայն, Պոպովին երկու, իսկ Ժեխանովին՝ հինգ հոգու ձեռնպահությամբ։ Ցավոք սրտի, Իկոննիկովի թեկնածությունը, որ ես էի առաջադրել, մերժվեց ութ ձայնով ընդդեմ երկուսի. ըստ երևույթին, այս անգամ ես գործ տեսավ հին խմբակայնությունը։ Նահանգկոմի քարտուղար ընտրեցին Պոպովին։ Անձամբ ինձ այն ժամանակ թվում էր, որ քաղաքական տեսակետից նա բոլոր տեղական աշխատողներից ավելի զարգացած է. նա իրեն պահում էր ակտիվ և որոշակի հեղինակություն էր վայելում բնակչության մեջ։ Հետագայում, ճիշտ է, հարկ եղավ հիասթափվել նրանից, բայց դա տեղի ունեցավ արդեն շատ ավելի ուշ...

...Շուտով Մոսկվայից վերադարձած Իշչենկոն նահանգկոմի բյուրոյում պատմեց Մոսկվա կատարած իր ուղևորության արդյունքների մասին։ «Ես Պաշտպանության խորհրդին զեկուցեցի Նիժնիում ստեղծված տրամադրությունների մասին։ Լենինը լրջորեն վերաբերվեց այդ հարցին։ Տրոցկու վերաբերմունքն անբարեհաճ էր։ Ես զեկուցեցի նաև Կենտկոմի քարտուղար Կրեստինսկուն։ Այս բոլորն ազդեց այն բանի վրա, որ Դանիշևսկու հանձնաժողովը մեկնեց Նիժնի։ Ամեն ինչ արդեն կանխորոշված էր, քանի որ Լենինը չէր առարկել տեղական օրգանների գործողությունների դեմ։ Ներկայումս,— հայտարարեց Իշչենկոն,— գործը, ըստ երևույթին, ավարտված է»։

Այո՛, գործն ավարտվել էր նաև այն պատճառով, որ Գոլդբերգը ես, տեղում ամեն ինչ տեսնելով սեփական աչքերով, մեզ համար անսպասելիորեն անմիջապես տրիբունալի դատին հանձնեց կայազորի գրեթե ամբողջ նախկին ղեկավարությանը։ Մեկ և կես ամիս հետո հանրապետության ռազմահեղափոխական տրիբունալի արտագնաց նստաշրջանը նրանց դատապարտեց տարբեր ժամկետների բանտարկության։

Կայազորի կյանքը աստիճանաբար կարգավորվում էր։ Մենք կուսակցական կազմակերպությունից մոբիլիզացրինք մի խումբ երիտասարդ կոմունիստների, նրանց մտցրինք կայազորի քաղաքական ապարատի մեջ, և նրանք համեմատաբար շուտով կարգավորեցին աշխատանքը զորամասերում։ Իր ազդեցությունը կարմիրբանակայինների շրջանում զգալիորեն ուժեղացրեց նաև նոր քաղբաժինը։ Միաժամանակ միջոցներ ձեռք առնվեցին կայազորին տնտեսական օգնություն ցույց տալու համար։ Այդ բոլոր միջոցառումների շնորհիվ հասունացած վտանգավոր իրադրությունը վերացվեց։

Արդեն շատ ավելի ուշ մենք իմացանք մի հետաքրքրաշարժ փաստի մասին։

Դուրս է գալիս, որ մեր կայազորում տեղի ունեցած տագնապալի իրադարձություններից մի քանի օր առաջ արտասահմանում լույս տեսնող մի քանի սպիտակգվարդիական թերթեր արդեն հաղորդել էին Նիժնի Նովգորոդի զինվորական խռովության և այնտեղ էսեռական կառավարության ստեղծման մասին։

Ըստ երևույթին, նրանք շա՜տ էին ուզում այդ բանը։ Բայց, ինչպես այդ արդեն հաճախ է պատահել, նրանք ցուցաբերել էին չափազանց մեծ շտապողականություն և ընկել անհարմար դրության մեջ։

1920 թվականի աշնանը Նիժնիում տեղի ունեցած իրադարձությունները, ըստ էության, արտացոլում էին այն հակահեղափոխական «կրոնշտադտյան» տրամադրությունները, որոնք արդեն այն ժամանակ հասունացել էին մի շարք շըր-

[1] Լոնդոնի համագումարում Կարլ Դանիշևսկին ընտրվել է կուսակցության Կենտկոմի անդամ: 1914 թվականի համաշխարհային պատերազմի առաջին ամիսներին պատերազմի դեմ մղած ագիտացիայի համար ձերբակալվել և աքսորվել է Սիբիր: Փախել է Փետրվարյան հեղափոխությունից մեկ ամիս առաջ: Քաղաքացիական պատերազմի ժամանակ եղել է Ռազմա-հեղափոխական խորհրդի անդամ և արևելյան ռազմաճակատի կոմիսար: Սովետական Լատվիայում եղել է Ժողկոմսովետի նախագահի տեղակալ: Հետագայում՝ Արտաքբանկի նախագահ, ապա՝ Անտառէքսպորտ ընկերության վարչության նախագահ: Այդ պաշտոնում էլ ես հանդիպեցի և մոտիկից ծանոթացա նրա հետ, երբ արդեն արտաքին առևտրի ժողկոմ էի: Նա բազմիցս ընտրվել է Համառուսաստանյան ԿԳԿ և ՍՍՀՄ ԿԳԿ կազմում:

[2] Ռուբեն Պավլովիչ Քաթանյանը (1881—1966), 1903 թվականին ընդունվելով կուսակցության մեջ, ծավալել է ակտիվ հեղափոխական աշխատանք, որի համար բազմիցս ընկել է բանտերը և ենթարկվել աքսորի: 1919 թվականին աշխատել է որպես կարմիր բանակի գլխավոր քաղաքական վարչության քաղբաժնի պետ, իսկ 1920—1921 թթ.՝ ՌԿ(բ)Կ Կենտկոմի ագիտացիայի և պրոպագանդայի բաժնի վարիչ: Այնուհետև դիվանագիտական աշխատանք է կատարել Բեռլինում: Մի քանի տարի ղեկավար աշխատանք է կատարել ՍՍՀՄ դատախազությունում, զբաղվել է գիտա-հրապարակախոսական գործունեությամբ:

ջաններում և չորս-հինգ ամիս հետո վերածվեցին Կրոնշտադտի հայտնի խռովությանը, որն սկսվեց «Սովետներն առա՛նց բոլշևիկների» լոզունգով։

Այդպիսի տրամադրությունների աճը կուսակցական կազմակերպությունները ժամանակին հաշվի չառան ո՛չ Նիժնի Նովգորոդում, ո՛չ էլ Կրոնշտադտում։ Բայց Նիժնիում դրանք սկսվեցին ոչ թե կազմակերպված խռովությունից, այլ խիստ դժգոհության արտահայտումից, որը մեզ հաջողվեց հաղթահարել, թույլ չտալով իրադարձությունների հետագա աննպաստ զարգացում։ Իսկ Կրոնշտադտում այդ տրամադրությունները, ժամանակին թերագնահատված լինելով տեղական կուսակցական կազմակերպության կողմից, վերածվեցին բացահայտ հակահեղափոխական խռովության, որը հարկ եղավ վերացնել զենքի ուժով։ Բայց հենց այնտեղ էլ, Կրոնշտադտում, մենշևիկներն ու էսեռները վերջնականապես մերկացրին իրենց որպես սպիտակգվարդիականության և օտարերկրյա իմպերիալիզմի գործակիցների։

Այսօր հետադարձ հայացք գցելով 1920 թվականի իրադարձությունների վրա, ես երախտագիտությամբ եմ հիշում Սորմովոյի և Կանավինոյի բոլշևիկ բանվորներին և երիտասարդությանը. հենց նրանց կայունության ու հեղափոխական գիտակցականության շնորհիվ վերացավ Նիժնիում հասունացող հակահեղափոխական խռովությունը։ Մենշևիկացող ագիտատորների «Սովետներն առանց բոլշևիկների» կոչերն այն ժամանակ ոչ մի գործարանում պաշտպանություն չգտան։ Նիժնի Նովգորոդի բանվորները հաստատուն կերպով պաշտպան էին կանգնել իրենց հարազատ սովետական իշխանությանը...

## ԴԻՍԿՈՒՍԻԱ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հանրահայտ է, որ ՌԿԿ համառուսաստանյան X համագումարից առաջ Տրոցկին, համառորեն ձգտելով իշխանության, մեր կուսակցության վզին փաթաթեց դիսկուսիա արհմիությունների մասին։ Հանդես գալով արհմիությունների համառուսաստանյան V կոնֆերանսի (1920 թվականի նոյեմբեր) կոմունիստական ֆրակցիայում, նա այնտեղ նետեց «արհմիությունների թափահարման» անհրաժեշտության վերաբերյալ ֆրազը, պահանջեց «պետականացնել», ռազմականացնել դրանք, վկայակոչելով իր ազդեցության տակ գտնվող (այդ ժամանակ նա նաև հաղորդակցության ճանապարհների ժողկոմ էր) տրանսպորտային բանվորների արհմիության և նրա Կենտկոմի (Ցեկտրան) ղեկավարության փորձը։

Ինչպես սկսեց պարզվել ներկուսակցական սրված պայքարի պրոցեսում, տրոցկիստների ելույթի քաղաքական իմաստն այն էր, որպեսզի, օգտագործելով այն ժամանակ մեր երկրի ապրած դժվարությունները, ճգնաժամ առաջացնեն կուսակցության մեջ և հասնեն այն բանին, որ կուսակցությունն ընտրի նրա՝ Տրոցկու գիծը, դրանով իսկ մերժելով զարգացման լենինյան գիծը։

Տրոցկու սկսած պայքարը աշխուժացրեց ամեն գույնի օպորտունիստներին, և շուտով արհմիութենական շարժման մեջ լենինյան գծին հակադրվեցին արդեն մի քանի քաղաքական պլատֆորմներ՝ Տրոցկու և Բուխարինի (սկզբում առանձին-առանձին, իսկ ապա նաև միասին), «բանվորական օպոզիցիայի», «դեմոկրատական ցենտրալիզմի» և մի քանի այլ խմբերի պլատֆորմները։

Իմ «Խոհեր և հիշողություններ Լենինի մասին»[1] գրքում ես բավական մանրամասն պատմել եմ տրոցկիստների դեմ, հանուն լենինյան քաղաքականության, հանուն մեր զարգացման լենինյան կուրսի կուսակցության մղած պայքարի պատմության այդ ծանր և ուսանելի ժամանակաշրջանի մասին։

Պայքարն այն ժամանակ ընդգրկեց մեր ամբողջ կուսակցությունը։ Դիսկուսիան տեղի էր ունենում ամենուրեք։ Առավել սուր՝ Մոսկվայում, Ուրալում, մեզ մոտ՝ Նիժնիում...

1921 թվականի հունվարին Լենինը «Պրավդա»-ում հանդես եկավ «Կուսակցության ճգնաժամը» հոդվածով, կուսակցության մեջ ստեղծված դրությունը բնութագրելով որպես շատ ծանր, ծայր աստիճան լարված։ «Պետք է դառը ճշմարտության ուղղակի երեսին նայելու քաջություն ունենալ,— գրում էր Լենինը։— Կուսակցությունը հիվանդ է։ Տենդախտը ցնցում է կուսակցությանը...»։

Արդեն 1920 թվականի նոյեմբերի վերջին և դեկտեմբերին տրոցկիստներն ու «բանվորական օպոզիցիայի» ներկայացուցիչներն սկսում են իրենց գաղափարները տարածել Նիժնի Նովգորոդի կոմունիստների շրջանում։

Նոյեմբերի 27-ին Քաղաքային շրջանի կոմունիստների ընդհանուր ժողովում քննարկվում էր «Արհմիությունները և նրանց խնդիրները» հարցը։ Ըստ էության «բանվորական օպոզիցիայի» անարխո-սինդիկալիստական գաղափարներն արտացոլող բավական խառնաշփոթ զեկուցումով հանդես եկավ Իշչենկոն, որի մասին այն ժամանակ մտքերի փոխանակության ընթացքում Շմոնինը շատ դիպուկ ասաց. «Իշչենկոյի ճառը մասամբ մենշևիկի և մասամբ էլ անարխո-սինդիկալիստի փաստարկներ է»[2]։ Մի այլ հռետոր (Ժուխովիցկին) ամեն կերպ պայքարում էր ռազմական մեթոդի և վերահսկողության համար, մի բան, որի դեմ մեր ելույթներում կտրականապես առարկում էինք թե՛ ես, թե՛ Խոնինը, ապացուցելով, որ «...ռազմական մեթոդը պիտանի չէ արդյունաբերության համար»[1]։

[1] А. И. Микоян. Мысли и воспоминания о Ленине. М., Политиздат, стр. 101—123

[2] ПАГО, ф. 32, оп. 1, д. 139, л. 29.



Դեկտեմբերին մեզ մոտ տրոցկիստների հետ լուրջ գոտեմարտ տեղի ունեցավ Առափնյա շրջանի կուսակցական ժողովում, իսկ նույն Քաղաքային կազմակերպության մեջ գաղափարական գրոհ սկսեց «բանվորական օպոզիցիայի» ներկայացուցիչ, նահանգկոմի բյուրոյի անդամ Կոզինը, որը, հանդես գալով իմ զեկուցումից հետո, պնդում էր, որ արդյունաբերության ու տրանսպորտի կառավարման օրգաններում եղած բոլոր պոստերը պետք է գրավեն արհմիությունների ներկայացուցիչները և որ արհմիությունները պետք է դիրեկտիվներ տան, իսկ ժողտնտխորհները կատարեն դրանք... Բայց կոմունիստները չգնացին Կոզինի հետևից, նրանք պաշտպանեցին զեկուցման հիմնական դրույթներն այն մասին, որ արտադրությունը պետք է կառավարեն սովետական իշխանության օրգանները արհմիությունների ամենաանմիջական մասնակցությամբ, ընդ որում թե՛ մեկը, թե՛ մյուսները՝ ՌԿԿ ղեկավարությամբ։

«Բանվորական օպոզիցիան» առանձնապես ակտիվացավ Սորմովոյում։ Նրանց պլատֆորմն ստորագրողների մեջ էր նաև Սորմովոյի գործարանի դիրեկտոր Չեռնովը[2], որին պաշտպանում էին կուսակցական կազմակերպության քարտուղար Եգորովը, գործարկոմի նախագահ Սերովը և շրջկոմի այլ անդամներ։

Հունվարի կեսերին ես Սորմովոյի կոմունիստների առջև հանդես եկա սովետների համառուսաստանյան VIII համագումարի վերաբերյալ զեկուցումով։ Պատմեցի, թե համագումարն ինչպես է քննարկել երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման, խաղաղ շինարարության անցնելու խնդիրները, Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պլանի մասին։ Մեծ ուշադրություն հատկացրի արհմիությունների վերաբերյալ VIII համագումարի կոմունիստական ֆրակցիայի ժողովում տեղի ունեցած դիսկուսիային, առանձնապես մանրամասն շարադրեցի Լենինի ելույթը և նրա դիրքն այդ հարցում։

Ինձ զարմացրեց այն, որ վիճաբանությունների ժամանակ հանդես եկած արհմիության գործարանային կոմիտեի նախագահ Սերովը և մյուս հռետորները գլխավորապես շարադրում էին արհմիությունների դերի վերաբերյալ «բանվորական օպոզիցիայի» հայացքները, որոնք նվաստացնում էին սովետների նշանակությունը և կուսակցության դերը։

Ժողովում միաձայն (երեքի ձեռնպահությամբ) ընդունված բանաձևում ասվում էր. «Լսելով զեկուցում սովետների համառուսաստանյան VIII համագումարի աշխատանքի մասին, ՌԿԿ Սորմովոյի շրջանի ընդհանուր ժողովը որոշում է՝ բոլոր ուժերով ջանալ կենսագործել նրա բոլոր որոշումները»։ Սակայն հետևյալ դարձվածքը թեև արտացոլում էր մի քանի ելույթների բնույթը, այնուամենայնիվ տհաճ անակնկալ հանդիսացավ. «Իսկ ինչ վերաբերում է խմբավորումներին, «բանվորական օպոզիցիայի» վարքագիծը համարում ենք ճիշտ և այսուհետև կպաշտպանենք այն»[3]։

Իհարկե, ես հասկանում էի, որ այդ դարձվածքը բանաձևի մեջ է հայտնվել գլխավորապես այն բանի հետևանքով, որ սորմովցիները բավականաչափ քննադատական վերաբերմունք չեն ցուցաբերել տեղական օպոզիցիոներների՝ արտաքուստ գրավիչ, իսկ ըստ էության խորապես դեմագոգիական ելույթների նկատմամբ։ Պարզ էր նաև այն, որ շլյապնիկովականները, օգտագործելով շատ սորմովցիների հետ ունեցած իրենց վաղեմի կապերը, դեռ ժողովից առաջ իրենց անհրաժեշտ ուղղությամբ այստեղ վատ չեն մշակել Սորմովոյի բավական զգալի թիվ կազմող մի խումբ կոմունիստների։

Պետք է ասել, որ այդ ժամանակ դիսկուսիան գտնվում էր իր ամենանախնականստադիայում։ Մեր առաջատար կուսակցական ակտիվիստները, ագիտատորներն ու պրոպագանդիստները, որոնք դեռևս բավականաչափ խոր կերպով ու մանրա-

[1] Նույն տեղը։

[2] Չեռնովը ռուս ինտելիգենտներից էր, ցարի օրոք տարագրվել էր Ռուսաստանից և ետ վերադարձել Փետրվարյան հեղափոխությունից հետո, Լատինական Ամերիկայից։ Թողնում էր քաղաքականապես պատրաստված, կրթված մարդու տպավորություն։ Ունենում էր խելացի, փաստարկված, թեև երբեմն էլ դեմագոգիական ելույթներ։

Անկասկած, նա ընդունակ ադմինիստրատոր ու տնտեսվար էր և, ըստ իմ դիտումների, վատ չէր կատարում մի այնպիսի խոշոր գործարանի դիրեկտորի պարտականությունները, ինչպիսին Սորմովոյի գործարանն էր։

Անարխո-սինդիկալիստական հայացքները որպես «բագաժ» նա բերել էր Լատինական Ամերիկայից, որտեղ մասնակցել էր բանվորական շարժմանը։

Քննադատելով նրա սկզբունքային դիրքը, ես, մասնավորապես, աշխատում էի դա այնպես անել, որպեսզի չխախտեմ նրա՝ որպես գործարանի դիրեկտորի, հեղինակությունը։ Մանավանդ, որ մենք այն ժամանակ ոչ մի հիմք և մտադրություն չունեինք նրան հանել տալու այդ պոստից թույլ տված սխալների համար։

[3] ПАГО, ф. 34, оп. 1, д. 237, л. 51.

մասնորեն ծանոթ չէին կուսակցության և օպոզիցիայի գաղափարական տարաձայնությունների էությանը, միայն նոր էին սկսում ներգրավվել դիսկուսիոն պայքարի մեջ:

Հիշում եմ, թե այն ժամանակ ես ինքս որքան ծանր էի ապրում Սորմովոյի ժողովում ունեցած մեր անհաջողությունը: Ինձ շարունակ թվում էր, թե որպես զեկուցող ես ինչ-որ բան հաշվի չեմ առել, ուստի և չեմ կարողացել այդ ժողովում համոզիչ կերպով և մինչև վերջ մերկացնել «բանվորական օպոզիցիայի» ողջ կեղծությունն ու հակալենինյան էությունը...

Իսկ ինչպե՞ս փոխել սորմովցիների շրջանում եղած այդ բոլոր վատառողջ տրամադրությունները: Ինչպե՞ս նրանց պոկել շլյապնիկովականների ազդեցությունից:

Խոմ մենք չէի՞նք կարող հանգիստ մնալ մի այնպիսի ժամանակ, երբ քաղաքի խոշորագույն բանվորական կենտրոնը փաստորեն գտնվում էր «բանվորական օպոզիցիայի» ձեռքում...

Հարկավոր էր անհապաղ նոր դիսկուսիոն ժողով նախապատրաստել Սորմովոյում: Իսկ ո՞ւմ հանձնարարել այդպիսի ժողովի նախապատրաստումը,— ահա մի հարց, որի վրա բոլորս գլուխ էինք ջարդում, մինչև որ համաձայնության եկանք Իկոննիկովի[1] թեկնածության շուրջը:

Այն ժամանակ Իկոննիկովը Քաղաքային շրջկոմի քարտուղարն էր, հետևում էր ճիշտ կուսակցական գծի, նրա շրջանում գործը բարեհաջող էր: Մինչև հեղափոխությունը Իկոննիկովը կուսակցական աշխատանք էր տարել Սորմովոյում և այնտեղ լայն կապեր ուներ բանվորների հետ: Այդ պատճառով մենք համաձայնության եկանք, որ նա մի քանի օրով տեղափոխվի Սորմովո և, իր վրա չգրավելով օպոզիցիոն տրամադրություններ ունեցող ղեկավարության ուշադրությունը, լինի իրեն ծանոթ հին բոլշևիկ բանվորների բնակարաններում, պարզաբանի նրանց կուսակցության մեջ ստեղծված դրությունը և դիսկուսիայի իսկական իմաստը: Նա պետք է ուղղակի ասի, որ Տրոցկին իրեն հակադրում է Լենինին: Թեև Սորմովոյում տրոցկիստներ չկան, բայց այստեղ տնօրինում են շլյապնիկովականները, իսկ դրանք մի սանրի կտավ են: Եթե Տրոցկու կամ Շլյապնիկովի պլատֆորմը հաղթի և լենինյան պլատֆորմը պարտություն կրի, ապա անուղղելի հարված կհասցվի կուսակցության ղեկավարությանը, և Լենինը կընկնի աշխատանքի չափազանց դժվարին պայմանների մեջ: Ահա թե ինչպիսի հարց է լուծվում այդ միայն առերևույթ «արհեստակցական» դիսկուսիայում: Յուրաքանչյուր բոլշևիկ-բանվոր այդ ոգով պետք է զրուցի կուսակցության գծով մոտիկ ընկերների հետ, որպեսզի նրանք շրջանի դիսկուսիոն ժողովում քվեարկեն Լենինի ու նրա պլատֆորմի օգտին, ընդդեմ Շլյապնիկովի և նրա անարխո-սինդիկալիստական պլատֆորմի:

Ինչպես շուտով տեղեկացրեց Իկոննիկովը, նրա զրույցները բանվորների հետ տալիս էին չափազանց նպաստավոր արդյունք:

Գրեթե ամեն օր ժողովներ էին տեղի ունենում Նիժնի Նովգորոդի բջիջներում: Շլյապնիկովի կողմնակիցները կատաղի կերպով հալածում և պայքար էին մղում նրանց դեմ, ովքեր ակտիվորեն պաշտպանում էին Լենինի պլատֆորմը: Մասնավորապես, հարձակումների համար թիրախ էին ընտրել, մեզնից և Իկոննիկովից բացի, կազմակերպության մեջ կուսակցության հնագույն անդամներից մեկին, ընդհատակի տարիների հեղափոխական շարժման մասնակից, բազմիցս նահանգկոմի անդամ, ինչպես նաև կուսհամագումարների պատգամավոր ընտրված Անդրեյ Իվանովիչ Տագանովին, որի մասին ես արդեն գրել եմ՝ վերհիշելով առաջին օրերը Նիժնիում: Այն ժամանակ Տագանովը գրավում էր ժողովրդական կրթության նահանգային բաժնի ղեկավարի պոստը և լավ էր գլուխ հանում աշխատանքից, բայց նահանգկոմի ղեկավարությունը, բացառապես խմբակային նկատառումներով, որոշեց նրան հանել այդ պոստից: Նրա վրա ուժեղ հարձակումներ սկսվեցին արհմիությունների վերաբերյալ դիսկուսիայի ամենաեռուն շրջանում, երբ նա հաստատակամորեն պաշտպանում էր Լենինյան գիծը և այդ սուր գոտեմարտում, ինչպես ասվում է, չոքեց օպոզիցիոններների ու խմբակայինների բկին:

Հունվարի կեսերին Քաղաքային շրջանի ժողովում «ջրի երես դուրս եկավ» Տագանովի հարցը: Կոմունիստներին, ամենից առաջ նահանգային ժողկրթության բջիջների անդամներին հուզում էր, թե նահանգկոմը ինչու է որոշում ընդունել Տագանովին ետ կանչել իր պոստից: Ժողովին ներկա գտնվող նահանգկոմի անդամներ Կոզինը, Սավելևան և Վորոբյովը պաշտպանում էին նահանգկոմի որոշումը: Իսկ Իկոննիկովը (նույնպես նահանգկոմի անդամ) հայտարարեց, որ Տագանովի հարցը՝ դա կադրերի ընտրության այն վատառողջ սիստեմի ընդհանուր հարցն է, որը գոյություն ուներ նահանգում:

Քանի որ ես նահանգկոմում հանդես էի եկել Տագանովին հանելու դեմ, ապա այստեղ, ժողովում, նահանգային կոնֆերանսից առաջ անցկացվող դիսկուսիայի ընթացքում իրավունք համարեցի ասելու, որ «...Տագանովին երեք տարի «հանդուրժել» են, բայց ահա նահանգային կոնֆերանսի նախօրյակին այլևս չեն կարողանում հանդուրժել... Նույնիսկ նրա զեկուցումը չկարողացան լսել,— այնպե՞ս շտապույթ հարկավոր

[1] Ներկայումս Ն. Ի. Իկոննիկովը անհատական թոշակառու է, ապրում է Մոսկվայում:



էր նրան փոխել: Ամենավատթարը ահա թե ինչն է: Այն նույն ընկերները, որոնք սովետների համագումարի ֆրակցիայում «բանվորական օպոզիցիայի» դեր էին խաղում, ժողովներում լեզու թափելով համակրանք են արտահայտում «բանվորական դեմոկրատիայի» նկատմամբ, իսկ գործնականում անց են կացնում հակառակ քաղաքականություն: Օրինակ, Խանովը և Կոզինը. նրանք այնտեղ «բանվորական օպոզիցիա» էին, իսկ այս հարցում ո՞ւր է նրանց դեմոկրատիան: Դա այլևս չի՛ կարելի հանդուրժել, ամեն ինչ սահման ունի: Անհրաժեշտ է փոխել այն ամբողջ սիստեմը, որ անց է կացնում նահանգկոմում իշխող խումբը»[1]:

Ձայների մեծամասնությամբ (12 դեմով և 8-ի ձեռնպահությամբ) Քաղաքային շրջանի կոմունիստներն ընդունեցին մի բանաձև, որտեղ ասված էր. «1) գտնել, որ Տագանովին ետ կանչելիս նահանգկոմն ու նահանգգործկոմը նահանգային առաջիկա կուսկոնֆերանսի կապակցությամբ ղեկավարվել են խմբակային շահերի նկատառումներով. 2) որ անձնական խմբավորումները վերջնականապես վերացնելով միայն կարելի է ճիշտ ուղի գտնել կուսակցությունն առողջացնելու համար. 3) ընդհանուր ժողովը կարծում է, որ նահանգային XI կուսկոնֆերանսը վերջ կտա անձնական խմբավորումներին և 4) ընդհանուր ժողովը պնդում է, որ վերանայվի Տագանովին ետ կանչելու հարցը»[2]:

Քաղաքային շրջանի կոմունիստները սարի պես պաշտպան կանգնեցին հին բոլշևիկին, լենինյան պլատֆորմի ակտիվ պրոպագանդիստին և լիակատար հաջողության հասան: (Առաջ անցնելով ասեմ, որ շուտով Տագանովին ընտրեցին նահանգային կուսակցական կոնֆերանսի, իսկ ապա նաև ՌԿԿ X համագումարի պատգամավոր):

Մի քանի օր հետո Սերգաչի գավառային կոմիտեի պլենումում ես հանդես եկա սովետների համառուսաստանյան VIII համագումարի ֆրակցիայի աշխատանքի, դիսկուսիայի հարցերի առթիվ Լենինի ճառի վերաբերյալ զեկուցումով: Պլենումի մասնակիցներն ամբողջապես պաշտպանեցին լենինյան պլատֆորմը:

Հունվարի վերջին կայացավ նահանգկոմի ընդլայնված պլենումը շրջկոմների և գավկոմների քարտուղարների մասնակցությամբ, որտեղ լսեցին և քննարկեցին իմ զեկուցումը «Ընթացիկ մոմենտի և կուսակցության X համագումարի խնդիրների մասին»:

Մանրամասնորեն պատմելով կուսակցության առաջիկա համագումարի օրակարգի մասին, ես այդ զեկուցման մեջ հատուկ ուշադրություն հատկացրի արհմիությունների վերաբերյալ դիսկուսիային, հույս հայտնելով, որ, X համագումարում պաշտպանելով լենինյան «տասի պլատֆորմը», կուսակցությունը ճգնաժամից դուրս կգա ամրակուռ և միասնական:

Այդ զեկուցումը ստեղծված իրադրության մեջ պետք է կողմնորոշեր շրջանային ու գավառային կոմիտեների քարտուղարներին: Պլենումում հանդես եկած Սենցովը հենց այդպես էլ նշեց. «Միկոյանի զեկուցումը ես համարում եմ մի փորձ՝ կանխավ տալու պլենումին, առաջիկա գավառային կոնֆերանսներին և նահանգային կոնֆերանսին օրակարգում դրված հարցերը քննարկելու համար...»[3]:

Զեկուցման առթիվ ոչ մի բանաձև չընդունվեց: Բնորոշ է, որ այն քննարկելիս տրոցկիստների կամ «բանվորական օպոզիցիայի» ոչ մի ներկայացուցիչ բացահայտորեն հանդես չեկավ, թեև մի քանի ճառերից դժվար էր որոշել, թե ինչ դիրքի է հետևում հռետորը...

Օրինակ, նահանգգործկոմի նախագահ Խանովը խիստ վերամբարձ ձևով հայտարարեց, թե ինքը քննադատական վերաբերմունք ունի դեմոկրատիայի հարցի վերաբերյալ Տրոցկու, ինչպես նաև Բուբնովի և մյուսների թեզիսների նկատմամբ: Բայց նա բոլորովին չդիպավ «բանվորական օպոզիցիային» (այսինքն՝ նահանգկոմի իր բարեկամներին) և ոչ մի խոսք չասաց, թե ինչ վերաբերմունք ունի լենինյան «տասի պլատֆորմի» նկատմամբ:

Ժողտնտխորհի նախագահ Վորոբյովը՝ տեղային խմբավորման ակտիվ մասնակիցներից մեկը, շատ գրագետ կոմունիստ, նույնիսկ խորամանկություն բանեցրեց, որպեսզի իր բավական ձգձգված ելույթում ընդհանրապես չշոշափի պլատֆորմներից և ոչ մեկը, շատ մշուշապատ ձևով դատողություններ անելով այն մասին, թե Արևմուտքում «կիրառվում է ոչ թե հեղափոխական, այլ էվոլյուցիոն ուղին: Իսկ մեզ մոտ զգացվում է որոշ հեղափոխականություն, մինչդեռ Ռուսաստանում հարկավոր է էվոլյուցիոն մոտեցում տնտեսական շինարարության հարցին... Միությունների նկատմամբ նույնպես անհրաժեշտ է էվոլյուցիոնություն կիրառել»[4]:

Իկոննիկովը ամբողջ կրքոտությամբ հարձակվեց «բանվորական օպոզիցիայի» պլատֆորմի այն մասի վրա, որտեղ այն ժամանակ երկրի ուժերից վեր ամեն տեսակ «բարիքների»՝ ձրի ճաշերի, բնակարանների, տոնամանեղենի, հագուստեղենի և այլ մեծամեծ խոստումներ էին տրվում... «Քիչ է այդ մասին ասել թեզիսներում և համակրանք շահել մասսաների մեջ,— ասում էր նա,— հարկավոր է անել: Իսկ քանի դեռ մենք դուրս չենք եկել պարենային ճգնաժամից,

[1] ПАГО, ф. 1, оп. 1, д. 1194:
[2] Նույն տեղը:
[3] Նույն տեղը:
[4] Նույն տեղը:

այդ խոսքերը կմնան որպես դատարկ հնչյուն, և հարկ չկա դա մատնանշել արհմիությունների վերաբերյալ թեզիսներում։ Դա սոսկ դեմագոգիական խաղ է։ Լենինն ասում է, որ այսպիսի հարցերում չպետք է հավատալ խոսքին։ Ով հավատում է խոսքին, նա անհուսալի ապուշ է։ Ո՞վ է ստորագրել այս թեզիսները։— Շլյապնիկովը, ստորագրել է նաև Զելիշևը, Խանովն ու Կոզինը միանում են նրանց այստեղ»2։

Երբ մի քանի օր անց նահանգկոմի հատուկ նիստում քննարկվում էր «արհմիությունների դերի հարցում նահանգկոմի անդամների տեսակետը պարզելու» հարցը, Խանովն ու Վորոբյովը հանկարծ անսպասելիորեն հայտարարեցին, թե իրենք միանո՞ւմ են «տասի պլատֆորմի» կողմնակիցներին։

Նահանգկոմի ընդլայնված պլենումում քննարկվում էր նաև նահանգային կոմիտեի հաշվետվությունը։ Այդ հաշվետվությունը քննարկելիս նահանգկոմի ղեկավարությունը, առանձնապես նրա պատասխանատու քարտուղար Պոպովը անողոք քննադատության ենթարկվեցին շրջանային և գավառային կազմակերպությունների ելույթներում։

Կարծում եմ, որ Պոպովի՝ որպես կոմունիստի, համար ցայտուն բնութագիր է ծառայում նրա սեփական ելույթը նահանգկոմի այն նույն նիստում, որտեղ պարզվում էր նահանգկոմի յուրաքանչյուր անդամի դիրքը դիսկուսիայում։ Ահա թե ինչ ասաց նա այն ժամանակ. «Ես որոշակի տեսակետ չդրսևորեցի ազատ ժամանակի պակասի պատճառով, որը կարողանայի նվիրել առաջքաշման պլատֆորմներին ծանոթանալուն, բայց որքան որ կարողացել եմ մոտիկից ծանոթանալ դրանց, ապա ամենից ավելի համակրում եմ «բանվորական օպոզիցիային», թեև չեմ ասում, որ վերջնականապես կանգնում եմ դրա վրա, և հնարավոր է, որ մանրամասն ծանոթանալուց հետո հարկ լինի փոխել, կանգնել մի որևէ այլ պլատֆորմի վրա»1։

Այս խոսքերում նա ինքն է ամբողջապես՝ իր ողջ գաղափարական խառնաշփոթությամբ ու անկայունությամբ, «բանվորական օպոզիցիայի» նկատմամբ ունեցած իր համակրանքով։ Եվ այդպիսի մարդը դեպքի բերումով գտնվում էր նահանգկոմի պատասխանատու քարտուղարի պոստում։

(Շարունակելի)

Թարգմ՝ Վ. Գ. ԱՎԱԳՅԱՆԸ

---

2 Նույն տեղը։

# ԱՆՄՈՌԱՑՆԵՐԸ

## ԵՐԵՎԵԼԻ ԾՈՎԱԿԱԼԸ ԵՎ ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆԸ

Սովետական Միության հերոս, Հայաստանի գիտությունների ակադեմիայի պատվավոր անդամ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, պրոֆեսոր, պետական մրցանակի լաուրեատ, ՍՍՀՄ գրողների միության անդամ Սովետական Միության նավատորմի ծովակալի կուրծքը զարդարում էին 23 շքանշաններ ու մեդալներ։



Նրա կոչումների ու աստիճանների այս ոչ լրիվ թվարկումն իսկ բացահայտում է մեր հայրենիքի հավատարիմ զավակի բազմակողմանի գործունեությունը։ Մինչև իր կյանքի վերջը, հաղթահարելով իրեն վիճակված ծանր տառապանքները, Իսակովը մեծ ներշնչանքով աշխատում էր ծովագնացությանը նվիրված և համամիութենական ճանաչում գտած իր պատմվածքների վրա։ Գրական ու գիտական ըստեղծագործությունը, ասես, դարմանում էր իր դժվարբուժելի հիվանդությունը։ Կրքոտ հափշտակվածությունը գործով պահպանում էր ծովակալի ուժերը։ Բժիշկները նրան արգելել էին գրել. սահմանված էր լիակատար հանգըստի ռեժիմ, որը միշտ խախտում էր, հենց որ մի փոքր լավ էր զգում իրեն։ Իսակովը վրդովվում էր, երբ փորձում էին խանգարել հետազոտություններով, պատմվածքներով զբաղվելու։ Տեր ծովակալի եռանդին, աշխատունակությանը կարող էին նախանձել միանգամայն առողջ մարդիկ։

Ապրել նշանակում է ստեղծագործել, օգտակար լինել հասարակությանը։ Այս նշանաբանով է անցել նավատորմավարի ողջ կյանքը։ Բնորոշ է, որ Իվան Ստեպանովիչ Իսակովի հետաքրքրական աշխատությունները նվիրված են ռազմա-ծովային գիտության տարբեր բնագավառներին։ Դրանցում լուսաբանված են նավատորմի մարտական ուժերի, միջոցների զարգացման, ռազմածովային պատմության ու աշխարհագրության հարցերը, բայց առանձնապես բեղմնավոր ու փայլուն են ծովային պատերազմի տակտիկային, օպերատիվ արվեստին ու ստրատեգիային նվիրված նրա աշխատությունները։

Իսակովը հիանալի տիրապետում էր հասարակական զարգացման օրինաչափությունների վերլուծության մարքսիստական մեթոդին և, մանավանդ, սքանչելի գիտեր արդի պատերազմի բնույթն ու էությունը։ Իսակովի բոլոր աշխատություններն աչքի են ընկնում փաստարկման խորությամբ, հիմնված են ինչպես հայրենական, նույնպես և օտարերկրյա բազմաթիվ աղբյուրների վրա, ամենուր ակնբախ է պատմական մոտեցումը հետազոտվող պրոբլեմների նկատմամբ։ Գործնական վիթխարի նշանակություն ունեն Ի. Ս. Իսակովի աշխատությունները նավատորմի և նրա անձնակազմի մարտական ու քաղաքական պատրաստության համար. դրանցից լայնորեն օգտվում են սովետական նավատորմի սպաները։ Իսակովի աշխատություններն աչքի են զարնում ոչ միայն մտքի խորությամբ ու ինքնուրույնությամբ, այլև

շարադրման պարզորոշ, բյուրեղի պես մաքուր լեզվով, պատերազմական իրադարձությունների ու մարտերի ընթացքի գիտական կանխատեսությամբ:

Ի. Ս. Իսակովի **Ռազմա-ծովային նավատորմը Հայրենական պատերազմում** գիրքը գիտահանրամատչելի մեծարժեք աշխատություն է:

Գիտական բազմակողմանի ու խոր պատրաստականությունը, քաղաքացիական պատերազմի մասնակցի անձնական փորձը, խաղաղ շինարարության տարիների ստեղծագործական լարված աշխատանքը, մինչև Հայրենական պատերազմը, Իսակովին հնարավորություն ընձեռեցին նոր շատ բան ներդնելու ռազմա-ծովային նավատորմի պատրաստության գործում, ինչպես հարկն է գնահատելու պատերազմի բնորոշ առանձնահատկությունները:

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ սովետական նավատորմի շինարարության վերջին տասնամյակներում չի եղել որևէ խոշոր իրադարձություն, որին անմիջական մասնակցություն չունենար Իսակովը: Մեծ ջանք ու եռանդ է ներդրել նա **Ծովային ատլասի** նախապատրաստման ու հրատարակման գործում: Ատլասը կազմող գիտաշխատողների շրջանում Իսակովը հաճախ ասում էր. «Եթե մեր պետության ռազմական պատմությունն անջատեք Արևմուտքի ու Արևելքի ռազմական պատմությունից, ապա կաղքատացնեք հայրենական պատմությունը»: Այսպես, **Ծովային ատլասի** հատորների ստեղծման տարիներին աշխատանքի հիմքում դրվեցին Իսակովի խորապես պատճառաբանված խորհուրդները:

Շատ դժվար է մեկ հոդվածում կամ ակնարկում անդրադառնալ սովետական զինված ուժերի վաստակավոր գործիչներից մեկի՝ խոշոր իրադարձություններով հարուստ կյանքին: Այդ պատճառով կփորձենք ընթերցողին ծանոթացնել մեր կուսակցության հավատարիմ զավակի կյանքի որոշ էջերի, առանձին էպիզոդների:

* * *

**1941** թվականի հունիսի 22-ին Լևիտանի հարազատ, թավ ձայնը ռադիոյով հայտնեց. սկսվել է Հայրենական մեծ պատերազմը:

Հաջորդ օրը ՍՍՀՄ ռազմածովային նավատորմի ժողկոմի առաջին տեղակալ, ծովային գլխավոր շտաբի պետ, ծովակալ Իվան Ստեփանի Իսակովին Գերագույն գլխավոր հրամանատարությունն ուղարկեց Բալթիկ ծով՝ ղեկավարելու ծովային ուժերի գործողությունները և դրանք կոորդինացնելու զորքերի մյուս տեսակների գործողությունների հետ: Տագնապալից ու մռայլ այն օրերին ռազմաճակատի Մերձբալթյան հատվածում գերմանացիք ռազմական ուժով մեզ գերակշռում էին և՛ ցամաքում, և՛ ծովում, և՛ օդում: Բալթիական նավատորմը, որ ստիպված էր կռվել երկու ճակատներում, գործում էր անասելի ծանր պայմաններում:

Գերմանացիները ձգտում էին Կարմիր դրոշի շքանշանակիր Բալթիական նավատորմը պաշարել Տալլինում, Կրոնշտադտում և Լենինգրադում, ծովից, օդից ու ցամաքից կատարվող հարձակումներով, գրավել կամ ոչնչացնել սովետական նավերը:

Պատերազմի այդ ծանր շրջանում ծովակալ Իսակովին վիճակված էր ղեկավարել թշնամուն հակահարվածներ տալու պլանի մշակումը: Տալլինը շրջապատման վտանգի տակ էր: Իսակովը մտածված, սառնարյուն, օպերատիվ կերպով ղեկավարում էր մարտական գործողությունները:

Տագնապալից այն օրերին շատ կարևոր էր ճիշտ գնահատել իրադրությունը. ճիշտ ես գնահատել իրադրությունը, հակառակորդի, քո ուժերը, ժամանակն ու տեղանքը, կարող ես և ճիշտ որոշում կայացնել: «Մեծ հայրենականի առաջին ամիսներն էին,— պատմեց ինձ գնդապետ Ն. Ս. Ֆրումկինը,— մի խումբ սպաներ, նրանց հետ և ես, Բալթիական նավատորմի գլխավոր բազայում էինք՝ Տալլինում: Լարված պայքարի ծանր ամիսներին էր: Թշնամին զավթել էր Լատվիան, Լիտվան, Բելոռուսիան. դաժան մարտեր էին տեղի ունենում Սմոլենսկի ուղղությամբ: Ռեալ վտանգ էր սպառնում Լենինգրադին, Մոսկվային...

Բոլորի տրամադրությունը վատ էր. շատ բան դժվար էր բացատրել ոչ միայն նավաստիներին, այլև մեզ: Չէ՛ որ տասնամյակներ շարունակ մեզ դաստիարակել էին այն ոգով, թե մեր հողից ոչ մի թիզ չենք զիջի թշնամուն: Ահա թե ինչու դիմեցինք Իսակովին, խնդրելով գնահատել ստեղծված վիճակը:

«Կիրով» հածանավում էինք: Իսակովը լսեց մեզ ու, մի փոքր մտածելուց հետո, հանգիստ և, ինչպես միշտ, հանգամանալի պատասխանեց. «Մեր երկրի վրա հարձակվելիս ֆաշիստական Գերմանիան ուներ մի շարք առավելություններ, որոնցից և օգտվեց (ու նա թվեց այդ առավելությունները): Սակայն,— շարունակեց Իսակովը,— նկատի ունեցեք՝ հատիչը կամ կտրիչը ես օժտված են հատու, լավ կոփված առաջամասով. այդպես էլ գերմանական բանակն է ու նրա առաջին հաջողությունները, որոնք առհասարակ հարատև չեն: Հենց որ առաջավոր մասը ջախջախվի, կսկսվի գերմանական ողջ բանակի կործանումը»:

Անցավ երեք ամիս. Մոսկվայի մոտ սկսվեց գերմանացիների ջախջախումը: Բոլոր նրանք, ովքեր ծովակալի հետ զրուցել էին հուլիսին, հիշեցին գերմանական բանակին նրա տված



գնահատականը, մի անգամ ևս համոզվեցին, թե ծովակալն ինչպիսի խորությամբ գիտե պատերազմի օրենքները: Էլ չեմ խոսում այն մասին, թե ինչ քաջալերիչ ազդեցություն ունեցավ մեզ վրա ծովակալի կանխատեսությունը, որն ավելի հաստատուն դարձրեց մեր վստահությունն այն բանում, թե գերմանացիների ջախջախումն անխուսափելի է:

Ինչպես հայտնի է, հիտլերյան հրամանատարությունը մեծ նշանակություն էր տալիս բանակների հյուսիսային խմբավորմանը, որի խնդիրն էր գրավել Լենինգրադը: Լենինգրադյան ռազմաճակատի և Բալթիական նավատորմի զորքերը դիմադրում էին ուժեղ հակառակորդի կատաղի գրոհներին, թշնամին ձգտում էր Լենինգրադ, նրա անկումից հետո բոլոր ուժերը Մոսկվայի վրա կենտրոնացնելու նպատակով:

Լինելով Հյուսիս-Արևմտյան, հետագայում՝ Լենինգրադի ռազմաճակատների Ռազմական խորհրդի անդամ, ծովակալ Իսակովը մասնակցում էր մոբիլիզացիայի, Կարմիր դրոշի շքանշանակիր Բալթիական նավատորմի և Հյուսիսային նավատորմի հզորացմանն ու առաջին գործողությունների ղեկավարմանը. հատուկ ուշադրություն էր նվիրվում նավատորմի և համապատասխան ռազմաճակատների զորքերի գործողություններին ու փոխգործողություններին: Ի. Ս. Իսակովն իր ուժերն ու փորձն էր ներդնում Լենինգրադի ծովային պաշտպանության ստեղծման համար, որը հետագայում խոշոր դեր խաղաց հերոս քաղաքի փրկության գործում: Նա մասնակցել է նաև Լադոգայի ռազմական նավատորմիկի ուժերով Լադոգա լճի վրայով հաղորդակցության ստեղծմանը: Այդ ճանապարհը, ինչպես հայտնի է, Լենինգրադի պաշարման ծանր շրջանում բացառիկ նշանակություն ունեցավ ռազմաճակատի մատակարարումն ու բնակչության էվակուացումն ապահովելու գործում և հետագայում կոչվեց «Կյանքի ճանապարհ»:

Իսակովի մասնակցությամբ Լադոգայի ափերին ստեղծվեցին Օսինովեց, Մորյե, Կաբոնա նավահանգիստները: Նա կազմակերպեց Շլիսելբուրգի պաշտպանությունը, որտեղ, մոտիկ պայթած ավիացիոն ռումբից ծովակալը կոնտուզահարվեց. նրա ձախ ականջը խլացավ:

Պետրոգրադի 1919 թվականի պաշտպանության մասնակից, ծովափնյա բերդերի պաշտպանության տեսության հեղինակ, ականավոր նավատորմավար ծովակալին միշտ և ամենուր վիճակվել է թշնամու հրետանում անընդմեջ գնդակոծությանը ենթակա նավերի նավաստիների ու սպաների ծանր ճակատագիրը: Նա սառնարյունությունը չէր կորցնում նույնիսկ այն ժամանակ, երբ ավելի ու ավելի էր պըրկըվում Լենինգրադի պաշարման գերմանաֆաշիստական օղակը, երբ արկերը պայթում էին Նևսկի պողոտայում: Քաղաքի կյանքի այդ ծանր ու տագնապալից շրջանում ծովակալը վճռական միջոցներ էր ձեռնարկում Լենինգրադի հրետանային պաշտպանության կազմակերպման համար: Գործադրվում էին բոլոր ռեսուրսները— նավային հրետանին, հրետանաակնանետային բոլոր մարտկոցները, հրաձգարանների ու բերդապահ զորամասերի հրանոթները:

1943 թ. հանդես գալով սևծովյան նավատորմի թերթում՝ Իսակովը գրել է. «Այժմ, երբ անցել են Հայրենական մեծ պատերազմի երկու տարիները, այնպես վճռականորեն է փոխվել իրադրությունը, որ կարող ենք նշել նավատորմի երրորդ ռազմական օրը և շուրջներս նայել: Որքա՜ն տարբեր է պատերազմի այս՝ ռազմաճակատների նոր, վճռական ճակատամարտերով աչքի ընկնող փուլը: Իհարկե, եղել են հարկադիր նահանջի դառը պահեր, եղել են այնպիսի դաժան պատերազմում անխուսափելի կորուստներ, ստիպված ենք եղել հրաժարվել նախապատերազմյան շրջանի մի շարք կանխակալություններից, բայց այժմյան փուլը— բացառիկ ծանր պայքարի ավելի քան երկու տարիները, չնայած մեր կրած բոլոր դժվարություններին համակում է մեզ հպարտությամբ և հաստատուն հավատով ապագա վերջնական հաղթանակի նկատմամբ:

Այդ փուլը նախորդից բաժանում են Մոսկվայի, Ստալինգրադի համար մղված ճակատամարտերը, Հյուսիսային Կովկասի ազատագրումը գերմանացիներից, Լենինգրադի պաշարման վերացումը» («Красный черноморец», № 183, 1943 г.):

Լենինգրադ... Այս քաղաքի հետ է կապված նավատորմավարի պատանեկությունը...

1894 թվականին, Հայաստանի Հաջիքենդ գյուղում է ծնվել Իվանը: Մի քանի տարի անց նրանք ընտանիքով փոխադրվել են Թիֆլիս, որտեղ, ռեալական ուսումնարանն ավարտելուց հետո նա եկել է Պետերբուրգ: Եկել է իր սրտի կանչով: Մանկուց երազել էր նավատորմ գնալ: Նրան՝ ոչ ազնվական հային, ծովային կորպուս չընդունեցին: Եվ տեխնոլոգիական ինստիտուտի ուսանող Իսակովը դարձավ յունկեր, իսկ երեք ամիս անց՝ «Սև գարդեմարինների» դասարանում էր, ուր ուսանում էին հասարակ ժողովրդի ներկայացուցիչները:

«Առանձին գարդեմարինային դասարանների» բացումը Պետերբուրգում կապված էր ռուսական նավատորմի զարգացման հետ: Պետերբուրգի գործարանների նավիջուցարաննե-

րից հաջորդաբար ծով էին դուրս գալիս գծային նոր, ինչպես և թեթև հածանավեր... Նավատորմին հարկավոր էին երիտասարդ, գրագետ սպաներ:

Շուտով, ուրիշ գարդեմարինների հետ, Իսակովին ևս ուղարկեցին Հեռավոր Արևելք՝ վարժական նավագնացության: Իսակովը եղավ Ճապոնիայի, Չինաստանի ու Կորեայի ծովային սահմաններում:

Ծովային ծառայության մեջ նա հեշտությամբ էր հմտանում: Այդ է ցույց տալիս Իսակովի՝ Առանձին գարդեմարինային դասարանների 1917 թվականի մարտի 25-ի ավարտական վկայականը, ուր բոլոր առարկաները գնահատված են ամենաբարձր նիշով— 12: 1917 թվականին, ավարտական քննությունները հանձնելիս, նա արդեն ուներ ենթասպայի կոչում: Շուտով միչման Իսակովը նշանակվեց Բալթիական նավատորմի «Իզիասլավ» մարտական նավում: «Իզիասլավը» հատուկ տեղ է գրավում նրա կյանքում: Այդ ականակրում նա մասնակցել է Իրբենի նեղուցում տեղի ունեցած պատմական ճակատամարտին. գերմանացիք փորձում էին խորտակել մեր նավերի արգելապատնեշը և դուրս գալ հեղափոխական Պետրոգրադի մոտ: Այդ անհավասար ճակատամարտում բալթիականները հերոսության հրաշքներ ցույց տվին:

1918 թ. փետրվարի վերջերին մեր նավատորմի ավելի քան երկու հարյուր նավեր դուրս գալով Հելսինգֆորսից, ուղղություն վերցրին դեպի Կրոնշտադտ: Երթը տևեց մեկ շաբաթից ավելի: Մեր նավերի, ինչպես և «Իզիասլավի» անձնակազմերը, մարտական պատրաստության մեջ էին, ամեն վայրկյան կղզիներից սպասվում էր թշնամու նավերի հարձակում, գնդակոծություն... Նավի ընթացակամրջի վրա գիշեր-ցերեկ կարելի էր տեսնել ավագ սպա Իսակովին: Պետրոգրադ հասնելուն պես «Իզիասլավը» Նևայով տարվեց վեր՝ Օբուխովյան գործարանի մոտ: Ամռան կեսերին իզիասլավցիներից շատերը ցամաքում մասնակցեցին քաղաքացիական կռիվներին: Ուշ աշնանը, երբ նրանք վերադարձան նավ, պատրաստվում էին «Իզիասլավը» հանձնել երկարատև պահպանման:

1919 թվականի հունիսին Կրոնշտադտի բերդապահ ուժերից երկուսը «Կրասնայա Գորկայի» և «Սերայա Լոշադի» կայազորները դավաճանեցին, զենքերն ուղղեցին կարմիր Կրոնշտադտի դեմ: Սկսվեց մենամարտը, որին մասնակցեց նաև «Կոբչիկ» պահակնավը. Իսակովն այդտեղ ավագ սպա էր, իսկ ավելի ուշ՝ դարձավ նավի հրամանատարը:

Իսակովն ակտիվ մասնակցել է նաև Կրոնշտադտի նավահանգստում մեր նավերի վրա անգլիական տորպեդավոր կատերների հարձակման դիմագրավմանը 1919 թվականի օգոստոսի 18-ին: Ողջ 1919 թվականի ընթացքում Բալթիական նավատորմի նավերը, բանակի հետ մեկտեղ, կռվում էին սպիտակ-գվարդիականների և անգլիական նավատորմի դեմ:

Այդ ժամանակներից անցել էր ավելի քան քսան տարի: Իսակովը, ինչպես 1917—1919 թվականներին, կրկին Լենինգրադի պաշտպանների շարքերում է, իր ողջ ուժերն ու գիտելիքները նվիրաբերում է հարազատ քաղաքի, նավատորմայինի իր օրրանի պաշտպանությանը:

...Անցյալ են դարձել ակտիվ պաշտպանության 900 օրերը: Լենինգրադը դիմացավ, հաղթեց: Ջախջախվել, ետ են շպրտվել գերմանաֆաշիստական գովված, ընտիր բանակները: Հեղափոխական փառքի բաստիոն Լենինգրադը դարձել է անառիկ ամրոց. դրանում կա նաև հայազգի Իվան Իսակովի ջանքերի մասնիկը, այն միչման պատանու, որը հետագայում դարձավ Հյուսիս-Արևմտյան ուղղության գլխավոր հրամանատարի տեղակալ և Ռազմական խորհրդի անդամ:

Դեպքերի բերումով Սովետական Միության մարշալ Գ. Ժուկովը և ծովակալ Ի. Իսակովը հանդիպեցին Հայրենական մեծ պատերազմի սկզբին, Լենինգրադի, Բալթիկայի համար մղվող կատաղի մարտերում: Տեղին է հիշել Ժուկովի խոսքերը՝ ասված պատերազմի նախօրեին, երբ նա Գլխավոր շտաբի պետն էր. «Ինձ հայտնի էր, որ ռազմա-ծովային նավատորմի անձնակազմը լավ է պատրաստված. նավատորմերի, նավատորմիկների և նրանց շտաբների հրամանատարությունները պատրաստ են մարտական գործողությունների: Ռազմա-ծովային նավատորմի գլխավոր շտաբըն այն ժամանակ ղեկավարում էր տաղանդավոր, ձեռներեց, ուժեղ կամքի տեր ծովակալ Ի. Ս. Իսակովը:

* * *

Ի. Ս. Իսակովի մարտական, ղեկավար գործունեությանն անցնելուց առաջ հարկ եմ համարում հիշել իմ հանդիպումը փոխ-ծովակալ Իվան Դմիտրիևիչ Ելիսեևի հետ: Հայրենական պատերազմի սկզբին Սևծովյան նավատորմի շտաբի պետն էր նա: Մեր զրույցը լույս է սփռում Իսակովի՝ այդ բարձրակիրթ, կուլտուրական ու վճռական մարդու գործունեության որոշ կողմերի վրա. մարդ, որն այնպես ներդաշնակորեն զուգակցում էր ռազմիկի և գիտնականի հատկությունները:



«Սևծովյան նավատորմի հածանավերում ծառայելիս,— վերհիշում է փոխ-ծովակալ Ելիսեևը,— Իսակովի անունն ինձ հայտնի էր նրա աշխատություններից: Սևծովյան նավատորմի օպերատիվ բաժնի պետ Իվան Ստեպանովիչը քսանական թվականներին օպերատիվ հարցերի վերաբերյալ կազմել էր տեղեկատու և կանոնադրական բնույթի մի շարք փաստաթղթեր, որոնցով ղեկավարվում էինք պարապմունքների պատրաստման ու անցկացման մեր պրակտիկ աշխատանքում:

1938 թվականին, երբ ստեղծվեց ՍՍՀՄ Ռազմա-ծովային նավատորմի ժողկոմատը, Իվան Ստեպանովիչը նրա ռազմական խորհրդի անդամ էր. ամենքս էլ գիտեինք, որ նրա մասնակցությամբ է նավատորմերում սահմանվել եռաստիճան օպերատիվ պատրաստության կարգը... Կառավարման հարցերում Իսակովը կողմնակից էր պարզության ու որոշակիության:

Իվան Ստեպանովիչը շատ լավ էր տարբերում «անսպասելի» և «հանկարծակի» բառերի նշանակությունը: Մեր պատշաճ օպերատիվ պատրաստությունը,— գտնում էր նա,— հակառակորդին կզրկի մեզ «հանկարծակիի» բերելու հնարավորությունից:

Հենց այդպես էլ եղավ պատերազմի սկըզբին: Ամենուրեք թշնամին հարձակվեց «անըսպասելի», բայց ամենուր չէ, որ «հանկարծակիի» բերեց մեզ: Համենայն դեպս հենց պատերազմի սկզբից թշնամին հանդիպեց նավատորմերի հակահարվածին:

Պատերազմի նախօրյակին Իվան Ստեպանովիչը եկավ մեզ մոտ՝ Սևծովյան նավատորմ, «Ղրիմի պաշտպանություն» կոչվող զորավարժություններն անցկացնելու:

Սևծովյան նավատորմի հրամանատար, փոխծովակալ Ֆ. Օկտյաբրսկին ղեկավարում էր «կապույտ» կողմը, իսկ ես՝ «կարմիր»: «Կապույտ» կողմի խնդիրն էր՝ Օդեսայում դեսանտ պատրաստել և ափ հանել Եվպատորիայում: Իսկ «կարմիրը» պետք է դեսանտին հարվածներ նրա պատրաստման տեղում, ծովով անցնելիս և ափհանման շրջանում: Զորավարժությունները, Իսակովի ընդհանուր ղեկավարությամբ, անցան շատ լարված և ցույց տվին նավատորմի՝ կարևոր խնդիրներ լուծելու պատրաստականությունը:

Երբ ավարտվեցին զորավարժությունները, և մենք պատրաստվում էինք վերլուծելու արդյունքները, Իսակովին Մոսկվա կանչեցին: Հասկացանք, որ այդ կապված է միջազգային դրության լարվածության սրման հետ:

...Զորավարժությունների վերլուծություն չեղավ: Սկսվեց պատերազմը...

Օդեսայի պաշտպանության էպոպեային հաջորդեց Սևաստոպոլի պաշտպանությունը: Վերջինիս վրա առաջին գրոհի սկզբին՝ 1941 թվականի նոյեմբերի 12-ին, Գերագույն գլխավոր հրամանատարության զորակայանի հրամանով ես մեկնեցի Կովկաս՝ Տուապսե, իսկ Սևծովյան նավատորմի հրամանատար, փոխծովակալ Ֆ. Օկտյաբրսկին գլխավորեց Սևաստոպոլի պաշտպանությունը»:

Շուտով ետ մղվեց Սևաստոպոլի վրա առաջին գրոհը, և հակառակորդը, կենտրոնացնելով իր ռեզերվները, պատրաստվեց նոր գրոհի: Դեկտեմբերի 17-ին կատաղի հարձակումներ սկսվեցին Սևաստոպոլի վրա: Դա արդեն երկրորդ գրոհն էր:

Հենց այդ ժամանակ դեսանտային խոշոր գործողություն էր պատրաստվում Կերչի թերակղզում: 1941 թվականի հոկտեմբերի 20-ին Գերագույն գլխավոր հրամանատարությունը Իսակովին ուղարկեց Սևծովյան նավատորմի և Անդրկովկասյան ռազմաճակատի հրամանատարությանն օգնելու: Կերչ-Թեոդոսիայի գործողությունը ձախողեց նաև թշնամու երկրորդ գրոհը Սևաստոպոլի վրա: Հակառակորդն ըստիպված էր երկու դիվիզիա հանել Սևաստոպոլի մատույցներից և ուղարկել Թեոդոսիա:

1941 թվականի դեկտեմբերի առաջին օրերին հայտնի դարձավ, որ ճապոնացիները հարձակվել են ԱՄՆ-ին պատկանող Պիրլ-Խարբորի վրա: Խաղաղ-օվկիանոսյան նավատորմի մարտական պատրաստությունը և Հեռավոր-Արևելյան հատուկ բանակի հետ նրա ունեցած կապերն ստուգելու համար Գերագույն գլխավոր հրամանատարությունն այնտեղ ուղարկեց Իսակովին:

Թշնամին շարժվում էր դեպի Ղրիմ ու Կովկաս: Նովոռոսիյսկի համար մղված մարտերի մասնակից Իսակովն այդ ծանրագույն օրերի մասին կարճ ու արտահայտիչ գրել է իր օրագրում:

«Առաջադրանքն էր՝ կոորդինացնել Սևծովյան նավատորմի և ռազմաճակատի (ներառյալ Սևաստոպոլի պաշտպանությունն ու նրա ռազմապաշարի և սննդի մատակարարումը Նովոռոսիյսկից ու Տուապսեից) գործողությունները և ղեկավարել Ազովյան նավատորմիկի օպերատիվ գործունեությունը, որն անմիջականորեն ենթարկված էր Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի շտաբին»:

Այդ ծանր օրերից մի օր ռազմանավ եկան Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի հրամանատար Ս. Մ. Բուդյոննին և նրա տեղակալ Ի. Ս. Իսակովը: Փոխ-ծովակալ Ի. Դ. Ելիսեևը և Սևծովյան նավատորմի ռազմական խորհրդի անդամ Ի. Ի. Ազարովը դուրս եկան ուղեկցելու՝ դիմավորելու պետերին: Քիչ անց





նրանք տեսան Կրասնոդարից եկող, խիստ վընասված մարդատար մի ավտոմեքենա. առջևի խցիկի ապակիները ջարդուփշուր էին եղել, մեքենայի թևերն ու թափքը տրորված էին: Արյունոտ ու փոշոտ էր մեքենայում գտնվող Իսակովի դեմքը: Բարևելուց հետո Ելիսեևը հարցրեց. «Ձեզ ի՞նչ է պատահել, ծովակալ»: Իսակովի փոխարեն պատասխանեց Սեմյոն Միխայլովիչը մոտավորապես այսպես. «Ճանապարհին ես ու ձեր ծովակալը կովեցինք և, տեսնո՞ւմ եք, էնպես նախշեցի, որ մյուս անգամ էլ կռիվ չանի»:

Իր կյանքում շատ բան տեսած Սեմյոն Միխայլովիչը կատակել կարող էր բոլոր պարագաներում: Իրականում մարդատար մեքենան բախվել էր խճաքար տանող բեռնատարին: Վերջինիս գրեթե ողջ բեռը լցվել էր մարդատար մեքենայի վրա, վնասել Ի. Ս. Իսակովին: Ծովակալը մեծ փորձանքից էր փրկվել:

Բուդյոննին «Տաշքենդ» նավ բարձրացավ առանց Իսակովի: Հաճանավում Բուդյոննին ճառ արտասանեց: Վերլուծելով պատերազմական իրադրությունը՝ հայտնեց, որ նավի ողջ անձնակազմը պարգևատրվել է շքանշաններով: «Տաշքենդի» անձնակազմն արժանի էր դրան. ոչ մի նավ այնքան շատ չէր հասել պաշարված Սևաստոպոլին օգնության, որքան այն:

1942 թվականի հուլիսի սկզբին ավարտվեց Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը... Սևծովյան նավատորմը, Իսակովի ղեկավարությամբ, արել էր այն ամենը, ինչ կարող էր:

Հենց որ Նովոռոսիյսկի մոտ ռազմաճակատը կայունացավ, սկսվեց Տուապսեի պաշտպանական գործողությունը. ծովակալ Իսակովն այստեղ ևս ղեկավարում էր բանակի ու նավատորմի փոխգործողությունը, մինչև...

Հոկտեմբերի 4-ը ողբերգական օր եղավ Իվան Իսակովի համար: Ռազմաճակատի Տուապսեի հարվածի առաջավոր գծում էր նա, թշնամու ավիացիայի պայթած ռումբի բեկորից ծանր վիրավորվել էր նրա ազդրը, որի հետեվանքով (մեծ ուշացումով) և կտրեցին ձախ ոտքը: Այդ լուրը ցնցեց նավաստիներին, որոնք Իսակովին ճանաչում էին թե՛ որպես զորավար և թե որպես բացառիկ հմայիչ մարդ:

1944 թվականի կեսերից Ի. Ս. Իսակովը նըշանակվեց ռազմածովային նավատորմի գըլխավոր հրամանատարի տեղակալ և ռազմածովային ուժերի Գլխավոր շտաբի պետ (մինչև 1947 թ. փետրվարը), թեև արդեն ոչ լիաուժ, բայց լի նորանոր մտահղացումներով: Նրա նախաձեռնությամբ Գլխավոր շտաբում ստեղծվեց «Ականազերծման հետպատերազմյան բաժինը», որը ձեռնամուխ եղավ այդ շատ կարևոր ու վտանգավոր գործին: Իսակովը ղեկավարում էր «Պատմական բաժինը», ուսումնասիրում նավատորմի տեսական պրոբլեմները:

Ոտքի մի քանի կրկնահատումների հետևանքով, հաշմանդամ ծովակալը, մեծ մասամբ գամված էր անկողնուն, բայց հայրենիքին օգտակար լինելու, կյանքն իմաստալից շարունակելու բուռն ձգտումով Իսակովը, 1951 թվականից սկսած, ավելի հաճախ էր զբաղվում գիտական ու գրական գործունեությամբ:

Իվան Իսակովը ջերմորեն սիրում էր նավատորմը, նա իր ողջ ուժերը նվիրաբերեց այդ գործին, որի զարգացման, կատարելագործման ու հզորացման մարզում վիթխարի ավանդ ներդրեց ականավոր նավատորմավարն ու տեսաբանը:

ԱՇՈՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

---

ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի 1972 թ. № 12-ի 90-րդ էջի ներքևից 11-րդ տողում պետք է կարդալ «...մեկ տրիլիոն 625 միլիարդ ռուբլի»։*

---




Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

**Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:**

*ՎՖ 05628 Պատվեր 65 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$։ Տիրաժ 14.500 Գինը 25 կոպ.։*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 7/II 1973 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։*


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պատերազմ և հեղափոխություն: *Դասախոսություն 1917 թ. մայիսի 14-ին (27-ին)։ «Հայաստան» հրատ., 1972։*

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Երիտասարդության մասին *(ժողովածու)։ Մ.*, «Молодая гвардия» *հրատ., 1972։*

*Զ. Գ. Ապրեսյանի կազմած այս ժողովածուում զետեղված են քաղվածքներ մարքսիզմի հիմնադիրների աշխատություններից, հոդվածներից, նամակներից, ինչպես նաև ասույթներ, որոնցում արտացոլված են նրանց հայացքները երիտասարդության դաստիարակության, նրանց գործերի մասին։*

ԶՈՐԻՆԱ Ն. Գ. և ՍԱՎԵՆԿՈՎ Ա. Ա.— Լենինը և կուսակցական հրապարակախոսությունը: *Լենինգրադի համալս. հրատ., 1972։*

ԿՈՒԴՐՅԱՎՑԵՎ Ա. Ս., ՄՈՒՐԱՎՅՈՎԱ Լ. Լ. և ՍԻՎՈԼԱՊ-ԿԱՖՏԱՆՈՎԱ Ի. Ի.— Լենինը Բեռնում և Ցյուրիխում: *Հիշարժան վայրեր։ Մ.*, Политиздат, *1972։*

ՅՈՒՔԲԱՇՅԱՆ Բ. Տ.— Արտացոլման լենինյան տեսությունը և գրականությունը: *«Հայաստան» հրատ., 1972։*

ԳԵՄԿՈՎ Հ.— Ավգուստ Բեբել *(թարգմանություն գերմաներենից)։ Մ.*, Политиздат, *1972։*

*Բեբելի կյանքն ու գործունեությունն արտացոլող այս գիրքը վեր է հանում այն անդուլ ու համառ պայքարը, որ մղել է նա հանուն մարքսիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հաղթանակի։*

ՎՈՅՆՈՎԻՉ Վ.— Վստահության ատիճանը *(Վիպակ Վերա Ֆիգների մասին)։ Մ.*, Политиздат, *1972։*

*Հեղինակի այս առաջին պատմական երկը նվիրված է ականավոր կին նարոդովոլեցհեղափոխականին։ Այնտեղ ցույց է տրված, թե ինչպես է հրապուրվել նա ժողովրդի ազատագրության գաղափարներով, գնացել դեպի ժողովուրդը, ապա արտացոլված են նրա հիասթափությունները, դեգերումները,* «Народная Воля»*-ի հիմնումը։ Գրքի շատ էջեր նվիրված են Ֆիգների գաղափարակից ընկերներին՝ Ա. Միխայլովին, Ա. Ժելյաբովին, Ս. Պերովսկայային և այլոց։*

ԿՈԶԼՈՎԿԻՆԱ Ե. Դ.— Արդյունաբերության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները գործողության մեջ: *Մոսկվայի համալս. հրատ., 1972։*

ՍՄԿԿ համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում և որոշումներում: *1898—1971։ Ութերորդ հատոր 1959—1965։ Մ.*, Политиздат, *1972։*

Մարքսիստական-լենինյան փիլիսոփայություն *(մաս 1-ին) դիալեկտիկական մատերիալիզմ։ Ուսումնական ձեռնարկ։ Մ.*, «Мысль» *հրատ., 1972։*

Քրեստոմատիա ՍՄԿԿ պատմության: *Մաս II. մարտ 1917—1925 թ.։ Դասագիրք բուհերի համար։ Մ.*, «Высшая школа» *հրատ., 1972։*

ՄՈՎՍԻՍՅԱՆ Ռ. Լ.— Կուսակցության ղեկավար դերի աճը կոմունիստական շինարարության արդի էտապում: *Ե. համալս. հրատ., 1972։*

Ընդդեմ բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսության: *Հոդվածների ժողովածու։ Մինսկ, Բելոռուսիայի պետհամալսարանի և ԳԴՀ Իյենի համալսարանի հրատ., 1972։ (Գիրքը տպագրված է ռուսերեն և գերմաներեն)։*

ՏՐՈՒԽԱՆՈՎՍԿԻ Վ. Գ.— Ուինստոն Չերչիլ: *Քաղաքական կենսագրություն։ «Հայաստան» հրատ., 1972։*

ԿՈՐՈԼԿՈՎ ՅՈՒ. Մ.— Կիո Կու Միցու— Խիստ գաղտնի. *վտանգի դեպքում այրել։ Ժամանակագրական վեպ (Զորգեի մասին)։ Մ.*, «Советский писатель» *հրատ., 1972։*

ՊԱԼԱԺՉԵՆԿՈ Ս.— Պարտիզանական հրամանատարը *(Սովետական Միության հերոս Ս. Վ. Ռուդնևի մասին)։ Մ.*, Политиздат, *1972։*

Գինը 25 կ.:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՔՆԵՑՆՈՒՄ Է ՀԵՌՎԻՑ

*Քիշինևում ստեղծվել է հիպնոսիչ սարք, որը բուժում է ներաստենիան, անքնությունը, հիպերտոնիկ հիվանդությունները, բրոնխային ասթման, կակազումը: Նույնիսկ խիստ անքնությամբ տառապողը այդ սարքավորման օգնությամբ արագ նիրհում, ապա քնում է:*

*Բուժման իմաստն այն է, որ ապարատը ներգործում է հիվանդի ուղեղի վրա՝ էլեկտրադաշտի ռիթմիկ իմպուլսների, լույսի, ձայնի, ջերմության միջոցով և ճիշտ ֆիզիոլոգիական ռիթմ առաջացնում ներվային սիստեմում ու ներքին օրգաններում: Ի տարբերություն էլեկտրական քնի, էլեկտրահիպնոսի ժամանակ հիվանդին չեն հագցնում նրա գրգռիչ էլեկտրոդները, քնեցումը կատարվում է հեռուստ: Իմպուլսային բուժման հեռուստագործ ապարատը (ԻԲՀԱ) կոչվում է «Лида»:*

*Արդեն թողարկվել է այդ սարքավորման փորձնական պարտիան:*

### ՏԵՏՐԱՑԻԿԼԻՆԸ ՀԱՅՏԱԲԵՐՈՒՄ Է ՈՒՌՈՒՑՔԸ

*Վերջերս Ա. Վ. Վիշնևսկու անվան վիրաբուժության ինստիտուտի աշխատակիցները 140 վիրաբուժական հիվանդների վրա փորձարկել են տետրացիկլինի լուսածորման մեթոդը. նրանցից 84 մարդ տառապում էր ստամոքսի քաղցկեղով, իսկ մնացածներն ունեին ստամոքսի ոչ չարորակ հիվանդություններ: Առաջին խմբի հիվանդների 75 տոկոսի մոտ տեստը տվեց դրական ռեակցիա, իսկ երկրորդ խմբի 80,4 տոկոսի մոտ՝ բացասական: Փորձարկման ժամանակ օգտագործվել են տետրացիկլինի շարքի հինգ տարբեր պրեպարատներ: Առավել ներգործուն էին դիմեթիլքլորտետրացիկլինը, օքսիտետրացիկլինը և գլիկոցիկլինը:*

*Գիտնականները հանգեցին այն հետևության, որ տետրացիկլինային լուսածորման մեթոդը կարելի է կիրառել որպես լրացուցիչ միջոց՝ ստամոքսի քաղցկեղի ախտորոշման համար:*

### ՆՈՐ ՍԻՆԹԵՏԻԿ ԹԱՂԱՆԹ

*Այն պատրաստել են ԳՖՀ-ի քիմիկոսները. նոր թաղանթը լավ է դիմանում մինչև C 200 աստիճան ցրտին, և C 225 աստիճան ջերմությանը: Հավանաբար այն կկիրառվի տիեզերական հետազոտությունների բնագավառում և ավիացիայում: Առայժմ օգտագործվում է միս, թռչուն, ձուկ փաթեթավորելու համար: Այդ մթերքները կարելի է եփել առանց փաթեթից հանելու և հետո այդ թաղանթն օգտագործել որպես յուրօրինակ ափսե:*

### ԻՐՈՔ ԴԱ ՃՇԳՐՏՈՒԹՅՈՒՆ Է

*Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ինժեներական երկրաբանության գերճշգրիտ չափումների ավտոմատացման լաբորատորիայի աշխատողներ Կ. Գյունաշյանը, Վ. Պապյանը, Ռ. Մովսիսյանը, Ի. Տապլաշվիլին և Յու. Աբրահամյանը հեղինակ են 15 գյուտերի: Նրանց ստեղծած լուսահեռուստաչափը կես կիլոմետր տարածությունը չափելիս սխալվում է ընդամենը մեկ միլիմետր՝ իսկ հիդրոստատիկ նիվելիրը գործում է ± 20 միկրոն ճշգրտությամբ:*

### ՈՐ ՇՈԳ ՉԼԻՆԻ

*Կլիմայագետ-ինժեներներն ստեղծել են անդրադարձնող ապակի, որի շնորհիվ ամենաշոգ օրերին իսկ սենյակում զով է լինում: Այն բաղկացած է ապակու երկու բարակ շերտերից, որոնց միջև դրվում է արծաթյա կամ ալյումինի շատ բարակ, թափանցիկ թաղանթ. այն հայելու պես անդրադարձնում է արևի ճառագայթները: Եթե մեկ քառակուսի մետր սովորական ապակու միջով ժամում թափանցում է 460 կիլոկալորիա, ապա անդրադարձնող ապակու միջով՝ ընդամենը 175 կիլոկալորիա ջերմություն:*



*Օգնություն*
ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԶԱՐԳԱՑՈՂ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ*

ՅՈՒ. ԳԱՎՐԻԼՈՎ

*Արդի ժամանակաշրջանում հակաիմպերիալիստական պայքարի կարևոր բաղկացուցիչ մասն են կազմում այն ուժերը, որոնք աճել են Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման բազայի վրա: Զարգացող շատ երկրներում, նշվում է կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ազգային ազատագրության համար մղվող պայքարը գործնականորեն սկսել է վերաճել ինչպես ֆեոդալական, այնպես էլ կապիտալիստական շահագործողական հարաբերությունների դեմ մղվող պայքարի: Հենց այդ գործոնով էլ այժմ որոշվում է զարգացող երկրների բանվորական և կոմունիստական շարժումների դերը համաշխարհային հեղափոխական պրոցեսում:*

### 1

*«Զարգացող երկրներ» հասկացությունը որոշ իմաստով պայմանական է, քանի որ այդ հասկացության առումով միավորվող աֆրիկա-ասիական և լատինամերիկյան երկրներում, ուր այժմ ապրում է մեր մոլորակի բնակչության կեսից ավելին, մեկը մյուսից տարբերվում են սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման մակարդակով, աշխարհագրական և էթնիկական պայմաններով:*

*Լատինական Ամերիկայի երկրներում այժմ արդեն բնակչության մեծ մասը զբաղված է գյուղատնտեսական արտադրության ոլորտից դուրս: Այստեղ ստեղծվել է մեծաթիվ և մեծ չափերով համակենտրոնացված արդյունաբերական և գյուղատնտեսական պրոլետարիատ: Արդյունաբերական 15—16 մլն բանվորներ իրենց երկրների տնտեսական, հասարակական և քաղաքական կյանքում արդեն վճռական դեր են խաղում և հասել են քաղաքական ու արհմիութենական կազմակերպվածության համեմատաբար բարձր մակարդակի:*

* *Տպագրվում է որոշ հապավումներով:* Խմբ.:

լատինաամերիկյան 24 երկրներում աշխատավորության պայքարը ղեկավարում են մարքս-լենինյան կուսակցությունները։

Ասիայում և Աֆրիկայում բնակչության զգալի մասը կապված է հնավանդ գյուղատնտեսական արտադրության հետ։ Աֆրիկա-ասիական երկրների մեծ մասում երիտասարդ բանվոր դասակարգը դեռ չի դարձել հակաիմպերիալիստական պայքարի առաջատար ուժ, «դասակարգ իր համար»։ «...Պատմական իրադրությունն այնպես դասավորվեց,— ասաց կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— որ Ասիայի և Աֆրիկայի պետությունների մեծ մասում դեռևս չկա խոշոր արդյունաբերություն, դեռևս չի ձևավորվել բանվոր դասակարգ։ Իսկ այնտեղ, որտեղ ինդուստրիալ զարգացումն է ծավալվում, բանվորական շարժումը լուրջ դիրքեր է նվաճել։ Պայքարին ակտիվորեն մասնակցում է նաև այդ երկրների գյուղատնտեսական պրոլետարիատը։ Կասկածից վեր է, որ առջևում է իմպերիալիզմի և նրա դաշնակիցների դեմ երիտասարդ ազգային պետությունների բանվոր դասակարգի պայքարի ամենալայն զարգացումը։ Վերջին հաշվով հենց բանվոր դասակարգը կխաղա որոշիչ դեր աշխարհի այդ շրջանում»։

«Երրորդ աշխարհի» երկրներում ազատագրական պայքարի պայմաններն ու մասշտաբները միանման չեն։ Նրանք, ամենից առաջ, որոշվում են դասակարգային ուժերի հարաբերակցությամբ, ինչպես միջազգային ասպարեզում, այնպես և ամեն մի զարգացող երկրում։ Այսպես, կապիտալիստական ուղիով ընթացող երկրներում սոցիալ-տնտեսական զարգացման բնույթը տարբեր է այն պետություններում, որտեղ իշխանության գլուխ են կանգնած օտարերկրյա կապիտալի և տեղական ֆեոդալների ու կալվածատերերի հետ սերտորեն կապված խոշոր բուրժուազիայի ներկայացուցիչները (Բրազիլիա, Տաիլանդ, Սաուդյան Արաբիա և այլն), և այն երկրներում, որտեղ առաջադեմ ուժերը, մի շարք դեպքերում, կառավարող շրջաններին հարկադրում են հանդես գալ դեմոկրատական սոցիալ-տնտեսական ռեֆորմների պաշտպանությամբ (Հնդկաստան, Շրի Լանկա և այլն)։

Անշեղորեն ամրապնդվում են սոցիալիստական կողմնորոշման երկրների դիրքերը, երկրներ, որտեղ իշխանությունը գտնվում է հեղափոխական դեմոկրատիայի ներկայացուցիչների ձեռքին (Եգիպտոս, Սիրիա, Սոմալի, Կոնգո, Տանզանիա, Բիրմա և այլն)։ Ոչ կապիտալիստական զարգացման հաջողությունն ապահովող կարևորագույն պայմաններից մեկը երիտասարդ առաջադեմ պետությունների համագործակցությունն է սոցիալիստական համերաշխության երկրների հետ։

Զարգացող բոլոր երկրների համար ընդհանուրն այն է, որ նրանց սոցիալ-տնտեսական զարգացումը ձևախախտված է եղել և շարունակում է արգելակվել միջազգային մոնոպոլիստական կապիտալի կողմից, մի հանգամանք, որն օբյեկտիվորեն սրում է պայքարը զարգացող երկրների և համաշխարհային իմպերիալիզմի միջև։

Կապիտալիստական սիստեմին յուրահատուկ օբյեկտիվ օրենքների գործողությունը, «երրորդ աշխարհի» երկրների առաջընթաց զարգացումը չհանդուրժելու, արգելակելու կամ մեկուսացնելու համաշխարհային իմպերիալիզմի քաղաքականությունը հասցրին այն բանին, որ այդ երկրների մեծ մասում, անկախության տարիներին, էական փոփոխություններ չկատարվեցին բնակչու-







թյան կենսամակարդակի, սոցիալ-քաղաքական կառուցվածքի ոլորտում։

Աշխատավորության համար տակավին պատուհաս է գործազրկության բարձր մակարդակը։ Ամբողջությամբ վերցրած, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զարգացող պետություններում աշխատունակ բնակչության մեկ երրորդը այս կամ այն ձևով տառապում է գործազրկությունից։ Լատինական Ամերիկայում այժմ արդեն աշխատանք չունի ամեն մի չորրորդ աշխատունակը։ Գործազուրկների բանակը հասնում է 25 մլն-ի։ Ըստ ՄԱԿ-ի փորձագետների հաշվարկումների, գոյություն ունեցող դրության պահպանմանը սպառնում է այն, որ արդեն 1980 թ. լատինամերիկյան երկրների բնակչության 40 տոկոսը աշխատանք և գոյության միջոցներ չի ունենա։

Ազգային հարստությունների հոսքը առաջատար կապիտալիստական երկրներ, մնացած մասի մեծ բաժնի յուրացումը տեղական շահագործողների աննշան խավի և բյուրոկրատիայի բարձր խավերի կողմից՝ հանգեցնում են նրան, որ քաղաքական սուվերենություն ձեռք բերվելուց հետո արագացած տնտեսական զարգացումից ստացված շահույթները գրեթե չեն օգնում բնակչության լայն շերտերին։ Որքան ավելի են արմատավորվում կապիտալիստական հարաբերություններն այս կամ այն երկրում, որքան ավելի է խորանում սոցիալական և գույքային դիֆերենցիացիայի աստիճանը, այնքան ավելի են սրվում դասակարգային հակասությունները։

Շնորհիվ այն բանի, որ սոցիալիզմը դարձել է արդիականության վճռական ուժը, կապիտալիզմն անդառնալիորեն կորցրել է աշխարհի ճակատագրում ունեցած իր վճռական դերը։ Սոցիալիստական համագործակցության երկրները քաղաքական, տնտեսական և գաղափարական հսկայական ազդեցություն են գործում համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի ընթացքի վրա, օժանդակում են քաղաքական ազատագրման, սոցիալ-տնտեսական առաջընթացի և դեմոկրատիայի համար իմպերիալիզմի ու ռեակցիայի դեմ պայքարող ուժերի ամրապնդմանը։

Սոցիալիստական երկրները ձգտում են երիտասարդ պետություններին օգնել, ամենից առաջ, ինդուստրիալ բազայի ստեղծման, տնտեսության պետական սեկտորի զարգացման գործում։

Զարգացող երկրների հետ լայն տնտեսական կապեր է պահպանում հատկապես Սովետական Միությունը, որն ունի առավել հզոր տնտեսական և տեխնիկական պոտենցիալ։ ՍՍՀՄ օգնությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 40 պետություններում կառուցվում են ավելի քան 700 ձեռնարկություններ, որոնցից ավելի քան 340-ն արդեն ավարտված և հանձնված են շահագործման։

Մեր համագործակցությունը զարգացող երկրների հետ, ՍՄԿԿ XXIV համագումարում ընդգծեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը, հիմնվում է հավասարության և փոխադարձ հարգանքի սկզբունքների վրա, «ձեռք է բերում միջազգային տնտեսական հարաբերությունների մթնոլորտում իմպերիալիստական շահագործման սիստեմին հակադրվող աշխատանքի հաստատուն բաժանման բնույթ... Կարելի է համոզված ասել, որ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի պետությունների հետ Սովետական Միության տնտեսական հարաբերությունները ծառայում են այդ պետությունների ազգային անկախության ամրապնդմանը, իմպերիալիզմի դեմ պայքարի ընդհանուր գործին, խաղաղությանը և սոցիալական առաջընթացին»։

«Երրորդ աշխարհի» երկրներում խորանում է այն բանի ըմբռնումը, որ

զարգացումը կապիտալիզմի ուղիով պատմականորեն անհեռանկարային է, երևան են գալիս ու ամրապնդվում են իմպերիալիզմի ազդեցության դեմ մղվող պայքարի նոր ձևեր: Հենվելով հակաիմպերիալիստական երկարատև պայքարում նվաճված քաղաքական սուվերենության, միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունների, համերաշխության, համաշխարհային սոցիալիզմի և, առաջին հերթին, Սովետական Միության համակողմանի օժանդակության վրա, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդներն ուժեղացնում են համաշխարհային իմպերիալիզմից իրենց տնտեսական անկախության համար մղվող պայքարը:

## 2

Բանվոր դասակարգը և նրա կուսակցությունները «երրորդ աշխարհի» երկրներում ևս առավել հետևողական մարտիկներն են իմպերիալիզմի, գաղութարարության և նեոգաղութարարության դեմ, ազգային անկախության և սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարում:

Լատինական Ամերիկայի բանվոր դասակարգը թե՛ բնակչության կազմում իր տեսակարար կշռով, թե՛ կազմակերպվածության աստիճանով զգալիորեն գերազանցում է մյուս մայրցամաքների զարգացող երկրների պրոլետարիատին: Լատինամերիկյան երկրների սոցիալական կառուցվածքում առավել կարևոր առաջընթաց քայլ է այն հանգամանքը, որ տեղի է ունենում արդյունաբերական պրոլետարիատի համեմատաբար արագ աճի պրոցես: Նրա թիվը 1940—1969 թթ. աճել է մոտավորապես 2,5—3 անգամ ավելի արագ, քան ողջ ինքնագործ բնակչությունը: Առանձին երկրներ, Չիլին, Արգենտինան, Ուրուգվայը, բնակչության պրոլետարացման մակարդակով գործնականորեն չեն տարբերվում արևմտա-եվրոպական կապիտալիստական երկրներից: «Պրոլետարիատը, կոմունիստական և բանվորական կուսակցությունները,— նշվում է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցության հանրագումարային փաստաթղթում,— խաղում են առավել կարևոր դեր Լատինական Ամերիկայի հակաիմպերիալիստական շարժման մեջ»:

Բանվորական շարժումն առավել մեծ հաջողության է հասել այն երկրներում, որտեղ կոմունիստական կուսակցությունները կարողացել են ապահովել համատեղ գործողություններ մյուս առաջադեմ ուժերի հետ, ամրապնդել իրենց դիրքերը արհմիություններում, միասնությունը՝ հակաիմպերիալիստական և հակաօլիգարխիական ուժերի հետ: Լատինամերիկյան պրոլետարիատին 60-ական թթ. բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի գործադուլավորների 30—50 տոկոսը, թեև այդ պրոլետարիատը կազմում է կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի թվի միայն 9 տոկոսը: Բնորոշ է, որ լատինամերիկյան պրոլետարիատը ավելի է գիտակցում իր առաջատար դերը հասարակության մեջ: Դա արտահայտվում է ո՛չ միայն այն բանում, որ նա հակաիմպերիալիստական պայքարի նախաձեռնողն ու գլխավոր ուժն է, այլև նրանում, որ առավել ակտիվորեն է հանդես գալիս հողի կալվածատիրական սեփականության վերացման, դեմոկրատական ազատությունների համար, ամերիկյան իմպերիալիզմի կողմից արմատավորվող ռազմա-ոստիկանական ռեժիմի դեմ: Ավելի հաճախ է գործադրվում պրոլետարիատի պայքարին յուրահատուկ այնպիսի միջոց, ինչպես համընդհանուր գործադուլն է: Այսպես, քաղաքական գործադուլները կարևոր դեր խաղացին ռեակցիոն դիկտատուրաների տապալ-



ման համար մղվող պայքարում՝ Պերուում (1956 թվական), Կոլումբիայում (1957 թվական), Վենեսուելայում (1958 թվական), Էկվադորում (1966 թվական): Ուրուգվայական պրոլետարիատի բազմիցս կրկնվող համընդհանուր քաղաքական գործադուլները, որոնք պաշտպանում են դեմոկրատական նվաճումները և ուղղված են ռեակցիոն հեղաշրջում կատարելու փորձերի դեմ, Լատինական Ամերիկայի աշխատավորությանը ակնառու ցույց տվին, որ նա կարող է ակտիվորեն ներգործել քաղաքական իրադարձությունների ընթացքի վրա:

Գործադուլային շարժման զգալի վերելք նկատվեց Չիլիում 60-ական թվականների վերջերին: 1965 թ. տեղի ունեցան 564 գործադուլներ, 1966-ին՝ 1073, 1967-ին՝ 1600: Ֆրեյի կառավարության հակաբանվորական քաղաքականության դեմ վիթխարի համընդհանուր գործադուլ անցկացվեց 1967 թ. նոյեմբերի 23-ին, որին մասնակցեց 1 միլիոն մարդ (ամբողջ աշխատավորության 70 տոկոսը): Չիլիի բանվոր դասակարգի և նրա՝ այս տարի իր 50-ամյակը նշող կոմունիստական կուսակցության փորձը գործնականում ցույց տվեց, թե ինչպիսի լայն հեռանկարներ են բացում ողջ աշխատավորության և դեմոկրատական ուժերի առջև բանվոր դասակարգի միասնությունն ու համախմբվածությունը:

Ժողովրդական միասնության բլոկի հաղթանակը Չիլիում նոր և խիստ էական հարված էր Լատինական Ամերիկայում ԱՄՆ-ի իմպերիալիզմի դիրքերին: «Այստեղ, առաջին անգամ մայրցամաքի պատմության մեջ,— ասաց ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը,— ժողովուրդը սահմանադրական ճանապարհով հասավ այնպիսի կառավարության ստեղծման, որը նա ուզում էր և որին վստահում էր»:

Ժողովրդական միասնության կառավարությունը, հակահարված տալով ներքին ռեակցիայի և ամերիկյան իմպերիալիզմի մեքենայություններին, քայլ առ քայլ իրականացնում է լայն սոցիալ-տնտեսական ծրագիր, որի նպատակն է ոչ միայն օտարերկրյա մոնոպոլիաների կախումից տնտեսության ազատագրումը, այլև բնակչության տարբեր խավերի շրջանում ժողովրդական միասնության բլոկի ազդեցության ամրապնդումը: Չիլիում ակտիվորեն անց է կացվում ագրարային ռեֆորմ, պետության ձեռքն են անցել կարևորագույն մասնավոր բանկերը, մետալուրգիական գործարանները, տեքստիլ և այլ ձեռնարկություններ:

Չիլիի ժողովուրդը վճռական քայլ արեց երկրի տնտեսության վերահսկման իր իրավունքի հաստատման համար մղվող պայքարում: 1971 թ. հուլիսի 15-ին ուժի մեջ մտավ մի օրենք, որով բնական ռեսուրսները՝ երկրի հիմնական հարստությունները, վերադարձվեցին Չիլիի պետության տնօրինությանը: «Չիլիի բանվոր դասակարգն ու ժողովուրդը,— ասել է ՉԿԿ գլխավոր քարտուղար Լ. Կորվալանը ՍՄԿԿ XXIV համագումարում ունեցած ելույթում,— լի են հաստատուն վճռականությամբ՝ պաշտպանելու իրենց ընտրած կառավարությունը և շարունակելու հեղափոխական վերափոխությունները»:

Պերուում արգելակված է արտասահմանյան մոնոպոլիաների ճնշիչ տիրապետությունը: Ընդլայնվում է հակաիմպերիալիստական շարժումը Կոլումբիայում, Վենեսուելայում, Ուրուգվայում, Կոստա-Ռիկայում, Պանամայում, Մեքսիկայում և այդ ցամաքամասի մյուս երկրներում: Այդ ամենը վկայում է, որ Լատինական Ամերիկայի քաղաքական զարգացումը թևակոխում է նոր փուլ: Իմպերիալիստական կեղեքման դեմ հանդես եկող ժողովրդական մասսաների,

բոլոր ուժերի պայքարը ձեռք է բերում հակաամերիկյան, հակալատիֆունդիական և հակաօլիգարխիական նպատակասլացություն։

Իհարկե, Լատինական Ամերիկայի դեռ ոչ բոլոր երկրներում են հաղթել ազգային արմատական շահերին համապատասխանող քաղաքականության անցկացմանը ձգտող այն ուժերը, որոնք ունակ են դիմակայելու ԱՄՆ-ի մոնոպոլիաների և ներքին ռեակցիայի կատաղի ճնշմանը։ Սակայն սկզբունքային նշանակություն ունի այն հանգամանքը, որ մինչև վերջին ժամանակներս ԱՄՆ-ի մոնոպոլիաների նաև այդ արգելանոցում տարեցտարի ամրապնդվում են արտաքին և ներքին քաղաքականության սուվերենության համար հանդես եկող ուժերի դիրքերը։

Լատինական Ամերիկայի բանվոր դասակարգի հասունության կարևոր ցուցանիշ են Վիետնամում ամերիկյան ագրեսիայի դեմ նրա քաղաքական ելույթները, համաշխարհային շարժումը մյուս երկրների աշխատավորության հետ։ Չիլիի ժողովրդական միասնության կառավարության հաղթանակը շատ բանով պարտական է, օրինակ, Լատինական Ամերիկայի երկրների բանվոր դասակարգի համերաշխությանը, համաշխարհային սոցիալիստական համագործակցության, բոլոր պրոգրեսիվ ուժերի բարոյական աջակցությանը։

Բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության պայքարի իսկական կազմակերպիչները կոմունիստական և բանվորական կուսակցություններն են, որոնք հետևողականորեն պայքարում են իրենց երկրների ճակատագրերի գործում ամերիկյան կապիտալի տիրապետության և տնտեսության հնամենի կառուցվածքի պահպանման կործանարարությունը գիտակցող սոցիալական և քաղաքական ուժերի համախմբման համար։

Լատինամերիկյան երկրների կոմկուսակցություններն իրենց գործունեության մեջ ելնում են այն բանից, որ հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական և դեմոկրատական արմատական վերափոխությունների համար մղվող պայքարի սրման պայմաններում խիստ մեծ նշանակություն են ձեռք բերում Լատինական Ամերիկայի ժողովուրդների միասնությունը, իմպերիալիզմի դեմ հանդես եկող բոլոր ջոկատների, քաղաքական կազմակերպությունների և հասարակական գործիչների մարտական համերաշխությունը։ Միասնական ճակատում այդ բոլոր ուժերի համախմբումը ռեալ հնարավորություն է տալիս, Ուրուգվայի կոմունիստական կուսակցության առաջին քարտուղար Ռ. Արիսմենդիի խոսքերով ասած, «նվաճելու կարևոր հաղթանակներ, որոնք կարող են հանգեցնել քաղաքական նոր դրությունի»..., երբ կարող է ստեղծվել այնպիսի կառավարություն, որն ունակ լինի իրականացնելու դեմոկրատական վերափոխություններ և վերականգնելու ազգային սուվերենությունը, կառավարություն, որում մասնակից կլինեին բանվոր դասակարգի և աշխատավորական լայն մասսաների ներկայացուցիչները։

Ղեկավարելով ազգային արմատական շահերի համար մղվող պայքարը, Լատինական Ամերիկայի երկրների կոմունիստներն ամրապնդում և ընդարձակում են իրենց շարքերը։ Եթե 1939 թ. այդ երկրների կոմկուսակցություններում կար 90 հազար անդամ, ապա 1970 թ. նրանք ավելի քան 300 հազար էին։ Միայն 1957—1967 թթ. ընթացքում կոմկուսակցությունների շարքերն ավելացան երկու անգամ, չնայած այն բանին, որ շատ երկրներում նրանք գործում են ամենադաժան ռեպրեսիաների և հակահեղափոխական տեռորի պայմաններում։



Ուրուգվայում, օրինակ, կոմունիստների թիվը 15 տարվա ընթացքում (1955—1970 թթ.) ավելացավ 12 անգամ, իսկ կոմունիստական երիտասարդական միությունը՝ բազմապատկվեց 22 անգամ։ 1965—1969 թթ. Չիլիի կոմունիստական կուսակցության անդամների թիվն ավելացավ 98,5 տոկոսով։ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի տարում Արգենտինայի կոմկուսակցության և կոմերիտմիության շարքերը համալրվեցին 17 հազար նոր անդամներով։ Բոլոր եղբայրական կուսակցությունները մեծ ուշադրություն են նվիրում մարքս-լենինյան ուսուցմանը, իրենց կադրերի ինտերնացիոնալ դաստիարակմանը։

Լատինամերիկյան երկրներում հեղափոխական շարժման վերելքը մեծ նշանակություն ունի համաշխարհային հեղափոխական պրոցեսի համար։ Այն հանգամանքը, որ Լատինական Ամերիկայի բանվոր դասակարգի և լայն մասսաների գլխավոր թշնամին օտարերկրյա մոնոպոլիաներն են և նրանց կողմից պաշտպանվող տեղական ռեակցիան, այդ երկրների ժողովուրդների պայքարը մերձեցնում է Ասիայի և Աֆրիկայի երիտասարդ անկախ պետություններում ծավալվող պայքարին։ Հասկանալի է, լատինամերիկյան մայրցամաքում և երկրագնդի աֆրիկա-ասիական շրջանում հեղափոխական շարժումների բնույթի և նպատակասլացության ակնհայտ ընդհանրության պայմաններում նրանց միջև գոյություն ունեն նաև խիստ էական տարբերություններ։ Դրանք արտահայտվում են, ամենից առաջ, նրանում, որ Լատինական Ամերիկայի ժողովուրդների պայքարը ծավալվում է սոցիալական հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների առավել հասունության պայմաններում, քան աֆրիկա-ասիական երկրների ճնշող մեծամասնությունում։

## 3

Ասիայի և Աֆրիկայի երկրներում բնակչության զգալի մասը կապված է մինչկապիտալիստական հարաբերությունների հետ, որն իր դրոշմն է դնում նաև հասարակական ու քաղաքական պայքարի բնույթի վրա։ Այնուամենայնիվ, այդ երկրների մեծ մասի մի շարք ոլորտներում նկատելիորեն զարգանում և ամրապնդվում են բուրժուական հարաբերությունները։ Ապրանքային արտադրության օրենքները մշտապես մեծացնում են գյուղական համայնքների դարավոր հիմքերում եղած ճեղքվածքը։ Արտադրության կապիտալիստական ձևերի զարգացումը, Ֆ. Էնգելսի դիպուկ արտահայտությամբ, գյուղատնտեսության ոլորտում կորատում է մանր արտադրության կենսաներվը, և այդ մանր արտադրությունը կործանվում ու անկման է հասնում անկասելիորեն (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 504)։ Այն մասին, որ այժմ այդպիսի պրոցեսներ տեղի են ունենում Ասիայի և Աֆրիկայի երկրներում, վկայում է գյուղական բնակչության նրանց համար չտեսնված արտահոսքը։ Ըստ տնտեսագետների հաշվարկումների, վերջին քառորդ դարի ընթացքում քաղաքային բնակչության աճն այստեղ գերազանցել է զարգացման ամբողջ նախորդող շրջանում նրա ձեռքբերած թվին։

Քաղաքների աճը, արդյունաբերության և տրանսպորտի զարգացումը, շարունակ ընդլայնվող ապրանքափոխանակությունը հանգեցնում են՝ նրանում գյուղական բնակիչների ավելի մեծ մասսաների ներգրավմանը, որպիսի հանգամանքն, իր հերթին, խախտում է գյուղական համայնքների բնեղեն ինքնապահովման և ինքնամեկուսացման հիմքերը։ Ամրապնդվում է ավանդութային կացութաձևերի ու սովորույթների ամենակարողության թուլացման տեն-

դենցը, սոցիալական ու հոգեբանական լուրջ տեղաշարժեր են սկսվում Աֆրիկայի և Ասիայի նույնիսկ ամենախուլ շրջաններում։

Աֆրիկա-ասիական հասարակությունների գույքային և քաղաքական շերտավորումը, գյուղական աշխատավորների մեծ մասի կողմից իրենց հողաբաժինների արագորեն կորցնելը զգալի փոփոխություններ են առաջացնում նախկին գաղութային և կախյալ երկրների սոցիալական կառուցվածքում։ Դրանք, առաջին հերթին, արտահայտվեցին վերջին քառորդ դարի ընթացքում ինքնագործ բնակչության մեջ վարձու աշխատողների թվի զգալի ավելացմամբ, գյուղական «ինքնուրույն» տնտեսությունների տեսակարար կշռի կրճատմամբ։

Ասիայի ոչ սոցիալիստական երկրներում վարձով աշխատողների թիվը այժմ կազմում է մոտ 120 միլիոն մարդ, կամ աշխատունակ բնակչության 30 տոկոսը, այդ թվում մանր արտադրության մեջ զբաղված են 60—70 միլիոն աշխատողներ, որոնց ճնշող մեծամասնությունը կազմում են գյուղատնտեսության մեջ աշխատող բատրակները և օրավարձու բանվորները։ Ասիայի ոչ սոցիալիստական երկրներում պետական և մասնավոր կապիտալիստական արդյունաբերության և ագրարային խոշոր արտադրության ոլորտում զբաղված են 20—25 միլիոն բանվորներ։

Չնայած իր երիտասարդությանն ու սակավաթվությանը, Ասիայի բանվոր դասակարգն ավելի վճռական է պայքարում իր շահերի համար։ Գործադուլային շարժման մեջ ներգրավվում են բանվորների և ծառայողների լայն շերտեր։ 60-ական թվականների երկրորդ կեսում բոլոր գործադուլների 45—50 տոկոսը անցել է աշխատանքի պայմանների բարելավման և աշխատավարձի բարձրացման պայքարի համար լոզունգներով։ Այդ պրոբլեմները, ամենուր տեղի ունեցող պետական սեկտորի մեծացման և տնտեսության պետական կարգավորման պայմաններում, անխուսափելիորեն ձեռք են բերում քաղաքական բնույթ։ Աշխատավորներն ավելի հաճախ են առաջ քաշում օտարերկրյա մոնոպոլիաների գործունեությունը սահմանափակելու, նրանց պատկանող ձեռնարկություններն ազգայնացնելու պահանջներ, հանդես են գալիս ներքին և արտաքին ռեակցիայի դեմ։ Լինելով բանվոր դասակարգի ավանգարդը, Ասիայի կոմունիստական կուսակցությունները առավելաչափ ուժեր են ներդնում բանվորական շարժման բոլոր ջոկատների համախմբման, հակաիմպերիալիստական, հակակապիտալիստական, դեմոկրատական ուժերի համագործակցության ասպարեզում։

Հնդկաստանի կոմունիստական կուսակցությունը մշտապես պաշտպանում է կառավարող Ազգային կոնգրեսի քաղաքականության առաջադիմական կողմերը, որը նպաստում է նրանում ձախ ուժերի դիրքերի ամրապնդմանը։ Կոմունիստների և դեմոկրատների հակաիմպերիալիստական և հակամոնոպոլիստական միասնությունը հասցրեց պրոիմպերիալիստական աջ ուժերի վճռական ջախջախմանը Հնդկաստանում։ Այս հաջողությունն ամրապնդվեց 1972 թ. տեղի ունեցած միջակա ընտրություններում։

Շրի Լանկա հանրապետությունում 1970 թ. մայիսի ընտրություններում ռեակցիոն ուժերի ջախջախումը և կոմունիստների մասնակցությամբ Միացյալ ճակատի իշխանության գլուխ անցնելը զգալի չափով բացատրվում է նրանով, որ բանվոր դասակարգի աճած քաղաքական ակտիվության պայմաններում կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն անց է կացնում բոլոր առաջադիմական ուժերի միասնության կուրս։

Սիրիայում և Իրաքում 1972 թ. զգալի քայլեր են արվել այդ երկրների կոմունիստական կուսակցությունների և այնտեղ կառավարող արաբական սոցիալիստական վերածննդի հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների միջև կազմակերպական համագործակցության հասնելու գործում։



Լիբանանի կոմունիստները 1968 թ. հուլիսին կայացած իրենց II համագումարում մշակեցին ազգային հակակապիտալիստական, հակաիմպերիալիստական միասնության պլատֆորմ։ 1972 թ. հունվարին տեղի ունեցած III համագումարում Լիբանանի կոմունիստները հանդես եկան որպես արաբական բոլոր երկրների հակաիմպերիալիստական միասնության նախաձեռնողներ։ Առաջընթաց ուժերի համաարաբական խորհրդակցություն հրավիրելու վերաբերյալ համագումարի առաջարկությունը պաշտպանեցին համագումարի աշխատանքներին մասնակցող արաբական երկրների 24 կուսակցություններ և կազմակերպություններ։ Այդ ամենը վկայում է, որ ազգային-հայրենասիրական շարժման ձախ թևի ներսում եղած որոշ հակասությունններն ու տարաձայնությունները չեն խոչընդոտում համախմբմանը իմպերիալիզմի, սիոնիզմի դեմ՝ ազգային շահերի պաշտպանության համար մղվող պայքարում, բնորոշում են հեղափոխական-դեմոկրատական ուժերի պատշաճ հասունությունը։

Արևադարձային Աֆրիկայում բանվորական շարժումը սոսկ առաջին քայլերն է կատարում։ Դա համաշխարհային պրոլետարիատի առավել երիտասարդ ջոկատն է։ Այնուամենայնիվ, օտարերկրյա մոնոպոլիաների և դրանց հետ կապված տեղական ռեակցիոն շրջանների կեղեքման դեմ աֆրիկական բանվորների պայքարն ավելի ու ավելի շոշափելի արդյունքներ է տալիս։ Այստեղ բանվոր դասակարգն առաջավոր դիրքեր է գրավում իր սեփական երկրների արմատական շահերի համար մղվող պայքարում, ձեռք է բերում մարտական փորձ, համախմբում իր շարքերը, աստիճանաբար իր շուրջն է միավորում բոլոր առաջադիմական ուժերին։

Քաղաքական անկախության պայմանները, հօգուտ սոցիալիզմի միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության ընդհանուր փոփոխությունը նպաստում են աֆրիկական պրոլետարիատի միասնության ամրապնդմանը, սեփական դասակարգային շահերի գիտակցմանը, բանվորական շարժման գաղափարա-քաղաքական և կազմակերպական մասնատվածության հաղթահարմանը։ Միջազգային բանվորական և կոմունիստական շարժման հետ շփումների ազդեցությամբ ընդլայնվում են պրոլետարական համերաշխությունն ու փոխադարձ օգնությունը ողջ մայրցամաքի մասշտաբով։ Սկսվել է պրոլետարիատի քաղաքական ավանգարդի կազմակերպական ձևավորման ու ամրապնդման պրոցես։ Աֆրիկայի շատ երկրներում ստեղծվել են մարքսիստական-լենինյան խմբեր, որոնց մի մասը գործում է գոյություն ունեցող մասսայական հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների շրջանակներում։ Թեև աֆրիկական կոմունիստների մեծամասնությունը պայքարում է անլեգալ պայմաններում, նրանց թիվը մշտապես աճում է։ 1939 թ. մայրցամաքում կար 5 հազար, 1957-ին՝ 20, իսկ այժմ՝ 60 հազար կոմունիստ։

Աֆրիկա-ասիական ոչ կապիտալիստական ուղիով զարգացող երկրների բանվորների դրությունն սկզբունքորեն տարբերվում է կապիտալիստական կողմնորոշում ունեցող երկրների բանվորների դրությունից։ Հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունները, որոնք գլխավորում են պրոգրեսիվ վերափոխությունների համար մղվող պայքարը, ո՛չ միայն ազդարարել են քաղաքի ու գյուղի աշխատավորների շահերը պաշտպանելու իրենց ձգտումը, այլև արդեն մի շարք կարևոր սոցիալական ռեֆորմներ են իրականացրել։ Օրենքով սահմանված են, օրինակ, աշխատանքային օրվա տևողությունը, աշխատավարձի նվազագույն չափը, իրավաբանորեն ամրապնդված է աշխատավորների հանգստի իրավունքը։ Մշտապես մեծանում է պետական սոցիալական ապահովության սիստեմում ընդգրկված բանվորների ու ծառայողների թիվը։ Արհմիություններն ու նրանց ֆունկցիաները կատարող կազմակերպությունները (օրինակ, բանվորների ժողովրդական խորհուրդ-

ները Բիրմայում) ավելի ու ավելի ակտիվորեն են մասնակցում արտադրությունը կազմակերպելու, աշխատանքի պաշտպանության, աշխատավորների նյութական ու իրավական դրությունը բարելավելու հարցերի լուծմանը։ Այդ միջոցառումներն օբյեկտիվորեն ամրապնդում են բանվոր դասակարգի դիրքերը։

Սեփական երկրներում պրոգրեսիվ վերափոխությունները գլխավորող հեղափոխական-դեմոկրատական կուսակցություններն արտահայտում են աշխատավորական բնակչության լայն խավերի և, առաջին հերթին, աֆրիկա-ասիական պետությունների սոցիալական կառուցվածքում դեռևս գերակշռող գյուղացիության շահերը։ Զարգացող երկրների ոչ պրոլետարական մասսաների համար համառ պայքար է մղվում առաջընթացի և ռեակցիայի ուժերի միջև ինչպես յուրաքանչյուր երիտասարդ սուվերեն պետության ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում։ Պայքարը մղվում է սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման կողմնորոշում ընտրելու, իմպերիալիստական բուրժուազիայի կամ միջազգային բանվոր դասակարգի հետ դաշինք ընտրելու հարցերի շուրջը։ Այդ պայքարի ելքը, որի արդյունքներից է մեծ չափով կախված մարդկության ապագան, որոշվում է սոցիալական և քաղաքական ուժերի հարաբերակցությունը յուրաքանչյուր երկրի ներսում և միջազգային ասպարեզում։

Զարգացող երիտասարդ պետությունների սոցիալ-տնտեսական կառուցվածքի մարքս-լենինյան վերլուծությունն այն հետևությանն է հանգեցնում, որ այժմ նրանց մեծամասնությունում այնպիսի իրադրություն է ստեղծվել, երբ հասարակական դասակարգերից ու սոցիալական խավերից և ոչ մեկը չի կարող մեկուսի գլխավորել հասարակական կյանքի արմատական վերափոխությունները։ Սա էլ մեծացնում է բոլոր աշխատավորների դաշինքի դերը՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ։ Միայն նրանց միասնությունը հնարավորություն կտա լիովին վերացնելու գաղութարարության ծանր ժառանգությունը։

Զարգացող երկրներում կոմունիստական և բանվորական շարժումը, դեն նետելով իմպերիալիզմի, միջազգային և ներքին ռեակցիայի մեքենայությունները, վերջին տարիներին զգալի հաջողությունների է հասել աշխատավորների կենսական շահերի, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Կոմունիստների նվաճումները ողջ աշխարհն է ընդունում։ Նրանց հաջողությունները, անշուշտ, անհամեմատ ավելի մեծ կլինեին, եթե ՉԿԿ մաոիստական ղեկավարության պառակտողական գործունեությունը չլիներ։ «Վերջին ժամանակաշրջանի դասակարգային մարտերի փորձը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցությունում,— ակնբախորեն ցույց տվեց, թե բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կազմակերպված պայքարի գործին ինչպիսի մեծ վնաս է հասցնում ավանտյուրիստական ուղի ընտրած Պեկինի գործունեությունը»։

Ներկայիս պայմաններում հատուկ նշանակություն են ձեռք բերում համագործակցությունը, առաջադիմական, հակաիմպերիալիստական ուժերի միասնության ամրապնդումը ոչ միայն զարգացող յուրաքանչյուր երկրի ներսում, այլև միջազգային մասշտաբով, ազգային-ազատագրական շարժման ու համաշխարհային սոցիալիզմի միջև։ Հավատարիմ լենինյան ավանդույթներին, մեր կուսակցությունը հանդես է գալիս հանուն համակողմանի բարեկամական



կապերի հաստատման ու զարգացման, ազգային ու սոցիալական ազատագրության համար պայքարող մարտիկների աջակցման, պրոլետարական և ոչ-պրոլետարական հեղափոխականների փոխհարաբերությունների պրոբլեմի տեսական խոր մշակման օգտին։

Հակաիմպերիալիստական պայքարի ոլորտը աշխատավորների նորանոր խավերի ներգրավումը պահանջում է բանվորական շարժման միասնության ամրապնդում, ժողովուրդների բոլոր հակաիմպերիալիստական ուժերի համախմբում միասնական ճակատում։ Պրոլետարիատի և նրա կուսակցությունների գլխավոր պարտականությունն է՝ հեղափոխական, հակաիմպերիալիստական միասնության ձեռքբերումն ու ամրապնդումը, այն պայքարի ղեկավարումն ու կազմակերպումը, որը կարող է և պետք է հասցնի արմատական սոցիալ-տնտեսական վերափոխությունների։

«Политическое самообразование», 1972, № 11.

# ՍՈՎԵՏԱ-ԱՄԵՐԻԿՅԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԵՎՐՈՊԱՅԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

Ե. Ն. ՆՈՎՈՍԵԼՑԵՎ

*Եվրոպայում խաղաղության և համագործակցության պահպանումն ու ամրապնդումը երկրագնդի շատ ժողովուրդների շահերը շոշափող համաշխարհային քաղաքականության կարևոր հարցերն են։ Ինչպես նշվում է ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում, «Ընդհանուր խաղաղության ամրապնդման և լարվածության թուլացման հիմնական պրոբլեմներից մեկը Եվրոպայի անվտանգության ապահովումն է, երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծված տերիտորիալ ու քաղաքական ռեալությունները ճանաչելու հիման վրա»[1]։ Բնականաբար, այդ հարցի շուրջ կարծիքներ փոխանակվեցին նաև 1972 թվականի մայիսին ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի և սովետական ղեկավարների հանդիպման ժամանակ։*

*Մոսկվայի բանակցությունները հանգեցրին երկու երկրների տեսակետների մերձեցմանը եվրոպական մի շարք պրոբլեմների, այդ թվում և Եվրոպայի անվտանգության մի քանի կարևորագույն ասպեկտների վերաբերյալ։ Համատեղ կոմյունիկեում արտահայտված է կողմերի պատրաստակամությունը՝ ավանդ ներդնելու Եվրոպայում իրադրության մեղմացման ու պետությունների խաղաղ համագործակցության հարաբերությունների զարգացման պրոցեսում, տերիտորիալ ամբողջականության, սահմանների անխախտության, ներքին գործերին չմիջամտելու, սուվերեն հավասարության, անկախության, ուժի գործադրումից կամ դրա գործադրման սպառնալիքից հրաժարվելու սկզբունքների հիման վրա։ Դժվար չէ նկատել, որ խոսքն այն բոլոր սկզբունքների համաձայնեցման մասին է, որոնք ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև խաղաղ գոյակցության վրա հիմնված փոխհարաբերություններին վերաբերող փաստաթղթում պարունակվող հիմունքների հետ մեկտեղ փաստորեն համընկնում են եվրոպական անվտանգության այն հիմնական դրույթներին, որոնք ձևակերպված են Եվրոպայում խաղաղության, անվտանգության և համագործակցության մասին դեկլարացիայում, ընդունված՝ 1972 թվականի հունվարին, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների Պրագայի խորհրդակցությունում։*

*Մոսկվայի բարձր մակարդակի բանակցություններում կողմերը փոխըմբռնման հասան նաև համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման ու անցկացման հարցերի վերաբերյալ։ Համատեղ կոմյունիկեի համապատասխան բաժնում ասված է. երկու կառավարությունները համաձայն են, որ այդ խորհրդակցությունը պետք է լավ նախապատրաստված լինի, որպեսզի կարողանա կոնկրետ քննության առնել անվտանգության և համագործակցության պրակտիկ պրոբլեմները և դրանով իսկ նպաստի աստիճանաբար հաղթահարելու այն պատճառները, որոնք Եվրոպայում հանգեցրել են լարվածության. այն պետք է գումարվի շահագրգռված երկրների կողմից համաձայնեցված ժամկետներում, բայց առանց անհիմն ձգձգման։*

*Հետագայում Միացյալ Նահանգների պաշտոնական ներկայացուցիչները բազմիցս հաստատել են այդ տեսակետը։ Մասնավորապես, պետական քարտուղար Ու. Ռոջերսը եվրոպական սոցիալիստական մի շարք երկրներ կատարած իր այցելությունների ժամանակ, իսկ ավելի ուշ եվրոպական հարցերում նրա օգնական Ու. Ստեսելը, ներկայացուցիչների պալատի արտաքին գործերի հանձնաժողովի Եվրոպայի գործերի ենթահանձնաժողովում ընդգծել են, որ անվտանգության և համագործակցության հարցերի վերաբերյալ համաեվրոպական խորհրդակցությունը ԱՄՆ-ը դիտում է որպես նոր քայլ Արևելքի ու Արևմուտքի հարաբերությունների բարելավման գործում։*

*Այս հարցի մասին ԱՄՆ-ի դիրքորոշմանը մենք ավելի հանգամանորեն կանդրադառնանք հոդվածի եզրափակիչ բաժնում։ Իսկ այստեղ նշենք, որ համաեվրոպական խորհրդակցության հրավիրման օգտակարության ընդունումը համաշխարհային հասարակայնության լայն շրջաններում գնահատվել է իբրև նահանջ այդպիսի խորհրդակցության հրավիրման, այսպես կոչված, «նախնական պայմանների» քաղաքականությունից, որպիսիք ԱՄՆ-ը առաջ էր քաշում խորհրդակցության նախապատրաստումը ձգձգելու նպատակով։ Պատահական չէ, որ Մոսկվայի սովետա-ամերիկյան բանակցությունների հաջորդ օրն իսկ Բոննում կայացած ՆԱՏՕ-ի խորհրդի հերթական նստաշրջանն առաջին անգամ «կանաչ լույս» տվեց Հելսինկիի բազմակողմանի կոնսուլտացիաների՝ համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման գաղափարին։*

*Համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման ու հրավիրման գործում նկատվող պրոգրեսին նպաստեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զրույցներն ազգային անվտանգության հարցերի գծով ԱՄՆ-ի պրեզիդենտի օգնական Գ. Քիսինջերի հետ, որոնք տեղի ունեցան 1972 թվականի սեպտեմբերին, Մոսկվայում։ Միջազգային գլխավոր պրոբլեմների քննարկման ընթացքում մեծ ուշադրություն է նվիրվել Եվրոպայի անվտանգությանը վերաբերող հարցերին։ Առաջընթաց նկատվեց հետագայում ձեռնարկվելիք քայլերի ոլորտում (տե՛ս «Պրավդա», 1972 թվականի սեպտեմբերի 15)։*

*Մոսկվայի կոմյունիկեում ՍՍՀՄ-ի ու ԳՖՀ-ի, ԼԺՀ-ի ու ԳՖՀ-ի միջև կնքված պայմանագիրը, ինչպես և Արևմտյան Բեռլինի մասին քառակողմ համաձայնագիրը գնահատված են իբրև Եվրոպայի իրադրության բարելավման և եվրոպական պետությունների միջև վստահության ու համագործակցության հարաբերությունների ամրապնդման գործոններ։ Դրանով իսկ գործնականում խարխլվում է լարվածության թուլացման և ԳՖՀ-ի ու սոցիալիստական երկրների հարաբերությունների նորմալացման այն հակառակորդների ոտքի տակի հողը բուն Արևմտյան Գերմանիայում և նրա սահմաններից դուրս, որոնք Վ. Բրանդտի կառավարության «արևելյան քաղաքականության» դեմ կատարած իրենց հարձակումներում նախկինում կարող էին չարաշահել այդ քաղաքականության նկատմամբ Վաշինգտոնի որոշ երկիմաստ ու հակասական վերաբերմունքը։*

*Գտնելով, որ Եվրոպայում կայունությունն ու անվտանգությունն ապահովելու նպատակներին կհամապատասխաներ զինված ուժերի և սպառազինությունների փոխադարձ կրճատումն առաջին հերթին Կենտրոնական Եվրոպայում, ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը համաձայնեցին, որ շահագրգռված պետությունների միջև պետք է համապատասխան պայմանավորվածություն ձեռք բերվի այդ հարցի շուրջ բանակցություններ վարելու կարգի մասին։ Սովետա-ամերիկյան կոմյունիկեում հստակ ձևակերպված է այն սկզբունքը, որ պետք է դրվի այդ բանակցությունների հիմքում. «Այս հարցի վերաբերյալ ամեն մի համաձայնություն չպետք է վնասի կողմերից որևէ մեկի անվտանգությանը»։ Պայմանավորվածությունն այն մասին, որ այդ բանակցությունները պետք է վարել «հատուկ ֆորումում», դժվարացրին ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի այն շրջանների մանև-*

[1] *«ՍՄԿԿ համագումարի նյութերը», էջ 258։*

րելու հնարավորությունը, որոնք կուզեին դժվարացնել համաեվրոպական խորհրդակցության աշխատանքը, օրակարգի մեջ մտցնելով տեխնիկապես բարդ ու երկարատև ջանքեր պահանջող այդ հարցը, շխոսելով արդեն մինչ այդ առաջ քաշված դրա լուծման պահանջների շուրջ՝ իբրև խորհրդակցության հրավիրման պայման։

Դժվար է գերագնահատել Եվրոպայի անվտանգության ապահովման հետ կապված հարցերում սովետա-ամերիկյան պայմանավորվածության նշանակությունը։ Պոտսդամից հետո, թերևս, առաջին անգամ հաջողվեց արձանագրել երկու կողմերի հայացքների համընկնում կամ մոտեցում՝ համաշխարհային քաղաքականության այդ ամենագլխավոր պրոբլեմներից մեկի քննարկման ժամանակ։

Դրանով իսկ ստեղծվել է նոր և ընդ որում լայն պլացդարմ, որին հենվելով, կարելի է շարունակել ջանքերը՝ միջազգային կյանքում ավելի հաստատուն դարձնելու խաղաղ գոյակցության սկզբունքները, որ Սովետական Միությունն ու սոցիալիստական համագործակցության մյուս պետություններն առաջարկում են որպես հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների փոխհարաբերությունների հիմք։

Մոսկվայում ձեռք բերված պայմանավորվածության անշեղ պահպանումը կարող է ո՛չ միայն հեռուն գնացող արդյունքներ ունենալ Եվրոպայի զարգացման դրական պրոցեսներն ու տենդենցներն ամրապնդելու և խրախուսելու տեսակետից, այլև ամենաբարերար կերպով նպաստել միջազգային իրադրության ընդհանուր բարելավմանը, աշխարհում փոխադարձ վստահության ու համագործակցության մթնոլորտի ամրապնդմանը։

Եվրոպական մի շարք կարևորագույն պրոբլեմների շուրջ Մոսկվայում ձեռք բերված փոխըմբռնումը վկայում է Եվրոպայի անվտանգությունն ապահովելու և համաեվրոպական համագործակցությունը կարգավորելու հետ կապված պրոբլեմների ողջ կոմպլեքսի նկատմամբ ԱՄՆ-ի վերաբերմունքի մեջ տեղի ունեցած որոշակի ռեալ տեղաշարժերի մասին։ Ճիշտ է, թերևս, վաղաժամ կլիներ հայտարարել, թե ԱՄՆ-ի և սոցիալիստական պետությունների միջև արդեն ձեռք է բերվել նույնություն Եվրոպայի անվտանգության պրոբլեմի էության ըմբռնման հարցում։ Այժմ, սակայն, արդեն չի կարելի պնդել, թե այդ պրոբլեմի վերաբերյալ երկու կողմերը «խոսում են տարբեր լեզուներով»։

Եվրոպայի անվտանգության հարցերի շուրջ ձեռք բերված սովետա-ամերիկյան պայմանավորվածությունը դրական ազդեցություն գործեց այդ հարցերի քննարկման ընթացքի վրա ԱՄՆ-ի քաղաքական ու գիտական շրջաններում։ Զգալիորեն խարխլվել են այն մարդկանց դիրքերը, ովքեր ընդհանրապես ժխտում էին եվրոպական գործերի վերաբերյալ Սովետական Միության հետ գործարար, կոնստրուկտիվ բանակցություններ վարելու ո՛չ միայն անհրաժեշտությունը, այլև հնարավորությունը։

Ուժեղանում է դիֆերենցիացիան ուղղահավատ ատլանտիստների լագերում։ Դիսկուսիան, Եվրոպայի անվտանգության ապահովման հետ կապված հարցերի շուրջ, ընդունում է ավելի ռեալ բնույթ և տեղի է ունենում ավելի առողջ մթնոլորտում։

Միևնույն ժամանակ չի կարելի չնկատել նաև նոր հովերին ու տեղաշարժերին ցույց տրվող դիմադրությունը այն մարդկանց կողմից, ովքեր իրենց քաղաքական կամ գիտական կարիերան կապել են նախկին պատկերացումների հետ և զգում են, որ չեն կարող վերակառուցվել։ Նման ուժերի ու տրամադրությունների սնուցիչ միջավայրն են ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ներկայացուցիչները, Պենտագոնի ազդեցիկ շրջանները, ծայրահեղ ռեակցիոներները, հակասովետականորեն տրամադրված ուժերը։

## ԱՄՆ-Ը ԵՎ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ

Եթե սովետա-ամերիկյան կոմյունիկեի ձևակերպումները համադրենք Եվրոպայի անվտանգությունն ապահովելու հետ կապված հարցերի ողջ կոմպլեքսի նկատմամբ ԱՄՆ-ի դիրքորոշման նախորդ շարադրանքի հետ, ապա



ամեն մի անկանխակալ դիտորդ չի կարող չհավաստել անվիճելի դրական, ռեալ տեղաշարժը։ Բայց այդ դեպքում էլ նա ակամա հարց է տալիս. այդ տեղաշարժերը կապվա՞ծ են արդյոք կոնյունկտուրային, տակտիկական նկատառումների հետ, թե՞ խոսքն այնպիսի բանի մասին է, որը շոշափում է ԱՄՆ-ի գլոբալ ստրատեգիայի ավելի խոր շերտերը։

Նկատի ունենալով ԱՄՆ-ի ներքաղաքական իրադրության և միջազգային դրության առանձնահատկությունը, դժվար է միանշանակ պատասխան տալ այդ հարցին։ Մի բան միայն կարելի է որոշակի ասել. Եվրոպայի անվտանգության հարցերի նկատմամբ ԱՄՆ-ի դիրքորոշման մեջ նշված տեղաշարժերը այդ երկրի արտաքին քաղաքական կուրսն արդի աշխարհի իրողություններին, միջազգային ասպարեզում տեղի ունեցած փոփոխություններին հարմարեցնելու ընդհանուր պրոցեսի արտացոլումներից են, փոփոխություններ, որոնք առաջացել են ինչպես այն բանի շնորհիվ, որ ուժերի հարաբերակցությունը գնալով ավելի է փոփոխվում խաղաղության և սոցիալական առաջադիմության ուժերի օգտին, այնպես էլ այն պատճառով, որ իմպերիալիզմի դարաշրջանի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման հետևանքով գնալով խորանում են միջիմպերիալիստական հակասությունները։ Այդ տեղաշարժերը նաև ԱՄՆ-ի ներքին պրոբլեմների լուրջ սրման հետևանք են, իսկ դա այդ երկրի կառավարող շրջաններին ստիպում է վերանայել ներքին և արտաքին խնդիրների հարաբերակցության և հերթականության հարցը։

Աշխարհում տեղի ունեցող փոփոխությունները յուրովի իմաստավորելու և դրանք ԱՄՆ-ի երկարաժամկետ արտաքին քաղաքական նպատակներին հասնելու համար օգտագործելու ձգտումը, ինչպես հայտնի է, իր արտահայտությունը գտավ «Նիքսոնի դոկտրինայի», ինչպես նաև «ուժերի բազմակողմանի հավասարակշռության» կոնցեպցիայի մեջ, որը վերջին ժամանակներս հռչակել են ամերիկյան որոշ ղեկավար գործիչներ ու տեսաբաններ։ Այս ամենը կոչված է ծառայելու իբրև մի յուրատեսակ փիլիսոփայական հիմք՝ կիրառելու համար արտաքին քաղաքականության «պրագմատիկ» կուրս, որն իբր ազատ է ամեն տեսակ «իզմերից» և ղեկավարվում է բացառապես ԱՄՆ-ի «ազգային շահերով», ինչպես նաև արդարացնելու համար Վաշինգտոնի անցումը, այսպես կոչված, «բազմաբևեռ» դիվանագիտության»։

Իսկ ինչպե՞ս է Եվրոպայի անվտանգության պրոբլեմի նկատմամբ ԱՄՆ-ի ներկայիս մոտեցումն ամփոփվում այդ դոկտրինաների ու կոնցեպցիաների վրա հենվող նրա գլոբալ ու եվրոպական քաղաքականության շրջանակներում։

Հիշեցնենք, որ ընդհանուր առմամբ «Նիքսոնի դոկտրինան» նախատեսում է ԱՄՆ-ի ու նրանց դաշնակիցների միջև դժվարությունների, պատասխանատվության ու պարտավորությունների այնպիսի վերաբաշխում, որը Միացյալ Նահանգներին հնարավորություն կտար պահպանելու կապիտալիստական աշխարհի առաջատար տերության իր դերը և ապահովելու իր շահերը աշխարհում՝ ռազմական, ֆինանսական, տնտեսական կարգի ավելի քիչ ծախքերով և «պոտենցիալ հակառակորդների» հետ անմիջական ռազմական դիմակայության ավելի փոքր ռիսկով։

Ամենից առաջ՝ մի վերապահում. խոսքն այն հնարավորությունների մասին է, որ կարող է ընձեռել դոկտրինան ամերիկյան քաղաքականության գործնական կուրսին Եվրոպայի անվտանգությունն ապահովելու հետ կապված հարցերում։ Տվյալ դեպքում մենք կբավարարվենք այդ դոկտրինայի այն ասպեկտներով, որոնք վերջին տարիներին արդեն դրսևորվել են այդ պրոբլեմները լուծելիս ամերիկյան դիվանագիտության կոնկրետ մոտեցման մեջ և որոնց վրա ԱՄՆ-ի պրեզիդենտը կրկին ուշադրություն դարձրեց հանրապետական կուսակցության համագումարում ունեցած իր ծրագրային ելույթում։

Եթե հռչակվում է ՍՍՀՄ-ի ու նրա դաշնակիցների հետ «դիմակայության դարաշրջանից» անցում դեպի «բանակցությունների դարաշրջան», ապա դա տրամաբանորեն պետք է ենթադրի Եվրոպայի սոցիալիստական պետությունների հետ բանակցությունների վարում նրանց ազգային շահերի տեսակետից

այնպիսի կարևորագույն հարցերի շուրջ, ինչպիսիք են անվտանգության ապահովումն ու համագործակցության կարգավորումը Եվրոպայում։

Իսկ արևմտաեվրոպական պետությունների հետ ունեցած հարաբերություններում, որոնց ոլորտում հռչակվում է անցում «խնամակալությունից» դեպի «հասուն պարտնյորություն», ԱՄՆ-ը, տրամաբանորեն պետք է ճանաչեն ավելի ինքնուրույն արտաքին քաղաքական կուրս վարելու նրանց իրավունքը, ինչպես և ամեն մի պետության գործունեության կենսականորեն կարևոր այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են նրա ազգային անվտանգության ապահովումը և դրա ամրապնդման ուղիների որոնումները։

Իշխանության գլուխ անցնելու պահից սկսած, Նիքսոնի ադմինիստրացիան, ամերիկյան արտաքին քաղաքականության ղեկավարները հանդես են եկել հավաստիացումներով, թե ԱՄՆ-ը մտադիր է հաշվի նստել աշխարհում Արևմտյան Եվրոպայի մեծացած դերի, արևմտաեվրոպական պետությունների օրինական շահերի հետ, թե այսուհետև նրանց հետ մշտական կոնսուլտացիաներ է անցկացնելու ընդհանուրի շահերը շոշափող հարցերի շուրջ։ Ձևակերպելով ԱՄՆ-ի քաղաքականությունը Արևմտյան Եվրոպայի նկատմամբ՝ Եվրոպայում լարվածության թուլացման և մայրցամաքում կոլեկտիվ անվտանգության ու համագործակցության հիմունքների ստեղծման տենդենցի լայն զարգացման պայմաններում, Գ. Քիսինջերը գրում էր. «Արևմտյան ու Արևելյան Եվրոպայի փոխհարաբերությունների բարելավման նպատակով կատարվող հիմնական նախաձեռնությունները պետք է ծնվեն բուն Եվրոպայում, իսկ Միացյալ Նահանգները պետք է մնան երկրորդ էշելոնում։ Սակայն նման մոտեցումն արդյունավետ կլինի միայն այն դեպքում, եթե նպատակների ըմբռնման ոլորտում ծագի իսկական համաձայնություն[1]։

Այնուհետև, եթե ռազմա-քաղաքական բլոկների առումով ԱՄՆ-ի դաշնակիցները պետք է հանձն առնեն ռազմա-ֆինանսական բեռի, պատասխանատվության ու պարտավորությունների նշանակալի բաժինը սեփական պաշտպանության կամ իրենց ռեգիոնների անվտանգության համար, ապա Արևմտյան Եվրոպայի նկատմամբ այս սկզբունքն իրականացնելիս թերևս այդ հանգեցներ, և հենց այդպես էլ մեկնաբանվել էր դոկտրինայի մեկնաբանների կողմից, նրանց ռազմական ստատուսի բարձրացմանը ՆԱՏՕ-ի սիստեմում՝ ինչ-որ փուլում այդ բլոկի ղեկավար օրգանների կառուցվածքի անխուսափելի վերակազմմամբ։ Դոկտրինայի մեկնաբաններն այդպես էլ լուսաբանել էին դա։ Դրա հետևանքը կարող էր լինել ամերիկյան ռազմական առկայության աստիճանական սահմանափակումը Եվրոպայում, որը հնարավորություն կտար ամերիկյան «միջուկային հովանոցը պահպանելու պայմանով կրճատել ԱՄՆ-ի սովորական զինված ուժերը ամենից առաջ Եվրոպայի կենտրոնում, այսինքն՝ ՆԱՏՕ-ի, այսպես կոչված՝ «առաջավոր բնագծերում»։

Այսպիսով, եթե «Նիքսոնի դոկտրինան» նշանավորում է ամերիկյան արտաքին քաղաքականության շեշտի որոշակի տեղափոխում գլոբալ սկզբունքից դեպի ռեգիոնալը, ապա սկզբունքորեն այն, թվում է, պետք է ուղի բաց անի Եվրոպայի անվտանգության պրոբլեմի ավելի մեծ «եվրոպականացման» համար՝ դրա հետ կապված հարցերի լուծման ոլորտում եվրոպացիներին նախապատվության իրավունք վերապահելու իմաստով, պահպանելով, անշուշտ, ԱՄՆ-ի «ազգային անվտանգության» շահերը և նրանց հիմնական դիրքերը Եվրոպայում։

Ինքնաբերաբար համանման հետևություններ են բխում նաև «Ուժերի բազմակողմանի հավասարակշռության» կոնցեպցիայի ու դրա վրա հիմնված «բազմաբևեռ դիվանագիտության» լույսի տակ տվյալ պրոբլեմի ամերիկյան մոտեցման վերլուծությունից։ Այդ կոնցեպցիայի համաձայն (դատելով նրանից, թե ինչպես է այդ շարադրվում ու պարզաբանվում պրեզիդենտ Նիքսոնի ելույթներում ու հոդվածներում) ԱՄՆ-ը պետք է այսուհետև միջազգային ասպարեզում իր շահերը պաշտպանի ու ապահովի մի քանի՝ աշխարհում արդեն գոյություն ունեցող և նոր ծագող «ուժի ու ազդեցության կենտրոնների»

[1] „Agendsa for the Nation“. Washington, 1968, p. 601.



միջև հավասարակշռության պահպանման և դիվանագիտական մանևրների միջոցով՝ անկախ վերջիններիս սոցիալ-տնտեսական ու գաղափարախոսական բնութագրերից, անկախ այդ կենտրոններից յուրաքանչյուրի հետ ԱՄՆ-ի ունեցած հարաբերությունների նախկին բնույթից։

Տվյալ կոնցեպցիայի հակառակորդները, Միացյալ Նահանգներում և նրանց սահմաններից դուրս, դրա հիման վրա պնդում են, թե իբր «բազմաբևեռ դիվանագիտությանն» անցնելը նշանավորում է հրաժարում դաշնակցային ու բլոկային հարաբերությունների նկատմամբ եղած նախկին միակողմանի կողմնորոշումից և կանխագուշակում ԱՄՆ-ի միջազգային քաղաքականության կիրառում ինչ-որ «նոր հիմքի» վրա։

Ճիշտ է, այդ կոնցեպցիան դեռևս հստակ ուրվագծված չէ և չի կարող հավակնել ավարտունության։ Այդ խոստովանում են նաև ամերիկյան մի քանի պաշտոնական անձիք։ Այսպես, պետական քարտուղարի տեղակալ Ալեքսիս Ջոնսոնը, 1972 թվականի օգոստոսի 8-ին, ելույթ ունենալով ներկայացուցիչների պալատի արտաքին գործերի հանձնաժողովի ազգային անվտանգության ու գիտական հետազոտությունների բնագավառում քաղաքականության հարցերի ենթահանձնաժողովում, հայտարարեց, որ «այն մի քանի գլխավոր նախադրյալները, որոնց վրա հիմնվում էր մեր քաղաքականությունը վերջին երկու և կես տասնամյակի ընթացքում, այլևս ուժի մեջ չեն, և որ «դեռ պարզ չէ, թե ի վերջո ինչպիսին կլինի մեր քաղաքականությունը»։ Այս անորոշությունը, նրա խոսքերով ասած, արդեն «լուրջ կասկածանքներ» է հարուցել արտասահմանում և, հատկապես ԱՄՆ-ի դաշնակիցների շրջանում՝ «ամերիկյան արտաքին քաղաքականության ապագա կուրսի նկատմամբ»։

Ինչպես 1972 թվականի մարտի 10-ին գրում էր «Վաշինգտոն պոստը», «ուժերի բազմակողմանի հավասարակշռությունը» մնում է որպես «հետաքրքրող գաղափար, բայց XX դարում իր ընդունած ձևով այն կրում է փորձնական բնույթ, բնավ համադարման կամ հուսալի ուղեցույց չէ քաղաքականություն մշակելիս»։

Ինչի՞ հիման վրա են մտադիր ԱՄՆ-ը ապագայում կառուցել իրենց եվրոպական քաղաքականությունը, իրենց քաղաքականությունը եվրոպական պետությունների տարբեր խմբերի նկատմամբ։ Այս լույսի տակ ինչպե՞ս է ուրվագծվում նրանց հնարավոր մոտեցումը Եվրոպայում անվտանգության սիստեմի ստեղծմանը՝ կոլեկտիվ հիմքի վրա և ինչպե՞ս են նրանք պատկերացնում ԱՄՆ-ի դերն այդ սիստեմում։

ԱՄՆ-ի պրակտիկ քաղաքականությունը դեռևս թույլ չի տալիս որոշակի պատասխանել այս հարցերին։ Չնայած դրան, «ուժերի բազմակողմանի հավասարակշռությունն» այժմ իսկ կարող է որոշ ցուցում լինել եվրոպական գործերում ԱՄՆ-ի հնարավոր գործելակերպում։ Պատահական չէ այն անհանգստությունը, որ ցուցաբերվում է, այսպես կոչված՝ ատլանտիզմի կողմնակիցների լագերում, մի քաղաքականության, որը ենթադրում է Արևմտյան Եվրոպայի հետ ԱՄՆ-ի հարաբերությունների բլոկային հիմքի պահպանում ու ամրապնդում։ «Ուժերի բազմակողմանի հավասարակշռության» գաղափարի քննադատությամբ հանդես են եկել, օրինակ, պետական քարտուղարի նախկին տեղակալ Ջ. Բոլը և Հարվարդի համալսարանի պրոֆեսոր Ստենլի Հոֆմանը, Ջ. Բոլը, որը գլխավորում է ամերիկյան արտաքին քաղաքական էլիտայի այն մասը, որը պայքարում է, որպեսզի Արևմտյան Եվրոպան (Ճապոնիայի հետ միասին) լինի ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության հիմնական հենարանը, գտնում է, որ Սպիտակ տան կողմից «ուժերի բազմակողմանի հավասարակշռության» հռչակումն իբրև երկարատև խաղաղության պայման, «ըստ երևույթին, նշանավորում է լիակատար խզում այն գլխավոր ստրատեգիայից, որին մենք հետևում էինք երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց հետո։ Հուսալի խաղաղություն ապահովելու մեր հույսերը մենք հիմնում էինք ամուր դաշինքների վրա, Արևմտյան Եվրոպան կամ Ճապոնիան մենք միշտ համարել ենք ոչ թե որպես ինքնուրույն գործոններ, այլ ավելի շուտ որպես դաշնակիցներ, որոնք լրացնում կամ ուժեղացնում են մեր հզո-

րությունը գլխավորապես Սովետական Միության հետ հավասարաշռություն պահպանելու ընդհանուր քաղաքականության մեջ...»[1]։

Իսկ Ս. Հոֆմանի հոդվածում, որը հրապարակվել է «Ֆորին աֆերս»-ի 1972 թվականի հուլիսյան համարում (հոդվածի հիմնական դրույթները նա կրկնեց 1972 թվականի հունիսի 28-ին՝ սենատի արտաքին գործերի հանձնաժողովում ունեցած իր ելույթում), նշվում է, որ այդ գաղափարի իրականացման դեպքում Արևմտյան Եվրոպայի հետ ԱՄՆ-ի ունեցած դաշնակցային կապերը օբյեկտիվորեն արդեն նախկին նշանակությունը չէին ունենա և թուլացած կլինեին։ Իսկ ավելի վաղ շրջանի իր ելույթներից մեկում նա նույնիսկ պնդում էր, թե իբր Ռ. Նիքսոնը չի ցանկանում Արևմտյան Եվրոպային վերապահել լիիրավ անդամություն «հինգ մեծ տերությունների ակումբում» (ԱՄՆ-ից բացի նկատի են առնվում Սովետական Միությունը, ՉԺՀ-ն, Ճապոնիան և Արևմտյան Եվրոպան), գերադասելով գործել ինչ-որ այնպիսի սիստեմի շրջանակներում, որը կազմված լինի ռուսներից ու չինացիներից»[2]։

Իր նախորդների նման, Վաշինգտոնի ներկայիս ադմինիստրացիան առիթը բաց չէր թողնում արտաքին և ռազմական քաղաքականության ղեկավարների միջոցով ընդգծելու, որ ինքը Հյուսիսատլանտյան բլոկը համարում է «կոլեկտիվ անվտանգության» գլխավոր միջոցը Եվրոպայում, խաղաղության հիմնական հենարանն ու երաշխիքը այդ մայրցամաքում։ Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ Վաշինգտոնն առաջվա նման գերադասում է ՆԱՏՕ-ի վրա դրված հույսերը համաեվրոպական, ինչպես կոլեկտիվ հիմքից։ Այսպես, պաշտպանության մինիստր Մ. Լեյրդը, 1972 թվականի հունիսի 20-ին հանդես գալով Վաշինգտոնի՝ քաղաքական հետազոտությունների ամերիկյան ինստիտուտում, արտահայտվեց այն ռազմական բլոկներն ամրապնդելու օգտին, որոնց մասնակիցն է ԱՄՆ-ը, և ընդգծեց «ամերիկյան պարտավորությունների առանձնահատուկ կարևորությունը ՆԱՏՕ-ի շրջանակներում»։ Արևմտաեվրոպական մասնակիցներին նա կրկին կոչ արեց ստանձնել «ավելի մեծ պատասխանատվություն՝ ռազմական պարտավորությունների կատարման համար»։ Այս կոչը, իբրև կանոն, բարենպաստ արձագանք է գտնում Անգլիայի և ԳՖՀ-ի ռազմական գերատեսչություններում, որոնք խթանում են ՆԱՏՕ-ի արևմտաեվրոպական մասնակիցների ռազմական ջանքերը, այսպես կոչված, «եվրոխմբի» շրջանակներում։ Նշանակալի ջանքեր են ձեռնարկվում ՆԱՏՕ-ի ռազմական մեքենան ամրապնդելու նպատակով։ Արևմտաեվրոպական դաշնակիցների վրա սիստեմատիկաբար գործադրվում է, և երբեմն հաջողությամբ, ուժեղ ճնշում, նպատակ ունենալով դրդել նրանց՝ զգալիորեն մեծացնելու իրենց ռազմական ու ֆինանսական ավանդը այդ բլոկի գործունեության ոլորտում։ Ժամանակ առ ժամանակ Վաշինգտոնը հավաստում է ամերիկյան ռազմական երաշխիքների հաստատունությունը ՆԱՏՕ-ի արևմտաեվրոպական մասնակիցներին։ Մշակվում և ընդունվում են բլոկը ռազմական տեսակետից ամրապնդելու նորանոր երկարաժամկետ ծրագրեր[3]։

Վաշինգտոնի նախաձեռնությամբ Հյուսիսատլանտյան դաշինքն ընդլայնում է նաև իր գործունեության, այսպես կոչված, ոչ ռազմական ոլորտները (օրինակ, ամրապնդվում է նրա մասնակիցների համագործակցությունը շրջապատող միջավայրի պաշտպանության բնագավառում)։ Նիքսոնից առաջ ամերիկյան ոչ մի պրեզիդենտ հրապարակավ, այդքան եռանդուն չի դիմել արևմտաեվրոպական պարտնյորներին՝ կոչ անելով անցկացնել համատեղ կոնսուլտացիաներ, ավելի սերտորեն կոորդինացնել արտաքին քաղաքական ջանքերը «ատլանտյան համերաշխության» հիման վրա և ՆԱՏՕ-ի շրջանակներում, հատկապես ընդհանուր դիրքորոշում մշակելիս սոցիալիստական երկրների հետ հարաբերությունների և Եվրոպայի անվտանգության հարցերում։

[1] „Newsweek“, April 13, 1972

[2] „The Washington Post“, March 10, 1972.

[3] ԱՄՆ-ի 1973/74 թվականի ռազմական բյուջեն չի նախատեսում ամերիկյան զորքերի թվաքանակի ոչ մի կրճատում Եվրոպայում։



Արևմուտքի համախմբվածության անհրաժեշտության վկայակոչումները՝ որ-
պես սոցիալիստական երկրների նկատմամբ ՆԱՏՕ-ի անդամների բոլոր գոր-
ծողությունների պարտադիր պայման, կազմում են պրեզիդենտ Ռ. Նիքսոնի՝
կոնգրեսին հղած արտաքին քաղաքական ուղերձների լեյտմոտիվներից մեկը։
Հիշեցնենք, որ դեռևս 1969 թվականի ապրիլին կայացած ՆԱՏՕ-ի խորհրդի նստաշրջանում ամերիկյան ներկայացուցիչներին հաջողվեց հասնել այն բանին, որ եզրափակիչ կոմյունիկեի մեջ մտցվի հետևյալ կետը. «Դաշինքի քաղաքական համերաշխությունը կարևոր տարր է այն առումով, որ գնալով մոտենում է Արևելքի ու Արևմուտքի ընդլայնվող շփումների և հնարավոր բանակցությունների ժամանակաշրջանը։ Այդ համերաշխությունը կարող է լավագույն ձևով պահպանվել, եթե խստորեն կիրառվի լրիվ կոնսուլտացիաների սկզբունքը խորհրդում՝ բոլոր բանակցություններից առաջ կամ դրանց ընթացքում, որոնք կարող էին շոշափել դաշինքի կամ նրա անդամներից որևէ մեկի շահերը»[1]։

Այսպիսով, ՆԱՏՕ-ի ամրապնդում ռազմական և քաղաքական տեսակետներից, պահպանելով ամերիկյան «միջուկային հովանոցը» և Եվրոպայում ԱՄՆ-ի ռազմական առկայության մյուս ձևերը, վերաբաշխելով ռազմական ու ֆինանսական բեռը ՆԱՏՕ-ի շրջանակներում՝ բլոկի արևմտաեվրոպական մասնակիցների ավանդը մեծացնելու միջոցով— ահա ինչն է Վաշինգտոնի ներկայիս պրակտիկ գործունեության և հեռանկարային պլանավորման հիմքը եվրոպական գործերում։ Եվ այս դեպքում հազիվ թե որևէ բան փոխվում է նրանից, որ իր արտաքին քաղաքական ուղերձներում պրեզիդենտ Նիքսոնը Արևմտյան Եվրոպայի հետ իրենց հարաբերությունների նոր սկզբունքն անվանում է «հասուն պարտնյորություն», և ոչ թե «ատլանտյան պարտնյորություն», ինչպես այդ անում էին նրա նախորդները։ Դրան կարելի էր ավելացնել, որ ԱՄՆ-ի արտաքին քաղաքական հորիզոնում դեռևս չի երևում ԱՄՆ-ի և Արևմտյան Եվրոպայի ապագա հարաբերությունների որևէ ալտերնատիվ կոնցեպցիա ատլանտիզմի նկատմամբ[2]։

Իհարկե, չի կարելի չխոստովանել, որ պաշտոնական արտաքին քաղաքական նոր կոնցեպցիայի ամեն մի առաջադրում արտացոլում է ո՛չ միայն երկրի քաղաքականությունը փոփոխված իրողություններին հարմարեցնելու ձգտումը, այլև վկայում է նախկին կուրսի անարդյունավետության ճանաչումը։ Այս իմաստով «ուժերի բազմակողմանի հավասարակշռության» գաղափարն իսկ նշանակում է անուղղակի ընդունել, որ հնացել է ամերիկա-արևմտաեվրոպական հարաբերությունների այն ստրուկտուրան, որը գոյություն ուներ «սառը պատերազմի» տարիներին, նշանակում է ձգտել այն փոխարինել ինչ-որ ավելի ճկուն ստրուկտուրաներով[3]։ Դա բլոկային քաղաքականության և դիվանագիտության ճգնաժամի արտացոլումն է, ԱՄՆ-ի և Արևմտյան Եվրոպայի պետությունների հակասությունների սրման դրսևորումը, որոնք սկսել են բորբոքվել բուն Հյուսիսատլանտյան բլոկի ներսում։

Ամերիկա-արևմտաեվրոպական հարաբերությունները գնալով ավելի բարդ ու հակասական բնույթ են ստանում։ Տնտեսական մրցակցությունը ԱՄՆ-ի և «Ընդհանուր շուկայի» միջև այնքան է սրվում, «խտրականության» և «պրոտեկցիոնիզմի» մեջ փոխադարձ մեղադրանքներն այնքան բարձրաձայն են հնչում, որ Ատլանտյան օվկիանոսի երկու կողմերի շատ քաղաքագետներ, տնտեսագետներ ու գիտնականներ պնդում են, թե 70-ական թվականներին ԱՄՆ-ի արտաքին քաղաքական ջանքերի ծանրության կենտրոնը նրանց մրցակից պարտնյորների հետ ունեցած բախումների ոլորտը կլինի։ Այս ամենը չի կա-

[1] „Nnternational Herald Tribune“, April 14, 1969.

[2] Այդպիսի կոնցեպցիա մշակված չէր նաև Ջ. Մակհովերնի նախընտրական պլատֆորմում, եթե չհաշվենք ԱՄՆ-ի զորքերը Եվրոպայում կեսից ավելին կրճատելու մասին խոստումները։

[3] Ջեյմս Ռեստոնի խոսքերով՝ «փոփոխվող աշխարհում ճկունությունը ո՛չ միայն գերադասելի է հաստատունությունից, այլ շատ կարևոր է գոյատևելու համար» („International Herald Tribune“, December 16, 1971).

րող անհետևանք մնալ եվրոպական գործերում, Եվրոպայի անվտանգության և համագործակցության հարցերում ԱՄՆ-ի ներկա և ապագա դիրքորոշման ձևավորման համար։

Արևմտյան Եվրոպայի մի շարք երկրներ կատարած ուղևորությունից վերադառնալուց հետո, 1972 թվականի հունիսի 16-ին Վաշինգտոնում կազմակերպված պրես-կոնֆերանսում միջազգային տնտեսական գործերով՝ ԱՄՆ-ի պրեզիդենտի օգնական Պ. Ֆլենիգենը, դիմելով «Ընդհանուր շուկայի» երկրներին, հարկ համարեց նախազգուշացնել, որ տրանսատլանտյան հարաբերությունները կարող են վատանալ տնտեսական ճակատի իրադարձությունների պատճառով։

Նշելով, որ «Արևմտյան Եվրոպայի հզորությունն այժմ դիտվում է նաև որպես ամերիկյան շահերի սպառնալիք», «Ֆորչուն» ժուռնալը 1972 թվականի հունիսյան համարում գրում է. «Այս բոլոր տնտեսական հարցերի հետև թաքնված են մեծագույն նշանակություն ունեցող քաղաքական հարցեր։ ՆԱՏՕ-ի միասնությունը... կդրվի լուրջ հարվածի տակ, եթե կա՛մ ԱՄՆ-ը, կա՛մ «Ընդհանուր շուկան» սկսեն ավելի բարձր պատնեշներ ստեղծել առևտրի ու կապիտալ ներդրումների հանդիման»։

Այսպիսով, ողջ Եվրոպայի և, մասնավորապես, եվրոպական անվտանգությանը վերաբերող հարցերում ԱՄՆ-ի մոտեցումն ու դիրքորոշումը բնութագրող հիմնական գործոնների վերլուծությունից հառնում են հետևյալ հիմնական գծերն ու տենդենցները.

սոցիալ-քաղաքական կարգից անկախ՝ եվրոպական բոլոր պետությունների անվտանգության շահերը նախկինից ավելի մեծ չափով հաշվի առնելու անհրաժեշտության գիտակցում, որը թելադրվում է համաշխարհային ու եվրոպական իրադրության ողջ զարգացմամբ.

ՍՍՀՄ-ի ու Եվրոպայի սոցիալիստական մյուս պետությունների դիրքերի ու շահերի, նրանց անվտանգության շահերի ավելի ռեալ հաշվառում.

սեփական անվտանգությունն ապահովելու հարցերում, արևմտաեվրոպական պետությունների հետ իրենց հարաբերությունների համար ավելի լայն հիմքի որոնումների զուգորդմամբ, Արևմտյան Եվրոպայի համար ավելի մեծ ինքնուրույնության ու դերի նույնքան հարկադրական ճանաչում, հետագայում որոշակի հնարավոր ուղղումներ մտցնելով «ատլանտիզմի» քաղաքականության մեջ.

միանալ Եվրոպայի լարվածության թուլացման պրոցեսներին, ինչպես և պատրաստ լինել ակտիվ դեր խաղալու դրանցում, որպեսզի ավելի շատ հնարավորություններ ձեռք բերվեն Եվրոպայի Արևելքի ու Արևմուտքի հարաբերությունների զարգացման վրա ազդելու համար.

պատրաստակամություն (ոչ վերջին հերթին՝ վալյուտա-ֆինանսական դժվարությունների ճնշման տակ)՝ որոշ պայմաններում ինչ-որ փուլում կրճատելու իրենց ռազմական առկայությունը Եվրոպայում, միաժամանակ խթանելով արևմտաեվրոպական ռազմական պոտենցիալի և ռազմական մեքենայի ուժեղացումը, թեև, հավանաբար, մինչև որոշ սահմաններ, իբրև Սովետական Միությանը հակազդելու գործոն.

վերջապես, Եվրոպայի անվտանգության մի շարք հարցերում դիրքորոշումների վերապահում՝ հետագայում դրանք դիվանագիտական խաղում օգտագործելու նպատակով, պահպանելու համար իրենց շահերն ու դիրքերը Եվրոպայում, ապահովելու եվրոպական ողջ քաղաքականության զարգացման վրա ներգործելու լծակները։

## ԱՄՆ–Ը ԵՎ ՀԱՄԱԵՎՐՈՊԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Եվրոպայի անվտանգության հարցերում ԱՄՆ-ի դիրքորոշումը իր խտացված արտահայտությունն է գտնում Եվրոպայի անվտանգության և համագործակցության հարցերի շուրջ խորհրդակցություն նախապատրաստելու և անցկացնելու նկատմամբ ունեցած վերաբերմունքում։ Այդ վերաբերմունքի վերջին տարիների էվոլյուցիան կարելի կլիներ բնութագրել հետևյալ կերպ. սկեպ-



տիցիզմի և զսպվածության միջոցով խորհրդակցության բուն գաղափարը չընդունելուց դեպի սկզբունքային համաձայնություն այդ գաղափարին և այդպիսի խորհրդակցության հրավիրման օգտակարության պաշտոնական ճանաչում։

Երբ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները Եվրոպայում խաղաղությունն ու անվտանգությունն ամրապնդելու մասին Բուխարեստի դեկլարացիայում (1966 թվականի հուլիս) առաջարկեցին հրավիրել համաեվրոպական խորհրդակցություն՝ Եվրոպայի անվտանգության ապահովման և համաեվրոպական համագործակցության կարգավորման հարցերի քննարկման համար, ապա ԱՄՆ-ի կառավարող շրջաններում այդ առաջարկությունն ընդհանուր առմամբ ընդունվեց շատ զուսպ։ Բանը ո՛չ միայն այն է, որ հետպատերազմյան ողջ ժամանակաշրջանում Վաշինգտոնի համար Եվրոպայի անվտանգության հոմանիշ է եղել Հյուսիսատլանտյան բլոկը։ Ուստի և այդ անվտանգության ապահովման ամեն մի այլ ուղի նրանց թվում էր «ավելորդ» և նույնիսկ «վտանգավոր»։ ԱՄՆ-ի կառավարող շրջաններում այդ առաջարկության մեջ տեսան միայն մի ձգտում— ԱՄՆ-ը «դուրս մղել» Եվրոպայից և «հեռու պահել» Եվրոպայի անվտանգության հարցերի լուծումից։

Համաեվրոպական խորհրդակցության, ինչպես և Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության սիստեմի՝ իբր ակնհայտ «հակաամերիկյան» բնույթի մասին այդ պատկերացումը մինչև օրս գոյություն ունի ԱՄՆ-ի որոշ շրջաններում։ Այն սնվում է նաև եվրոպական որոշ «սովետագետների» հերյուրանքներով։ Այսպես, 1969 թվականին Վաշինգտոնում հրապարակված հոդվածների ժողովածուում Քյոլնի համալսարանի ոչ այնքան անհայտ պրոֆեսոր Բ. Մայները Եվրոպայի անվտանգության համար ՍՍՀՄ-ի մղած պայքարը պարբերացնում է այնպես, որ ապացուցի՝ որպես թե, ի տարբերություն 1953—1959 թվականների, երբ ՍՍՀՄ-ը ձգտում էր համաեվրոպական անվտանգության պակտ կնքել Միացյալ Նահանգների մասնակցությամբ, հաջորդ տասնամյակում իբր ձգտում էր համաեվրոպական անվտանգություն ստեղծել առանց նրանց մասնակցության։

Մինչդեռ լավ հայտնի է, որ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս պետությունները պաշտոնական փաստաթղթերում բազմիցս հայտարարել են, որ ԱՄՆ-ը, որպես Յալթայի ու Պոտսդամի համաձայնագրերի մասնակից պետություններից մեկը, պատասխանատվության իր բաժինն ունի Եվրոպայում խաղաղ կարգավորման համար, հետևաբար և այդ մայրցամաքում կայուն ու երկարատև խաղաղության ապահովման համար։ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների՝ Բուդապեշտի հուշագրում (1970 թ. հունիս), որը ճշգրտեց համաեվրոպական խորհրդակցության հնարավոր մասնակիցների կազմը, պարզ ու որոշակի ասված է, որ այդ խորհրդակցությանը կարող են մասնակցել ԱՄՆ-ը և Կանադան։ Եվրոպայի անվտանգությունն ապահովելու համար գործադրվող ջանքերում ԱՄՆ-ի դերի ու պատասխանատվության ճանաչման մասին է վկայում նաև նրա մասնակցությունը Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագրին, որը Եվրոպայի իրադրության կայունացման և առողջացման կարևոր տարր է։ Վերջապես, ի՞նչ խոսք կարող է լինել ԱՄՆ-ին «հեռու պահելու» մասին, երբ Եվրոպայի անվտանգությունն ապահովելու և համաեվրոպական խորհրդակցություն անցկացնելու հետ կապված հիմնական հարցերը քննարկվել և դիրքորոշումների համաձայնեցման առարկա էին դարձել սովետա-ամերիկյան մոսկովյան բանակցություններում։ Համատեղ կոմյունիկեում նույնպես խոսվում է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի մտադրության մասին, «նկատի ունենալով այն պատասխանատվությունն ու պարտավորությունները, որ մյուս տերությունների հետ մեկտեղ բաժանում են իրենք համապատասխան համաձայնագրերով», գործադրել «նոր ջանքեր՝ նպատակ ունենալով Եվրոպայի խաղաղ, լարվածությունից, ճգնաժամերից ու կոնֆլիկտներից ազատ ապագան»։

ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի, ԼԺՀ-ի և ԳՖՀ-ի միջև պայմանագրերի կնքումից, ապա նաև վավերացումից հետո, ԳԴՀ-ի և ԳՖՀ-ի միջև հարաբերությունները նորմալացնելու մասին բանակցությունների առաջընթացից, Արևմտյան Բեռլինի վե-

րաբերյալ քառակողմ համաձայնագիրն ստորագրվելուց և ուժի մեջ դրվելուց հետո, վերջապես՝ Եվրոպայի կենտրոնում զինված ուժերի փոխադարձ կրճատման մասին եվրոպական սոցիալիստական երկրների առաջարկությունից հետո համաեվրոպական խորհրդակցության հրավիրման համար «նախնական պայմանների» քաղաքականությունն (այն ձևով, ինչպես այն ձևակերպում էր Վաշինգտոնը վերջին տարիներին) ըստ էության սպառել է իրեն: Ինչպես հետևում էր արտաքին քաղաքական հարցերի վերաբերյալ պրեզիդենտի՝ 1972 թվականի փետրվարի 15-ին կոնգրեսին հղած զեկուցումից, ԱՄՆ-ի կառավարությունն սկզբունքորեն համաձայնել է խորհրդակցության հրավիրմանը, թեև իր համաձայնությունը պայմանավորել է նրանով, որ այն «հանգամանորեն պատրաստվի», որ այնտեղ քննարկվեն «էական հարցեր» և նախապես համաձայնեցված լինեն ՆԱՏՕ-ի դաշնակիցների դիրքորոշումները:

Միաժամանակ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի գծով նրանց դաշնակիցների մոտեցման մեջ պահպանվել են այնպիսի մոմենտներ, որոնք կարող են դժվարություններ ու խոչընդոտներ հարուցել համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման ու անցկացման գործում: Այդ մասին են վկայում, մասնավորապես, ՆԱՏՕ-ի խորհրդի մայիսյան նստաշրջանի կոմյունիկեի մի քանի դրույթները, որոնց տակ դրված է նաև ԱՄՆ-ի ներկայացուցչի ստորագրությունը: Կոմյունիկեում, օրինակ, առաջ է քաշվում «զուգահեռաբար» խորհրդակցությունը նախապատրաստելու և Եվրոպայում զինված ուժերի փոխադարձ կրճատման մասին բանակցություններ վարելու պահանջ. ընդ որում, այդ «զուգահեռականությունն» ամերիկյան որոշ գործիչներ մեկնաբանում են այսպես. խորհրդակցությունը հարկավոր է նախապատրաստել «մեծ զգուշությամբ», մինչ զինված ուժերի կրճատումը հարկավոր է «առաջ մղել»: Սակայն սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեում այդ հարցերից յուրաքանչյուրին նվիրված բանակցությունների նախապատրաստումն ու անցկացումը դիտվում են իբրև ինքնուրույն և իրարից անկախ պրոբլեմներ:

1972 թվականի հոկտեմբերի 24-ին, հանդես գալով իտալական կառավարության ղեկավարի պատվին կազմակերպված ընդունելությունում, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը հայտարարեց. «Մենք, առաջվա նման, լուրջ նշանակություն ենք տալիս զինված ուժերի և սպառազինությունների կրճատմանը առաջին հերթին Կենտրոնական Եվրոպայում: Դա մեծ, ինքնուրույն հարց է, որն արժանի է հատուկ քննարկման՝ համաեվրոպական խորհրդակցությունից անջատ ու դրանից անկախ»:

Միաժամանակ փորձեր էին արվում խորհրդակցության նախապատրաստումը կապելու ԳԴՀ-ի և ԳՖՀ-ի հարաբերությունների նորմալացման պրոցեսի այնպիսի զարգացման հետ, որն այդ պրոցեսը կմղեր այսպես կոչված ներգերմանական հարաբերությունների հունը, որի հետևանքը կարող էր լինել ԳԴՀ-ի սուվերենության սահմանափակումը: ԳԴՀ-ի միջազգային ստատուսը նսեմացնելու, միջազգային հաղորդակցմանը, ինչպես և համաեվրոպական խորհրդակցությանը նրա իրավահավասար մասնակցությանը խանգարելու նպատակին էր ծառայում նաև մեծ տերությունների «քառակողմ պատասխանատվության» մասին թեզիսի չարաշահումը՝ գերմանական հարցի լուծման համար:

Վերջին ժամանակներս ամերիկյան որոշ քաղաքական գործիչների և միջազգայնագետ գիտնականների ելույթներում գնալով ավելի հաճախ է արտահայտվում այն միտքը, թե հարկավոր է «հետաձգել» համաեվրոպական խորհրդակցության հրավիրումը, կամ խուսափել նման խորհրդակցությունում որևէ լուրջ որոշում ընդունելուց, սպասելով՝ մինչև «էական առաջընթաց նկատվի արևմտաեվրոպական պետությունների ռազմա-քաղաքական ինտեգրացման մարզում:

Չի կարելի, իհարկե, ժխտել Եվրոպայի ճակատագրի վրա այս կամ այն ուղղու ազդեցությունը, որով կարող է ընթանալ արևմտաեվրոպական ինտեգրացման զարգացումը՝ առանձնապես ռազմա-քաղաքական բնագավառում: Գլխավորը, սակայն, այն է, որ խոսքը միանգամայն տարբեր երևույթների մասին է, որոնք թե՛ իրենց բնույթով և թե Եվրոպայի խաղաղության ճակատա-



գրում ունեցած իրենց նշանակությամբ միանգամայն տարբեր են: Ուստի, երկու հարցերն արհեստականորեն իրար կապելու փորձերը և, առավել ևս, համաեվրոպական խորհրդակցության հրավիրումը (որտեղ պետք է քննարկվեն ու լուծվեն եվրոպական բոլոր ժողովուրդներին ու պետություններին վերաբերող արմատական և անհետաձգելի խնդիրները) պետությունների որևէ նեղփակ խմբավորման զարգացման ներքին դինամիկայից կախման մեջ դնելու փորձերը ներկա պայմաններում չեն կարող ընկալվել այլ կերպ, քան խորհրդակցության հրավիրման ճանապարհին նոր արգելք հարուցելու ձգտում:

Որոշ շրջաններ ԱՄՆ-ում կցանկանային համաեվրոպական խորհրդակցության հրավիրման ժամկետները կախման մեջ դնել այդ հարցի շուրջ ՆԱՏՕ-ի երկրների դիրքորոշումների համաձայնեցման աստիճանից: Դրանում երևան է գալիս ո՛չ միայն բլոկային մոտեցումը խորհրդակցությանը: Ըստ երևույթին, ձգտում կա այդ հարցի շուրջ ՆԱՏՕ-ի այս կամ այն երկրի դիրքորոշման մեջ եղած տարբերություններն օգտագործել՝ արգելակելու խորհրդակցության նախապատրաստման ընթացքը, եթե դա անհրաժեշտ համարվի: Այդպիսի շրջաններում, հավանաբար, հույս ունեն, թե, օրինակ, հենվելով խորհրդակցության նկատմամբ որոշ կառավարությունների կամ ՆԱՏՕ-ի ռեակցիոն ուժերի խիստ զուսպ վերաբերմունքի վրա, հնարավոր կլինի «արդարացնել» դրա հրավիրման ամեն մի նոր ձգձգում, խուսափել այդ հարցի վերաբերյալ իրենց ստանձնած պարտավորություններից: Պարզ է, որ այդպիսի մոտեցումը կարող է միայն քաջալերել համաեվրոպական խորհրդակցության հակառակորդներին, խրախուսել նրանց քայքայիչ ջանքերը: Այս առնչությամբ հիշեցնենք, որ Մոսկվայի սովետա-ամերիկյան բանակցություններում երկու կողմերը համաձայնեցին, որ համաեվրոպական խորհրդակցությունը պետք է հրավիրվի «առանց անհիմն ձգձգման»:

Համաեվրոպական խորհրդակցության հրավիրմանը ԱՄՆ-ի սկզբունքային համաձայնության, դրա օգտակարության ընդունման և դրան մասնակցելու պատրաստակամության լույսի տակ անհրաժեշտ է գնահատել նաև խորհրդակցության օրակարգի հարցերի նկատմամբ ԱՄՆ-ի մոտեցման մեջ վերջին ժամանակներս նշմարվող որոշակի տեղաշարժերը: Եվրոպական սոցիալիստական պետությունների առաջարկած օրակարգի զուտ բացասական քննադատությունը ավելի ու ավելի է իր տեղը զիջում սեփական առաջարկությունների կոնկրետ մշակմանը:

Եվրոպայի խաղաղության հետագա նորմալացման ու բարելավման գործում համաեվրոպական խորհրդակցության «կարևոր դերի» մասին ասաց ԱՄՆ-ի պետական քարտուղարը 1972 թվականի սեպտեմբերի 26-ին, ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVII նստաշրջանում ունեցած իր ելույթում: Նրա խոսքերով, «խորհրդակցությունը, որը կնպաստեր Եվրոպայի բոլոր պետությունների ու ժողովուրդների միջև ավելի նորմալ հարաբերությունների հաստատմանը, նոր զարկ կտար այլ մակարդակների հարաբերությունների բարելավման տենդենցին»:

Համաեվրոպական խորհրդակցության օրակարգի մասին ԱՄՆ-ում առաջ քաշվող նկատառումներում մեծ ուշադրություն է նվիրվում այն հարցերին, որոնք վերաբերում են սոցիալիստական երկրների հետ այնպիսի կապերի ու շփումների զարգացմանը, որոնց մեջ առանձնապես կշեշտվեր «մարդկանց և ինֆորմացիայի փոխանակումը»: Սոցիալիստական երկրները դեմ չեն այդպիսի փոխանակումներին, եթե դրանք ծառայում են ժողովուրդների ու պետությունների փոխըմբռնմանն ու փոխշահավետ համագործակցությանը: Հենց դրա հիման վրա էլ իրականացվում է նրանց համագործակցությունը արևմտաեվրոպական պետությունների մեծ մասի հետ: Այլ բան է, երբ այդպիսի «փոխանակումների» քողի տակ քայքայիչ գործունեություն է իրականացվում սոցիալիստական պետությունների դեմ, «հոգեբանական պատերազմ» է մղվում նրանց դեմ, քարոզվում է «խաղաղ գոյակցություն գաղափարախոսության բնագավառում»: Այդ կարգի «փոխանակումները»— և դրանում չեն կա-





րող լինել ո՛չ կասկածանքներ, ո՛չ պատրանքներ— բացարձակապես անընդունելի են սոցիալիստական պետությունների համար։

Խորհրդակցության օրակարգի հարցերի նկատմամբ ԱՄՆ-ի դիրքորոշման մեջ մի շարք նոր տարրեր մտցրին եվրոպական պրոբլեմների քննարկման արդյունքները սովետա-ամերիկյան մոսկովյան հանդիպման ընթացքում, որոնց մասին խոսվեց հոդվածի սկզբում։ Այժմ ԱՄՆ-ը չի առարկում այն բանին, որ խորհրդակցությունում մշակվեն այնպիսի սկզբունքներ, որոնք եվրոպական պետությունների հարաբերությունները կարգավորեն խաղաղ գոյակցության, ուժ չգործադրելու, սահմանների անխախտության, տերիտորիալ ամբողջականության ճանաչման հիման վրա։ ԱՄՆ-ը համաձայն է նաև քննարկելու առևտրա-տնտեսական կապերի ու գիտատեխնիկական համագործակցության զարգացման հարցը։ Այլևս չի պահանջվում խորհրդակցության օրակարգում մտցնել զինված ուժերի փոխադարձ կրճատման հարցը։ ԱՄՆ-ի կառավարության վերջին պաշտոնական հայտարարություններում ևս սկզբունքային առարկություններ չեք գտնի խորհրդակցության մասնակից բոլոր շահագրգռված պետությունների մշտական օրգան ստեղծելու դեմ։

Եվրոպայի պետությունների սահմանազատումն ըստ սոցիալ-տնտեսական սկզբունքի, այսինքն՝ նրա բաժանումը հակադիր հասարակական սիստեմների պատկանող պետությունների, սոցիալական առաջադիմության ուղիով եվրոպական ժողովուրդների զարգացման օրինաչափ արդյունքն է։ Եվ Եվրոպայի անվտանգության ամեն մի սիստեմ չի կարող վերացնել այդ բաժանումը, և առհասարակ չի էլ կարող նման խնդիր դնել իր առջև։ Այլ բան է Եվրոպայի՝ ռազմա-քաղաքական խմբավորումների պառակտումը հաղթահարելու պրոբլեմը։ Եվրոպական մի շարք պետություններ մյուսներին հակադրելու քաղաքականության փոխարեն սոցիալիստական երկրները ձգտում են, ինչպես ընդգծվում է 1972 թվականի հունվարին նրանց ընդունած Պրագայի դեկլարացիայում, «եվրոպական պետությունների հարաբերությունների այնպիսի վերակառուցման, որը թույլ կտա հաղթահարելու մայրցամաքի բաժանումը ռազմա-քաղաքական խմբավորումների»։

Չնայած այն նշանակալի հաջողություններին, որ խաղաղասիրական ուժերը ձեռք են բերել Եվրոպայի անվտանգության ապահովման համար մղած պայքարում, չնայած այդ պայքարի ճակատի անշեղ ընդլայնմանն ու եվրոպական մայրցամաքում զարգացող դրական պրոցեսների խորացմանը, եվրոպական քաղաքականության օրակարգում, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի Գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, մնում են «դեռ ոչ քիչ սուր ու բարդ պրոբլեմներ»։ Հարկ կլինի դեռ շատ բան անել, որպեսզի Եվրոպան ռազմական կոնֆլիկտների ավանդական օջախից վերածվի կայուն խաղաղության գոտու, որն ապահովված լինի անվտանգության արդյունավետ սիստեմով։ Համաեվրոպական խորհրդակցության մյուս մասնակիցների հետ միասին ԱՄՆ-ը, անկասկած, կարող է իր կոնստրուկտիվ ավանդը ներդնել այդ ջանքերում։

Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական համագործակցության հետևողական, ակտիվ ու ճկուն արտաքին քաղաքականության շնորհիվ զգալիորեն բարելավվել է միջազգային կլիման Եվրոպայում։ Խաղաղ գոյակցության լենինյան գաղափարը մարմնավորվում է սոցիալական տարբեր սիստեմների պատկանող պետությունների ռեալ պայմանագրային-իրավական հարաբերություններում։

---

[1] „U. s. Troops in Europe". Ed. by J. Newhouse. Washington, 1971 p. 21.

США Экономика, политика, идеология № 12, 1972